# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**12**

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ԴԵԿՏԵՄԲԵՐ 1977

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1977 թվականի դեկտեմբերի 13-ին տեղի ունեցավ **ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը լսեց **ՍՍՀՄ** Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, **ՍՍՀՄ** պետպլանի նախագահ ընկ. Ն. Կ. Բայբակովի զեկուցումը «**ՍՍՀՄ** տնտեսական ու սոցիալական զարգացման 1978 թվականի պետական պլանի մասին» և **ՍՍՀՄ** ֆինանսների մինիստր ընկ. Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումը «**ՍՍՀՄ** 1978 թվականի պետական բյուջեի մասին և **ՍՍՀՄ** 1976 թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Այդ զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ հանդես եկան Ուկրաինական **ՍՍՀ** Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ա. Պ. Լյաշկոն, **ՍՄԿԿ** Վլադիմիրի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Ա. Պոնոմարյովը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. Ալիևը, **ՍՄԿԿ** Դաղստանի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ.-Ս. Ի. Ումախանովը, **ՍՍՀՄ** ածխարդյունաբերության մինիստր ընկ. Բ. Ֆ. Բրատչենկոն, **ՍՄԿԿ** Սվերդլովսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Բ. Ն. Ելցինը, **ՍՄԿԿ** Բելգորոդի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Պ. Տրունովը, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Գ. Կեբինը:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևը:

**ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում:

Դրանով **ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ընդունված 1977 թվականի դեկտեմբերի 13-ին

## ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1978 թվականի պետական պլանի և ՍՍՀՄ 1978 թվականի պետական բյուջեի նախագծերի մասին

Հիմնականում հավանություն տալ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1978 թվականի պետական պլանի և պետական բյուջեի նախագծերին և դրանք դնել ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի քննարկմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ընդգծում է, որ բոլոր կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների հիմնական խնդիրն է ապահովել 1978 թվականի համար սահմանված առաջադրանքների ոչ միայն կատարումը, այլև գերակատարումը յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, շրջանի, քաղաքի, մարզի, երկրամասի և հանրապետության կողմից, որը նոր, խոշոր ավանդ կլինի էկոնոմիկայի զարգացման գործում, կարևոր նշանակություն կունենա ամբողջությամբ վերցված տասներորդ հնգամյակի պլանի կատարման համար:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմները, մարզկոմները, օկրուգկոմները, քաղկոմները և շրջկոմները, կուսակցական կազմակերպությունները, մինիստրություններն ու գերատեսչությունները, ղեկավարվելով պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Բրեժնևի ելույթում շարադրված դրույթներով և հետևություններով, պետք է ուշադրությունը կենտրոնացնեն արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, ստեղծված տնտեսական պոտենցիալը ռացիոնալ օգտագործելու, կապիտալ ներդրումները գործարկվելիք կարևորագույն օբյեկտներում համակենտրոնացնելու և հիմնական ֆոնդերը ժամանակին գործարկելու, գիտատեխնիկական առաջընթացը բոլոր ամենայնի արագացնելու և արտադրությունը ինտենսիվացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, խնայողության ռեժիմն ուժեղացնելու խնդիրների գործնական լուծման վրա՝ ի շահ սովետական ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի:

Այդ նպատակով անհրաժեշտ է է՛լ ավելի լայնորեն ծավալել արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և մյուս ճյուղերի աշխատավորների սոցիալիստական մրցությունը, առանձնահատուկ ուշադրություն դարձնել ներտնտեսական ռեզերվների առավելագույն օգտագործմանը, նվազագույն ծախսերով առավելագույն արդյունքների ձեռքբերմանը, առաջավոր փորձի արմատավորմանը, արտադրության նորարարների նախաձեռնության տարածմանը, մշտական հոգատարություն ցուցաբերել որակական ցուցանիշների բարելավման նկատմամբ, հասնել ավելի բարձր սոցիալիստական պարտավորությունների իրականացմանը:

ՍՄԿԿ Կենտկոմը ուշադրություն է հրավիրում այն բանի վրա, որ արդի պայմաններում մեծ նշանակություն ունի կուսակցական, պետական ու տնտեսական ղեկավարման բոլոր օղակներում կազմակերպվածության և պատասխանատվության բարձրացումը, պլանային առաջադրանքների կատարման վերահսկողության ուժեղացումը, արտադրական և աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ բանվորները, կոլտնտեսականները, մասնագետները, մեր հայրենիքի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողները 1978 թվականը կդարձնեն հարվածային աշխատանքի տարի և նոր հաջողությունների կհասնեն ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած պատմական խնդիրների իրականացման ասպարեզում:

# ԴԵՊԻ ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐ

*ՄԵԾ ՎԱՐՏՎԵՅԻՆ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյա տարելիցին նվիրված համաժողովրդական բերկրալի հանդեսներն ու տոնակատարությունները: Աշխարհը հեղափոխականորեն նորացնող այդ մեծագույն իրադարձության փառապանծ տոնը վայելուչ շուքով ու ջերմագին խանդաղատանքով նշեցին ո՛չ միայն սովետական ժողովուրդն ու աշխարհի բոլոր երկրների կոմունիստները, այլև երկրագնդի ողջ պրոգրեսիվ մարդկությունը:*

*Աշխատանքի մարդկանց այդ պանծալի տոնահանդեսներն իրականում սովետական մեր հայրենիքի վիթխարի հասումների, մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հասարակարգի վսեմ գաղափարների կենսահաստատության ու անսպառ կորովի աքանչելի ցուցադրումը հանդիսացան: Սովետական սոցիալիստական հասարակարգի գոյության ու հաղթանակի անցած ստեղծարար բուռն տարիների վաթսունամյա պատմությունն անհերքելի ու ակնբախ ապացույցն է մեր դարաշրջանի խոշորագույն հանճարի՝ Վ. Ի. Լենինի ուսմունքի ամենազորության ու ճշմարտացիության. այն ուսմունքի կերտողի հուժկու խորաթափանցության, որը տակավին մեծ Հոկտեմբերի հաղթության առաջին տարիներին գրել է. «Կոմունիզմն «աճում» է հասարակական կյանքի վճռապես բոլոր կողմերից, դրա ծիլերը գերազանցապես կան ամենուր... Կյանքը կհաղթանակի... կոմունիստները թող իմանան, որ ապագան համենայն դեպս իրենց է պատկանում...»:*

*Այս հոյակապ կանխատեսության վկաներն են զարգացած սոցիալիզմի օրրանի՝ Սովետական Միության հաղթական ուղեմարտի վաթսուն տարիները: Հոկտեմբերյան մեծ հեղափոխության տոնական հանդեսի օրը, մեր հայրենիքի քաղաքամայր Մոսկվայում կայացած ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի և ՌՍՖՍՀ Գերագույն սովետի միացյալ հանդիսավոր նիստում «Մեծ Հոկտեմբերը և մարդկության պրոգրեսը» զեկուցմամբ հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը: Այդ զեկուցումը ստեղծարար մարքսիզմ-լենինիզմի նշանակալի փաստաթուղթ է, գիտական կոմունիզմի թեորիայում ու պրակտիկայում ներդրված մեծ ավանդ: Մի ավանդ, որում արտասովոր խորությամբ ու բազմակողմանիությամբ, ծանրակշիռ եզրահանգումներով վեր են հանված սոցիալիզմի կառուցման բոլոր մարզերում սովետական ստեղծագործ ժողովրդի ձեռք բերած մեծագույն հասումները, նշված են ապագա խնդիրներն ու խոստումնալի ռեալ հեռանկարները, գիտականորեն վերլուծված է արդի միջազգային իրադրությունը:*

*Հանդիսավոր նիստը դիմումներ հղեց սովետական ժողովրդին և աշխարհի բոլոր երկրների ժողովուրդներին, պառլամենտներին ու կառավարություններին: Ամբողջ աշխարհը մի անգամ ևս տեսավ, որ սեփական ջանքերով բարգավաճ ու հզոր հայրենիքը կերտող սովետական ժողովուրդն իր ամենանվիրական տոնը նշեց օրինական հպարտության խորագույն զգացումով: Իրոք, մենք իրավունք ունենք հպարտանալու սոցիալական այն աննախադեպ թռիչքով, որը մեկ հասցրեց զարգացած սոցիալիզմի պատմական փուլին: Մի թռիչք, որի ղեկը միշտ անսասան վարել է ժողովրդի շահերին ու լուսավոր իդեալներին հավատարիմ ՍՄԿԿ-ն: Դեռևս 1920 թվականին Լենինը գրել է, որ Ռու-*

սաստանին է վիճակվել սոցիալիստական հասարակության ու համաշխարհային սովետական հանրապետության հիմնարկման մեծագույն պատիվն ու երջանկությունը։ Երբեմնի համեմատաբար հետամնաց Ռուսաստանում, արարչագործ զանգվածների վիթխարի և անգնահատելի աշխատանքով կառուցվեց կոմունիզմի անպարտելի ամրոցը։ ՍՍՀՄ ժողովուրդների հերոսագործությունները պատմական կարճ ժամանակահատվածում մեզ հասցրին կոմունիզմի շեմին. կոմունիզմ, որն ըստ Մարքսի, այն հասարակությունն է, որտեղ «հանրային աշխատանքի արտադրաուժերի մեծագույն ծաղկմամբ նաև մարդու առավել լիակատար զարգացումն է ապահովվում»։

Հիրավի, ընդամենը վեց տասնյակ տարում, ընթանալով մարդկության առաջընթացի ավանգարդում, ՍՍՀՄ-ում սոցիալիզմ կառուցող աշխատավորները սովետական մեր հայրենիքը դարձրին համաշխարհային խաղաղության անբասիր դրոշակակիրը։ Դասակարգային թշնամու և կապիտալիստական ինտերվենտների դեմ մղվող ծանր մարտերում ծնվեց և առնականացավ մեր օրերի ամենավճռական ուժը դարձած սովետական բոլոր ժողովուրդների ու ազգերի ինտերնացիոնալիստական, լենինյան սրբազան եղբայրությունը։ Մարդկությունը մի անգամ ևս տեսավ, որ, ինչպես Մարքսն էր գրում, «Հին աշխարհի հասարակությունը, դրա տնտեսական թշվառության ու քաղաքական խելահեղության հակառակ, երկնում է նոր հասարակություն, որի միջազգային սկզբունքն է լինելու՝ խաղաղություն, որովհետև յուրաքանչյուր ժողովրդի տիրակալը միևնույն աշխատանքն է»։

Ոչ ոք չի կարող հերքել, որ աշխատանքի տիրակալության պայմաններում ծաղկած մեր երկիրը ՍՄԿԿ-ի և նրա լենինյան Կենտկոմի ղեկավարությամբ այսօր ևս յոթմղոնանոց քայլերով ընթանում է դեպի կոմունիզմի լուսաշող կատարները։ Միայն քաղաքականապես կույրերը և կոմունիզմի մոլեռանդ թշնամիները կարող են «անտեսել», որ միլիոնավոր բանողների ազատագրված աշխատանքով մեր երկիրը վաղուց ի վեր դարձել է հզորագույն տերություն՝ զարգացած ինդուստրիալ բազայով և կոլեկտիվ գյուղատնտեսությամբ։ Մարդկային վաղեմի պատմությունն ամեն օր հարստանում է մեր ժողովրդի հոգևոր սխրանքներով կերտված մեծագույն արժույթներով։ Արվեստն ու գրականությունը, գիտությունն ու տեխնիկան սոցիալիստական մեր հայրենիքում լիովին ծառայում են սովետական մարդկանց հոգևոր ճախրանքին և նրանց ինտելեկտի բյուրեղացմանը։ «Այն հանդիպումը, որի վերաբերյալ երազել են մարդկության լավագույն մտքերը, աշխատանքի ու կուլտուրայի պատմական հանդիպումը կատարվեց,— նշեց Լ. Ի. Բրեժնևը հանդիսավոր նիստում։— Մեր երկրի պատմության մեջ, համաշխարհային ողջ կուլտուրայի պատմության մեջ, դա մեծագույն նշանակություն ունեցող շրջադարձ էր»։

Զարգացած սոցիալիզմի մեր հայրենիքում միկընդմիշտ և անդառնալիորեն լուծված է պատմության ամենադրամատիկական հարցերից մեկը՝ ազգային հարցը։ Դրա հետ միասին գոյավորվել է նոր՝ սովետական ժողովուրդ հանրությունը՝ բազում ազգերի իրական հավասարությամբ, եղբայրությամբ ու անսասան միասնությամբ։

Սովետական նոր Սահմանադրության մեջ ամրակայվեցին սոցիալիզմի քաղաքական, տնտեսական, սոցիալական ու կուլտուրական այն վիթխարի հաջողությունները, որոնք կոչված են ամբողջովին ծառայելու սովետական մարդկանց բարօրության առավել ծաղկմանն ու երջանկությանը։ Մեր Հիմնական օրենքը, որը կյանքի կոչվեց հանուր ժողովրդի ստեղծարար ջանքերի զանգվածային կիրառմամբ, մի անգամ ևս ապացուցեց, որ ազատության, մարդու իրավունքի, դեմոկրատիայի ու հասարակական փաստական արդարության հասկացությունները ռեալ բովանդակությամբ են մարմնավորվում միայն սոցիալիզմի պայմաններում։ Այդ ամենը խորապես հիմնավորված է ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ, Հիմնական օրենքի ու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության վաթսունամյակի վերաբերյալ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումներում, ինչպես նաև «Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին» հոդվածում։

«Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին» խորիմաստ տեսական



հոդվածում ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտում է, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարին առանձնահատուկ տեղ կգրավի Սովետական Միության պատմության մեջ։ Այդ առանձնահատկությունը պայմանավորված է նրանով, որ դա ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման տարին է։ Մեր երկրի այդ Հիմնական օրենքում ո՛չ միայն լիովին արտացոլված են անցած վաթսուն տարիներին կուսակցության ու ժողովրդի հեղափոխական վերակերտիչ, բովանդակությամբ այնքան հարուստ գործունեության վիթխարի արդյունքները, այլև ամրակայված են կոմունիզմի կառուցման հստակ հեռանկարները։

«Այն գլխավորը,— գրել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ինչ մեր ժողովրդին տվել է սովետական նախկին սահմանադրության ուժի մեջ մտնելուց հետո անցած ավելի քան քառասուն տարիների կյանքը, զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումն է, աշխարհում առաջին համաժողովրդական պետության ստեղծումը»։

Այստեղ ընկեր Լ. Ի. Բրեժնևն անում է մի շարք կարևորագույն հետևություններ։ Մեր ապրած հասուն սոցիալիստական հասարակարգն այժմ խարսխված է բարձր զարգացած արտադրաուժերի, հզոր, առաջավոր ինդուստրիայի, կոլեկտիվիստական սկզբունքների վրա, բարձր մեքենայացված խոշոր գյուղատնտեսության վրա։ Ակներև է, որ փոփոխվել, անհամեմատ ավելի բարձրացել է սովետական մարդկանց կյանքի նյութական ու հոգևոր մակարդակը։ Նրանց ռեալ եկամուտները, 1936 թվականի համեմատությամբ, ավելացել են ավելի քան 5 անգամ։ Մեր երկրում միաժամանակ բարձրանում է էկոնոմիկայի հանրայնացման մակարդակը, տեղի է ունենում սոցիալիստական սեփականության՝ համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերի անշեղ մերձեցում։ Խոշոր տեղաշարժեր են կատարվել նաև սոցիալիստական հասարակարգի հասարակական կառուցվածքում։ Բնակչության բոլոր դասակարգերի ու խավերի սոցիալ-արտադրական հարաբերությունների աճող միատարրության, նրանց իդեալների, նպատակների ու հոգեբանության աննախադեպ մերձեցման պայմաններում էական փոփոխություններ են կատարվել նաև հասարակության քաղաքական սիստեմում։ Դրանց էությունը պրոլետարական դիկտատուրայի վերաճումն է համաժողովրդական սոցիալիստական պետության։

Մեր երկիրն այժմ գտնվում է նոր հասարակարգի հասունության այնպիսի աստիճանում, երբ ավարտվում է բոլոր հասարակական հարաբերությունների վերակառուցումը՝ սոցիալիզմին ներհատուկ կոլեկտիվիստական հիմունքներով։ Սոցիալիստական հասարակարգին բնորոշ են սոցիալիզմի օրենքների գործադրման, դրա առավելությունների բացահայտման լիակատար ազատությունը, սոցիալական սիստեմի օրգանական ամբողջականությունն ու դինամիզմը, քաղաքական կայունությունը, ներքին անսասան միասնությունը։ Նոր կարգի զարգացման այս փուլում ևս կպահպանվի ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը։ Անտարակույս, ինչպիսին էլ լինեն սոցիալիզմ կառուցող երկրների յուրահատուկ պայմանները, սեփական հիմքի վրա դրա կատարելագործման փուլը, հասուն սոցիալիզմի փուլը՝ սոցիալական վերափոխումների անհրաժեշտ օղակը, զարգացման համեմատաբար տևական մի շրջան է կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ճանապարհին։ Հասկանալի է, որ այդ օրինաչափությունը յուրովի կիրագործվի տարբեր սոցիալիստական երկրների պայմաններում։

Հանգամանորեն արծարծելով սոցիալիստական դեմոկրատիայի լենինյան չափանիշների հարցը, ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշում է, որ դրանք, ըստ էության, պայմանավորված են այն իրական միջավայրով, ուր աշխատավոր մասսաները ո՛չ միայն ինքնուրույն կերպով մասնակցում են քվերակություններին ու ընտրություններին, այլև երկրի ամենօրյա կառավարմանը։ Իրավամբ, զարգացած սոցիալիզմի մեր հասարակարգը դարձել է նաև զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի հասարակարգ։

Բարձր գնահատելով սոցիալիստական դեմոկրատիայի խորացման ու կատարելագործման սոցիալական պրակտիկայի նոր դրսևորումներն իրենց բոլոր

մարդը՝ հայրենասերը և ինտերնացիոնալիստը, որը գաղափարական համոզվածության և կյանքի վիթխարի եռանդի մարմնավորումն է, ամբողջապես համակված կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության զգացումով, մշտապես ձգտում է իմացության և կուլտուրայի բարձունքներին։ Ահա նրա ձեռքերով, նրա հերոսական աշխատանքով է կառուցվել զարգացած սոցիալիստական հասարակությունը։

ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը մեզ կոչ արեց՝ մեր անելիքներին մոտենալ «պատմական առավել լայն չափանիշով», հատկապես շեշտելով, որ Հոկտեմբերի հաղթության վաթսուն տարիներում ՍՍՀՄ-ը «անցել է մի ուղի, որը հարյուրամյակների է հավասար»։ Պատմական մասշտաբի առումով այդ կարճատև ժամանակահատվածի կարևորագույն արգասիքը, մատնանշեց նա, սովետական մարդն է։

Աշխարհի բոլոր երկրներում սոցիալական պրոգրեսի համար մաքառող մարտիկները և առաջադեմ մարդկությունը պարզորեն տեսնում են լենինյան մեր կուսակցության ու սովետական կառավարության խաղաղասիրական բաղում իրական ձգտումները և գործնական նախաձեռնությունները։ Նրանք համոզված են, որ սովետական պետության արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը մեծապես նպաստել է պատերազմի վտանգի թուլացմանը, ժողովուրդների միջև փոխըմբռնման հաստատմանը։

Անցած 57 տարիների ընթացքում ՍՍՀՄ իրավահավասար անդամ Սովետական Հայաստանը, ընթանալով կոմունիստական կուսակցության ուղիով, դարձավ սոցիալիստական առաջավոր ինդուստրիայի ու գյուղատնտեսության, զարգացող գիտության ու ծաղկող կուլտուրայի բարգավաճ երկիր։

Սովետական Հայաստանի աշխատավորությունը մեծ Հոկտեմբերի վաթսունամյա հոբելյանը դիմավորեց քաղաքական և աշխատանքային այն բուռն ոգևորությամբ, որը դրսևորվեց ՍՍՀՄ Սահմանադրության նախագծի ստեղծաբար քննարկման ընթացքում։ Հանրապետության կուսակցական և սովետական կազմակերպությունները, տնտեսական մարմինները պարտավոր են այնպես վարել գործերը, որպեսզի ամենուր անշեղ իրագործվեն Սահմանադրության բոլոր հոդվածները և ճշտորեն իրականանա Լ. Ի. Բրեժնևի այն ցուցումը, թե հարկավոր է աշխատավորների շրջանում չթուլացնել Սահմանադրության նախագծի քննարկմամբ հարուցված ակտիվությունը, այլ առավել զարգացնել և այն օժտել պետության համաժողովրդական գործերին քաղաքացիների առավել հոծ մասնակցության կոնկրետ ձևերով։

Հայաստանի արդյունաբերության աշխատողները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը ի պատիվ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի, ընթացիկ տարվա տասնմեկ ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարեցին 102,6, իսկ իրացման պլանը՝ 102,2 տոկոսով։ Մինչև տարվա վերջը պլանից ավելի կարտադրվեն ու կիրացվեն տասնյակ միլիոնավոր ռուբլիների արտադրատեսակներ։

Ուրախալի է, որ Հայկական ՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմի միավորումների ու ձեռնարկությունների կոլեկտիվները ժամկետից տասն օր առաջ կատարեցին հոբելյանական տարվա տասն ամսվա առաջադրանքը ու մինչև հոկտեմբերի վերջը 26 միլիոն ռուբլու արտադրանք թողարկեցին։

Հոբելյանական այս տարում հանրապետության աշխատավորությունը բուռն խանդավառությամբ նշեց գյուղատնտեսության աշխատավորների փայլուն հաղթանակը։ Լայնորեն ծավալելով մեծ Հոկտեմբերի վաթսունամյա հոբելյանի առթիվ նախաձեռնած սոցիալիստական մրցությունը, մեր դաշտերի ու ֆերմաների բազմահազար աշխատողներ պատվով կատարեցին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, ժամկետից շուտ պետությանը վաճառելով հացահատիկ՝ 74 հազար տոննա, պտուղներ՝ 113 հազար տոննա, խաղող՝ 217 հազար տոննա, կարտոֆիլ՝ 76 հազար տոննա, բանջարեղեն՝ 283 հազար տոննա, շաքարի ճակնդեղ՝ 131 հազար տոննա։



Հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում կատարված այս բերկրալի իրադարձության առթիվ գյուղատնտեսության աշխատողներին սրտագին ու ջերմորեն շնորհավորեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը։ Բարձր գնահատելով գյուղի աշխատավորության ստեղծագործական այդ սխրանքը, Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, որ այդ մեծ հասույթները կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանքի արդյունք են։ Նա միաժամանակ վստահություն հայտնեց, «որ հանրապետության գյուղատնտեսության աշխատավորներն այսուհետ ևս կբարձրացնեն դաշտերի ու ֆերմաների արդյունավետությունը, կընդլայնեն հողագործական ու անասնաբուծական մթերքների արտադրության և մթերումների ծավալները, կպայքարեն գյուղատնտեսական ամբողջ արտադրանքի բարձրորակության համար»։

Լ. Ի. Բրեժնևի պարտավորեցնող ու մոբիլիզացնող շնորհավորագիրը, ինչպես նշվեց այդ առթիվ կայացած հանրապետության գյուղի աշխատավորների մարդաշատ միտինգում, նոր լիցք ու ստեղծագործական աշխատանքի եռանդ հաղորդեց երկրագործության ու անասնապահության բնագավառի բոլոր աշխատողներին։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևին միտինգի մասնակիցների հղած նամակում ասված է. «Մենք քաջ գիտակցում ենք, թե մեզ վրա ինչպիսի բարձր պատասխանատվություն են դնում Ձեր ողջույնը և այն բարեմաղթությունը, որ Հայաստանի աշխատավորները պատվով կատարեն հոբելյանական տարվա և ամբողջ տասներորդ հնգամյակի ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Մենք հնարավոր ամեն ինչ կանենք կուսակցության մեծ վստահությունն արդարացնելու համար, առավել ամուր հաստատակամությամբ սոցիալիստական մրցություն կծավալենք երկրագործության և անասնաբուծության հետագա վերելքի, աշնան դաշտային աշխատանքների ողջ կոմպլեքսի հաջող ավարտման համար, գալիք տարվա բարձր բերքի ամուր հիմքը կդրկանենք, անասունների ձմեռումը կանցկացնենք առավել կազմակերպված, կավելացնենք երկրագործական ու անասնապահական մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը»։

Ինչպես ցույց տվեց վերջին երկու տարիների պրակտիկան, Հայաստանի գյուղատնտեսության ժրաջան ու հայրենասեր աշխատողները չեն դրժում իրենց խոսքը։ Այս եզրակացության ճշմարտացիության ապացույց են ո՛չ միայն ընթացիկ տարվա նրանց աշխատանքային սխրանքների փայլուն արդյունքները, այլև անցյալ տարում ժողովրդական տնտեսության հաջող զարգացման գործում նրանց մուծած խոշոր ավանդը։ Հայտնի է, որ անցյալ տարի մեր հանրապետությունն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին՝ ժողովրդական տնտեսության զարգացման գործում ձեռք բերած հաջողությունների համար։

Սակայն մեր ակնբախ հասույթները ոչ մի պահ մեզ չպետք է ինքնագոհության մատնեն։ ՍՄԿԿ XXV համագումարի պատմական կանխագծումների իրականացման առումով մեր անելիքները շատ-շատ են ու բավականին բարդ։ «Մենք,— ասել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— ձգտում ենք հասնել պարենային պրոբլեմի արմատական լուծման, երկրի հարաճուն պահանջմունքների բավարարման և այդ անում ենք այն պայմաններում, երբ բնակչությունը և նրա պահանջմունքները մեծանում են, իսկ հողատարածությունները մնում են նույնը։ Ահա թե ինչու ապագայի համար ևս մենք պլանավորում ենք գյուղատնտեսության բոլոր ճյուղերի առավել արագ, ինտենսիվ զարգացում։ Ահա թե ինչու մենք գյուղատնտեսությանը հատկացնում ենք և կհատկացնենք մեծ կապիտալ ներդրումներ, կմեծացնենք գյուղը սպասարկող արդյունաբերության ճյուղերի կարողությունները»։

Անտարակույս է, որ կուսակցական կազմակերպությունները, ինչպես և մինիստրություններն ու պետական հաստատությունները կանեն առավելագույնը, որպեսզի անշեղորեն և ժամանակին կենսագործվեն կուսակցության մշակած ագրարային քաղաքականության վիթխարի պրոբլեմները։

Մենք պարտավոր ենք հանրապետության սոցիալ-տնտեսական, կուլտուրական վերելքի կոնկրետ իրավիճակը գնահատել ինքնաքննադատաբար։ Թե՛ արդյունաբերության, թե՛ շինարարության, ինչպես և գյուղատնտեսության ու կուլտուրայի բնագավառներում տակավին շատ են մեր առջև ծառացած չլուծված խնդիրները։ Ունենք թերություններ ու բացեր։ Շատ են գյուղատնտեսության մեր ռեզերվները, որոնց արդյունավետ օգտագործումը պահանջում է խորիմացություն և աշխատանքային պրոցեսների իրոք կոմպլեքսային և գիտական կազմակերպում։

Ցավալի է, երբ մեր ընդհանուր հաջողությունների ետևում շարունակում են թաքնված մնալ առանձին շրջաններ ու ձեռնարկություններ, որոնք նույնիսկ չեն կատարում պետական պլանները, էլ չենք խոսում ստանձնած սոցիալիստական պարտավորությունների մասին։ Պետք է հուսալ, որ ետ մնացող կազմակերպությունների ու ձեռնարկությունների ղեկավարները այս օրերին արմատական միջոցների կիրառմամբ կհասնեն հանրապետության առաջավորներին։

Հանրապետության աշխատավորներն էական հաջողություններ ունեն մեծածավալ շինարարության, կուլտուրայի, լուսավորության հաստատությունների ու բնակելի շենքերի կառուցման մարզերում։ Մանրածախ ապրանքաշրջանառության ծավալի ընդլայնումը, կենսամթերքների ու կյանքի այլ պարագաների գնումների աճը վկայում են, որ բնակչության կենսամակարդակի բարձրացումն ակներև է։

Ակնբախ են և հանրապետության գիտնականների, կուլտուրայի, գրականության, արվեստի աշխատողների ստեղծագործական ջանքերի արդյունքները։

Հասուն սոցիալիզմի ներկա փուլում հատկապես մեծանում է սոցիալիստական կուլտուրայի ու արվեստի դերը սովետական մարդկանց գաղափարաքաղաքական, բարոյական ու գեղագիտական դաստիարակության բնագավառում, որը ՍՄԿԿ XXV համագումարում առաջադրված կարևորագույն խնդիրներից մեկն է։ Այդ խնդրի գործնական լուծումը սերտորեն պայմանավորված է քաղաքի ու գյուղի բնակչության կենսամակարդակների մերձեցման նպատակով կուսակցության վարած քաղաքական կուրսի անշեղ իրականացմամբ։

Վերջերս հրապարակված ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը՝ «Գյուղական բնակչության կուլտուրական սպասարկման միջոցառումների հետագա բարելավման մասին», կխթանի գյուղի աշխատավորի հոգևոր վերելքը։ Տարեցտարի կատարելագործվում է գյուղի աշխատավորության կուլտուրական սպասարկումը, ընդլայնվում կուլտուր-լուսավորական հաստատությունների ցանցը և ամրապնդվում դրանց նյութական բազան։ Բավական է ասել, որ մեր հանրապետությունում այժմ գործում են 960 գյուղական և 36 շրջանային գրադարաններ, 918 գյուղական ակումբներ, 21 ավտոակումբ, 37 շրջանային կուլտուրայի տուն։ Կուլտուր-լուսավորական հաստատությունները գյուղի աշխատավորական զանգվածների քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակությամբ օգնում են կուսակցական կազմակերպություններին, տեղական սովետներին ու աշխատանքային բոլոր կոլեկտիվներին՝ առավել հաջողությամբ լուծելու երկրի տնտեսական ու հասարակական զարգացման կարևորագույն խնդիրները։

Անցած վաթսուն տարիների ընթացքում արմատապես ու խոշոր մասշտաբներով զարգացել է գյուղի կուլտուրական կյանքը։ Կուլտուր-կենցաղային մակարդակով արդի սովետական գյուղն ընդհուպ մերձենում է քաղաքին։ Սակայն այդ որոշման մեջ շեշտված է, որ այդ առումով դեռևս որոշ վայրերում կան ակներև թերություններ ու պակասություններ ինչպես նյութական բազայի, նույնպես և կուլտուր-կենցաղային սպասարկման ասպարեզում։

Բացահայտելով մեր գործունեության այդ բնագավառի առկա թերությունները՝ այդ որոշումը պարտավորեցնում է կուսակցական ու պետական համապատասխան կազմակերպություններին ու հիմնարկություններին՝ հիմնավորապես ու սիստեմատիկաբար զբաղվել գյուղական բնակչության օրավուր աճող հոգևոր պահանջմունքների առավել բավարարմամբ, գյուղական կուլտուր-լուսավորական ցանցի աշխատողների պատրաստմամբ ու վերապատրաստմամբ։



Կուլտուր-լուսավորական աշխատավորը մեր օրերի գյուղում նույնպիսի առաջնակարգ գործիչ է, ինչպես գյուղական բժիշկը, գյուղատնտեսը, ուսուցիչը, ինժեները, զոոտեխնիկը։ Կատարելապես տիրապետելով իրենց պրոֆեսիային, նրանք դառնում են կուսակցական կազմակերպության ու սովետների հուսալի օգնականները։

Այս կարևորագույն որոշման հաջող կենսագործումը կնպաստի գյուղական կյանքի բարելավմանը, հողի աշխատավորի հոգևոր հարստացմանը։

Ահա կուսակցական կազմակերպությունների ու մարմինների, պետական հաստատությունների ու հիմնարկությունների առջև ծառացած կարևորագույն մի խնդիր, որի լուծման համար կան անհրաժեշտ բոլոր նախապայմանները։

Հոկտեմբերյան հեղափոխության վաթսունամյակի հոբելյանը մեզ պարտավորեցնում է անշեղորեն կիրառել կուսակցական աշխատանքի լենինյան ոճը։ Այն ոճը, որը պահանջում է երբեք չհանգստանալ արդեն ձեռք բերած հաջողություններով, այլ շարունակել եռապատիկ ճիգերով հաղթահարել կոմունիզմի շինարարության այս կամ այն բնագավառում առկա սխալներն ու թերացումները, ձգտել հասնել երկրի առաջավորների մակարդակին։

Ընթացիկ տարվա արդյունաբերական արտադրանքի իրացման պլանը (դեկտեմբերի 1-ի տվյալներով) հանրապետության 528 ձեռնարկություններից 66-ը չեն կատարել և երկրին չեն տվել 20.761.000 ռուբլու արտադրանք։ Իսկ հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններից 59-ը, չկատարելով համախառն արտադրանքի պլանը, երկրին պարտք են մնացել 18.675.000 ռուբլի։

Քանի որ ընթացիկ տարվա պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումով է հաստատուն հիմք ստեղծվում հնգամյակի գալիք տարվա հաջողությունների համար, ապա կուսակցական կազմակերպությունների, քաղկոմների ու շրջկոմների անմիջական պարտքն է՝ հանուն մեր վերընթացի արագացման, առավել բանիմացորեն գլխավորել աշխատավորների ստեղծարար նախաձեռնությունն ու խանդավառությունը ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների և ՍՍՀՄ Սահմանադրության կենսագործման համար։

Հայաստանի աշխատավորությունը, ջերմագին ոգևորությամբ նշելով մեծ Հոկտեմբերի պատմական վաթսունամյակը, միաժամանակ աննախընթաց խանդավառությամբ ընկալեց ՍՄԿԿ Կենտկոմի, սովետական կառավարության և հատկապես Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ ընդունված երեք որոշումները, որոնք հույժ էական և բացառիկ կարևոր նշանակություն ունեն մեր ընդհանուր վերընթացի գործում։ Մենք ի նկատի ունենք նախ՝ «Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը դադարեցնելու» և ցայսօր կառուցված այդ կոմբինատի օբյեկտները բարձր արտադրակուլտուրայով ու տեխնոլոգիական նորագույն սարքավորումներով հագեցված մեքենաշինական ձեռնարկությունների փոխարկելու որոշումը։ Երկրորդ՝ «Հայկական ՍՍՀ ոռոգելի երկրագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների» վերաբերյալ որոշումը։ Եվ երրորդ՝ «Երևան քաղաքում մետրոպոլիտեն կառուցելու» մասին որոշումը։

Ինչ խոսք, որ հանրապետության երախտագետ աշխատավորությունը խորապես գիտակցում է վերոհիշյալ որոշումների խոշորագույն նշանակությունը՝ Հայաստանի տնտեսական պոտենցիալի առավել բարձրացման, ժողովրդի առողջական վիճակի ակներև բարելավման համար։

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը Հայաստանում սովետական իշխանության հաստատման հիսունամյակի առթիվ արտասանած ճառում, անդրադառնալով հայ ժողովրդի նկարագրին, ասաց. իրենց հանրապետության նկատմամբ հայերի, նմանապես և սովետական բոլոր ժողովուրդների արտահայտած հայրենասիրական բարձր ոգին զուգորդվում է, առավել լայն առումով, հայրենասիրական ոգու հետ՝ նվիրվածությամբ ու սիրով մեր ընդհանուր սոցիալիստական մեծ հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հանդեպ։

Սովետական Հայաստանի ժողովուրդը,— շեշտեց նա,— կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորությունը, գյուղացիությունն ու ինտելիգենցիան հայրենասիրական ոգին սքանչելիորեն զուգորդում են սովետական մարդու մեկ ուրիշ, ոչ նվազ արժեքավոր հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ։

Իսկ լինել հայրենասեր ու միաժամանակ կայուն, համոզված ինտերնացիոնալիստ՝ նշանակում է խորապես օժտված լինել սոցիալիստական աշխարհայացքով, սոցիալիստական կուլտուրայով, նշանակում է հավատարիմ լինել լենինյան մեծ ուսմունքին (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, Լենինյան կուրսով, հ. 3, էջ 251)։

Ինքնին հասկանալի է, որ մեր ժողովրդի հոգևոր կորովի այս բարձր գնահատականը, որքան ոգևորող, նույնքան և պարտավորեցնող է։ Այն պարտավորեցնում է մեզ հետևողականորեն իրագործել աշխատավորության կոմունիստական դաստիարակության վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի, ինչպես և ՀԿԿ XXVI համագումարի ու ՀԿԿ Կենտկոմի նախորդ տարվա հոկտեմբերյան պլենումի ընդունած որոշումները։

Քաղաքական բարձր մակարդակով և անհրաժեշտ արդյունավետությամբ, գործնականորեն նշելով սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի վաթսուն տարին, մեր աշխատավորությունը լարված եռանդով կշարունակի իր ստեղծագործական պայքարը հանուն ՍՄԿԿ XXV համագումարի ծրագրային որոշումների կենսագործման։

Ավարտին է մոտենում հոբելյանական տարին։ Ինչպես Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդները, նույնպես և Հայաստանի աշխատավորները ոչ մի ջանք չեն խնայի պետական պլանների, սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարման համար։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԱՆՀԱՏԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԳԻՏԱԿԱՆ ՀԻՄՔԸ

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ

### 1.

ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՈՒՄ վաթսուն տարիների ընթացքում ձևավորված նոր մարդը մարմնավորում է հասարակական արմատական վերափոխումներն արտացոլող հայացքներ ու արժույթներ, որոնք վավերացվել են ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ։

Սոցիալիստական հասարակարգում աշխատավորական զանգվածները դարձել են կոմունիստական աշխարհայացքի, բանվոր դասակարգի գաղափարախոսության ու բարոյականության գիտակից և համոզված կրողներ, կոլեկտիվիստներ և ինտերնացիոնալիստներ, հայրենասերներ ու հումանիստներ, խաղաղության և ժողովուրդների բարեկամության ակտիվ ջատագովներ։ Նրանց բնորոշ են կոլեկտիվի, հասարակության հանդեպ պարտքի ու պատասխանատվության բարձր զգացումը, քաղաքական լայն մտահորիզոնը, ձգտումը դեպի գիտությունը, կուլտուրան, խոր նվիրվածությունը սոցիալիզմի հանդեպ։ Եվ այս ամենը դրսևորվում է նրանց աշխատանքում, ստեղծագործական արարումներում, հասարակական ու պետական գործերին ակտիվ մասնակցության մեջ։

Արտադրության միջոցների հանրային սեփականությունը հիմք հանդիսացավ բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի արմատական շահերի ու բանվոր դասակարգի շահերի միացման համար։ Սոցիալիզմը ամուր թելերով կապեց միլիոնավոր մարդկանց, հասարակական և անհատների միջև եղած հարաբերություններից դուրս մղեց տնտեսական և սոցիալական կախման ամեն տեսակի ձևերը, հաստատեց իսկական ընկերականության վրա հիմնված նոր հասարակություն։

Շահագործումից ազատագրված աշխատանքը իր անմիջական հասարակական բնույթով նպաստեց մարդու ստեղծագործական էության բացահայտմանը, դարձավ նրա արժանիքների հասարակական գնահատման գլխավոր չափանիշ։ Աշխատավորին վերադարձվեց կապիտալի մենաշնորհը դարձած արտադրության հոգևոր կարողությունները, կուլտուրայի և քաղաքակրթության նվաճումները։ Այս է ռեալ հումանիզմը, որ հաստատում են մարքսիզմ-լենինիզմը, սոցիալիզմի ողջ պրակտիկան, մարդու, նրա աշխատանքի, նրա գործունեության նյութական և հոգևոր հասույթների օտարման իրական հաղթահարումը։

Սոցիալիստական աշխարհում մարդը վերարտադրում և հաստատում է իր ուժն ու հզորությունը, գործունակությունը, որը կապիտալիզմի օրոք խլված է նրանից, հակադրված նրա կենսապրոցեսին, գոյությանը։ Այդ էական ուժերն այստեղ դրսևորվում են ոչ թե նրա համար խորթ ու անհասկանալի, ապրանքաշուկայական հարաբերություններով քողարկված իշխող իրային ուժերի ձևով, այլ որպես նրա ճակատագրի, նրա իսկական ազատության, պահանջ-

վորություններ: Բայց այդ հնարավորությունները հասարակության անդամներին տրված են ոչ թե իբրև մի անփոփոխ ու անսպառ «պարգև»: Այդ բարիքների լրիվ «տրամադրումը» մարդուն ենթադրում է դրանց համալրում, նրա ավելի գիտակցական, պատասխանատու վերաբերմունքը հասարակության, իր արտադրական, քաղաքացիական և այլ պարտականությունների, իր գիտելիքների կատարելագործման, ընդհանուր կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ: Իսկ անհատի կենսական կողմնորոշումը, քաղաքացիական դիրքորոշումը հնարավոր են այն դեպքում, եթե գիտական աշխարհայացքը և կոմունիստական բարոյականությունն առավելապես են որոշում նրա գիտակցության, նրա արժույթների ողջ սիստեմի զարգացման բովանդակությունն ու միտումը:

Հասուն սոցիալիզմի փուլում հասարակական առաջընթացի դիալեկտիկայի մեջ այդ նորն այն է, որ կոմունիզմին անցնելու նյութական և սոցիալական նախադրյալների հասունացման տեմպերն աստիճանաբար ավելի մեծ չափով պայմանավորվում են մասսայական և անհատական գործունեությամբ, կառավարչական հմտությունների աճով, բարձր պրոֆեսիոնալիզմով, մարդկանց կուլտուրայի և գիտելիքների շարունակ աճող մակարդակով, արարքների ու գործողությունների հիմնավորման խորությամբ, ճեռնողական կոլեկտիվիստական հարաբերություններով: Իսկ այդ ամենը համակողմանիորեն զարգացած, ներդաշնակ անհատի ձևավորման էական տարրերն են: Միաժամանակ, այդ կապն արտացոլվում է նյութական և հոգևոր արտադրության ոլորտի այս կամ այն տեղաշարժի պրոգրեսիվության գնահատման չափանիշների որոշ փոփոխությունների, այդ գնահատականներում որակական ցուցանիշների տեսակարար կշռի բարձրացման մեջ: Տնտեսավարման ինտենսիվ մեթոդների կիրառումը ենթադրում է աշխատողների կառավարչական հմտությունների, կազմակերպվածության, որակավորման, կուլտուրայի աճ, նրանց հասուն, քաղաքական մոտեցումը գործին: Այստեղ անհրաժեշտ է հաշվի առնել նաև հասարակական և անձնական պահանջմունքների բավարարման, սոցիալական և բարոյական հարաբերությունների կատարելագործման վրա հանրային արտադրության աճի ազդեցության անմիջականության աստիճանը: Հետևվաբար, հասուն սոցիալիզմը դիալեկտիկորեն զարգացող ամբողջական օրգանիզմ է, որի վերընթաց շարժումն առավելապես հանդես է գալիս նաև որպես համակողմանիորեն զարգացած ներդաշնակ անհատի ձևավորման պրոցես: Այդ հնարավոր է նաև շնորհիվ այն բանի, որ հասարակական զարգացման տվյալ աստիճանը հարաճուն չափով ենթադրում է մարդկային գործունեության այնպիսի գործառնությունների ինտեգրացում, ինչպիսիք են՝ ճանաչողական, պրակտիկ-վերափոխիչ, արժութային-կարգավորիչ, գեղագիտական և այլն: Այդ պրոցեսում աստիճանաբար վերանում է աշխատանքի բաժանման հին ձևերի ազդեցության որոշ միակողմանիությունը, որոնք սահմանափակում են յուրաքանչյուր առանձին վերցրած անհատի համակողմանի զարգացման, նրա լրիվ ինքնահաստատման հնարավորությունները:

Այս տեսական դրույթներն ու գործնական խնդիրներն արտացոլվում են հասարակական գիտությունների, կուլտուրայի զարգացման պրոբլեմատիկայում և տենդենցներում, պետական, այդ թվում և պլանավորող մարմինների, աշխատավորական կոլեկտիվների գործունեության, մասսաների շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի բովանդակության մեջ: Հասարակական գիտությունների բնագավառում նկատվում է իրենց առարկայի և դրա ինքնավարության աստիճանի «սահմանների» վերաբերյալ ավանդական պատկերացումների որոշ վերաիմաստավորում, ավելի ակտիվ որոնումներ են կատարվում այլ գիտությունների, այդ թվում և բնական գիտությունների հարակից բնագավառներում: Այժմ, օրինակ, քաղաքատնտեսությունն ավելի համարձակ է ներխուժում սոցիալական և գաղափարական հարաբերությունների, արժութային կողմնորոշումների պրոբլեմատիկայի մեջ, առավել չափով հաշվի առնելով վերջիններիս կողմից արտադրաուժերի համահարաբերակցությունը և ամբողջ նյութական արտադրության աճը: Կամ, ասենք, կոմունիստական բարոյականության բնագավառի հետազոտություններում կիրառվում են անտե-



սական և սոցիալական գործոնները, օրինակ, աշխատանքի կազմակերպումը, հաշվառումը և վարձատրությունը, դրա նյութական խթանները, արտադրական կոլեկտիվի կյանքում դեմոկրատական նորմերի պահպանման աստիճանը և այլն:

Հասուն սոցիալիստական հասարակարգի հրամայական պահանջն է՝ ավելի խոր և կոնկրետ տիրապետել հասարակական օրինաչափությունների գործողության «մեխանիզմ»-ին: Դա իր հերթին թելադրում է մեզ առավել բանիմացությամբ կողմնորոշվել գործունեության օպտիմալ մոդելներն ընտրելիս: Այդ առումով անհրաժեշտ է սոցիոլոգիական հետազոտությունների օգնությամբ կատարելագործել մարդկանց աշխատանքային, կենցաղային բոլոր պրոցեսները, որոնք կոչված են բարձրացնելու մարդկանց հոգևոր կորովը և կատարելագործելու սովետական ապրելակերպը: Գիտական մտքի զարգացման այդ տենդենցներն արտացոլում են այն հասարակական պահանջմունքները, որոնց բավարարումը ենթադրում է տնտեսական, սոցիալական և հոգևոր պրոցեսների ավելի սերտ կոորդինացում, որը կոչված է ուժեղացնելու մարդու կենսագործունեության զանազան ոլորտների ու ձևերի ինտեգրացումն ու ներդաշնակումը: Ահա ինչու այժմ ժողովրդատնտեսական պլանները, ըստ էության, բովանդակում են հասարակության ու նրա անդամների, ինչպես և արտադրական կոլեկտիվների մշակած սոցիալական ու կուլտուրական զարգացման պլանները:

Դժվար է գտնել սոցիալական մի այլ երևույթ, որտեղ համակողմանիորեն արտացոլվեին մարդկանց շահերն ու պահանջմունքները և դրանց բավարարման եղանակները, արժույթներն ու իդեալները, ինչպիսին սովետական ապրելակերպն է: Այստեղ կարծես ի մի են բերվել արդեն նվաճվածը, ձեռքբերվածը, դարձել առօրեական փաստ: Ահա ինչու սովետական ապրելակերպի պրոբլեմների հետազոտումը հնարավորություն է ընձեռում պարզել պետության, հասարակական կազմակերպությունների տնտեսական, սոցիալական, գաղափարական ջանքերի «արդյունավետության» չափը և այդ գործունեության մեխանիզմների կատարելագործման ուղիները:

Մեր ապրելակերպի համապարփակությունն ու համակողմանիությունը պայմանավորված են ո՛չ միայն նրանով, որ իր գլխավոր գծերով այն տիպական է բոլոր դասակարգերի, ազգերի ու ազգությունների, բոլոր սոցիալական խմբերի ու խավերի կենսագործունեության համար, այլև նրանով, որ դրանցից յուրաքանչյուրը, հանդես գալով որպես այդ ընդհանուր, գլխավոր գծերի կրող, միաժամանակ որոշ յուրահատկություն է հաղորդում այդ ընդհանուրին:

Սովետական ապրելակերպի արժույթները նոր սերունդները ժառանգում են սոցիալիստական հասարակական հարաբերությունների, միջավայրի, դաստիարակության, կրթության, կուլտուրայի միջոցների, ուսումնական և աշխատանքային կոլեկտիվի ներգործությամբ: Դա բարդ պրոցես է, որը չի կարելի հանգեցնել հասարակական կյանքի և վարքագծի հանրաճանաչ նորմերի հասարակ սերտման, իսկ առավել ևս ուրիշների փորձի մակերեսային ընդօրինակման: Ապրելակերպի ձևավորումը երիտասարդ տարիներին՝ սոցիալականորեն տրված «պարամետրերի» և արտաքին ներգործությունների (ուսուցում, օրինակ, ընդօրինակում, խրախուսում, պատիժ և այլն) ամբողջ նշանակությամբ հանդերձ ենթադրում է շրջապատող իրականության նկատմամբ յուրաքանչյուրի ակտիվ, ստեղծագործական վերաբերմունքի զարգացում, կյանքի ուղու գիտակցական ընտրություն, նպատակամետ ջանքեր, արժութային կողմնորոշումների սիստեմի մշակում երիտասարդ մարդու կողմից, այսինքն՝ պրոցեսների ինտենսիվ ընթացքը, որոնք խթանվում են նրա գաղափարական, բարոյական ու կամային հատկություններով, թեկուզ համեստ, բայց անձնական փորձի տվյալներով:

Ասվածն ամենևին չի նսեմացնում սոցիալականորեն նպատակամետ, կազմակերպված ջանքերի դերը երիտասարդ մարդու ապրելակերպի ձևավորման գործում: Սակայն կարևոր է շեշտել, որ այդ ջանքերն այն չափով են արդյունավետ, որ չափով երիտասարդի մեջ զարգացնում են ակտիվ, ինքնուրույն մոտեցում կենսական պրոցեսների ու երևույթների գնահատմանը, ճիշտ ընտ-





րություն կատարելու և իսկական արժույթների համար պայքարելու ունակություն։

Ապրելակերպի ձևավորման ու զարգացման պրոցեսում դիալեկտիկորեն փոխներգործում և փոխթափանցում են նյութական, սոցիալական, գաղափարական, հոգեբանական, կուլտուրական, ավանդական և այլ գործոններ։ Ընդ որում նրանց այդ միասնությունը սոցիալիզմի պայմաններում իրականանում է ոչ ինքնաբերաբար, այլ առավելապես մարդկանց գիտակցված վերաբերմունքով՝ օբյեկտիվ հնարավորությունների, հասարակական նորմերի ու իդեալների հանդեպ, որոնք յուրաքանչյուրի առջև բացում են հեռանկար՝ ազատ ընտրություն կատարելու, որոշելու կյանքի իմաստն ու նպատակը, իր տեղը համաժողովրդական պայքարում, պրակտիկ գործունեության ոլորտը, ձևերն ու եղանակները, վարքագիծը։ Երիտասարդների մեջ նման ունակության զարգացումը, սոցիալիստական նվաճումների ընձեռած հնարավորությունների օգտագործումը օրգանապես կմարմնավորվեն յուրաքանչյուր պատանու և աղջկա կենսագործունեության ձևերի, նախասիրությունների, նպատակադրությունների մեջ— սա է արդի փուլի դաստիարակչական գլխավոր խնդիրներից մեկը։

## 2.

Հեղափոխության տեսությամբ ղեկավարվելը մարքս-լենինյան կուսակցություններին հնարավորություն է ընձեռում յուրաքանչյուր տվյալ փուլում մշակելու այնպիսի քաղաքականություն, որը կոմունիստական նպատակասլացություն և ներգործություն է հաղորդում անհատի գաղափարական դաստիարակչական ներազդման միջոցներին՝ սկսած քաղաքական լուսավորության սիստեմից, կուլտուրայից, գիտությունից և ժողովրդական կրթությունից մինչև մասսայական ինֆորմացիայի միջոցները։ Դրանում է ամենից առաջ դրսևորվում մարքսիզմ-լենինիզմի քաղաքական գաղափարախոսության ուժն ու նշանակությունը։ Այդ գաղափարախոսությամբ ներծծված արժույթներն ու կողմնորոշումներն արտացոլվում են հասարակության տնտեսական բազիսում, ժողովրդական զանգվածների նյութական կյանքի պայմաններում տեղի ունեցող փոփոխություններում։ Հասարակական նոր պրոբլեմների, պահանջմունքների ու հակասությունների ակտիվ ազդեցության ներքո տեղաշարժեր են կատարվում հասարակական գիտակցության կառուցվածքային տարրերում և ձևերում։ Ահա ինչու մասսաների գաղափարաքաղաքական դաստիարակության հարցերը մշտապես կուսակցության, հասարակական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի տեսադաշտում են։ Հասարակության անդամների մեջ առաջավոր գաղափարաքաղաքական հայացքների ձևավորման խնդիրները լուծվում են ո՛չ միայն պրոպագանդայի, քաղաքական կրթության ձևերով ու մեթոդներով, այլ նաև տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում կազմակերպված աշխատանքի մեջ նրանց ակտիվ ներգրավելու միջոցով։ Դա աշխատավորներին հնարավորություն է ընձեռում ավելի խոր իմաստավորելու կուսակցության առաջադրած քաղաքական գաղափարների ու լոզունգների էությունը և համոզված պայքարելու դրանց կենսագործման համար։

Անհատի գործուն մասնակցությունը կոմունիստական իդեալների համար մղվող պայքարին ենթադրում է նրա ներքին ազատություն, համոզվածություն, գործողությունների կամավորություն, կենսական ամենաբազմապիսի հանգամանքներում ճիշտ որոշումներ ընդունելու կարողություն, այսինքն՝ հանդես գալու որպես վառ անհատականություն։ Լինել վեհ իդեալների համար մղվող պայքարի մարտիկ՝ նշանակում է ստեղծագործաբար մոտենալ այն գործին, որով զբաղվում ես, սեփական աշխատանքը, քաղաքացիական վարքագիծը չափել լավագույն ապագայի՝ կոմունիզմի համար մղվող պայքարի գործին ծառայելու հասարակական բարձր չափանիշով։

Հեղափոխական պրոլետարիատի բարոյականությունից ժառանգելով ու առավել զարգացնելով ամենայն արժեքավորը, սոցիալիստական հասարակարգի բարոյականությունը հանդես է գալիս որպես մարդկային արարքներն ու գործողությունները կարգավորող սկզբունքների ու նորմերի մի ծավալուն համակարգ։ Այդ սկզբունքների ու նորմերի ընդհանրացված արտահայտությունն



է կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, որը շարադրված է ՍՄԿԿ ծրագրում, արտացոլված ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ։ ՍՄԿԿ XXV համագումարն առանձնահատուկ շեշտեց աշխատանքի և տնտեսավարության, գիտակցական կարգապահության և անձնական պատասխանատվության, կոլեկտիվիստական, ինտերնացիոնալիստական և հայրենասիրական վարքագծի, ինչպես նաև առաջավոր ավանդույթների և հասարակական լայն կարծիքի արմատավորումը սովետական հասարակության կյանքում։ Այս հարցերը մշտապես կուսակցական մարմինների, բոլոր հասարակական կազմակերպությունների, պրոպագանդայի և մասսայական ինֆորմացիայի միջոցների տեսադաշտում են։ Կոմունիստական բարոյականության սկզբունքները հասարակական գիտակցության մեջ լայնորեն ամրակայվում են նաև շնորհիվ այն բանի, որ ներդաշնակում են սոցիալիստական իրավագիտակցության բովանդակությանը, արմատավորվում նոր Սահմանադրության դրույթներում։

Զարգացած սոցիալիստական հասարակության կյանքում, անհատի գիտակցության ու վարքագծի մեջ մեծանում է բարոյական գործոնի դերը։ Հրամայական պահանջ է՝ բարձրացնել մասսաների բարոյական գիտակցության ընդհանուր մակարդակը, վերադաստիարակել հասարակության այն անդամներին, որոնք տակավին չեն հրաժարվել վերապրուկային հայացքներից ու սովորություններից։ Հայտնի է, որ անհատի բարոյական գիտակցության և զգացումների բնագավառն օժտված է ավելի մեծ հարաբերական ինքնուրույնությամբ, իներցիայի ուժով, քան նրա քաղաքական և իրավական գիտակցության ոլորտը։ Այս հանգամանքը պայմանավորված է անհատի բարոյական պատկերացումների և զգացումների ձևավորման վրա ազդող հակասական գործոնների ու կենսական բազմազան պարագաների առկայությամբ՝ հետամնաց ընտանեկան-կենցաղային հարաբերություններ և ավանդույթներ, կրոնի, բուրժուական պրոպագանդայի ազդեցություն և այլն։ Առանձին մարդկանց գիտակցության նման երկատվածության աղբյուրը, երբ նրանց ընդհանուր առմամբ առաջավոր քաղաքական հայացքները գոյատևում են հետամնաց բարոյական պատկերացումների, զգացումների և սովորությունների հետ, կարող են լինել անձնական փորձի պակասությունը, միակողմանիությունը, աղքատիկ հոգևոր պահանջմունքները, ոչ հստակ հոգեբանական գծերն ու կամային հատկությունները, որոնք անուժ են պատնեշելու հասարակական պահանջներին հակասող ցանկությունները, նպատակադրումներն ու սովորությունները։

Հետամնաց բարքերը կարող են համակել ուրիշներին, դրսևորվել նաև որոշ աշխատանքային կոլեկտիվներում, որտեղ բացակայում է հրապարակայնությունը, առողջ ու ներգործուն հասարակական կարծիքը, խախտվում են դեմոկրատական նորմերը։ Այլ կերպ ասած, այդ վերապրուկային հայացքների ու սովորությունների գոյության պատճառները տարբեր են և առկա են անհատի արտադրական գործունեության և հասարակական վարքագծի կարգավորման ոլորտում տեղ գտած թերություններում։ Այդ երևույթներն ավելի ցայտուն երևան են գալիս ժողովրդի նյութական բարեկեցության ընդհանուր աճի ֆոնի վրա, երբ հասարակության առանձին անդամների կուլտուրայի ցածր մակարդակի, անզուսպ պահանջմունքների հետևանքով, ընդլայնված նյութական հնարավորությունները կարծես ակտիվացնում են նրանց ընչաքացությունը, դառնում հարստություն կուտակելու մոլուցք և այլն։ Անդրադառնալով մեր կյանքի այս կարևոր պրոբլեմին, Լ. Ի. Բրեժնևն ասում է. «Մենք քիչ արդյունքների չենք հասել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման գործում։ Մենք այսուհետ ևս հետևողականորեն կլուծենք այդ խնդիրը։ Սակայն անհրաժեշտ է, որ նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով։ Հակառակ դեպքում մենք կստանանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ։ Սա չի կարելի աչքաթող անել» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 116)։

Անհատի գաղափարական-բարոյական դաստիարակության և անցյալի վերապրուկների լրիվ հաղթահարման համար առաջնակարգ նշանակություն ունի սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործման, կառավարման

և վերահսկողության տարբեր ոլորտներում հասարակական հիմունքների զարգացման, արտադրական ոլորտից դուրս ևս կոլեկտիվիստական հարաբերությունների խորացման, աշխատանքի նյութական և բարոյական խթանների ավելի սերտ զուգակցման, աշխատավորների առաջավոր փորձի լայն տարածման, մասսայական նախաձեռնության և ինքնագործունեության բոլոր ձևերի զարգացման, քննադատության ներգործունության, առաջավոր հասարակական կարծիքի ազդեցության բարձրացման, կյանքի, տնտեսական և կուլտուրական շինարարության պրակտիկ խնդիրների հետ գաղափարական, դաստիարակչական աշխատանքի կապի ամրապնդման ուղղությամբ կուսակցության գիտականորեն հիմնավորված կուրսը։

«...Ժամանակակից պայմանները,— ասված է ՍՄԿԿ XXV համագումարին ներկայացված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— նոր խնդիրներ են դնում կուսակցության գաղափարական գործունեության առջև։ Կուսակցական կազմակերպությունների պրակտիկան մեզ հուշում է, թե որ ուղիով ընթանալով մենք կարող ենք հասնել այդ գործունեության արդյունավետության բարձրացմանը։ Դա կոմպլեքսային մոտեցումն է դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ, այսինքն՝ գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնություն՝ հաշվի առնելով աշխատավորության զանազան խմբերի առանձնահատկությունները» (Նույն տեղը, էջ 111)։

Կոմպլեքսային մոտեցման արմատավորումը գաղափարական աշխատանքի պրակտիկայում և անհատի մակարդակով սևեռվող, նրա հոգևոր աշխարհի, հայացքների ու արժույթների ձևավորման պրոցեսի վրա ազդող տնտեսական, սոցիալական և կուլտուրական բոլոր գործոնների ու «մեխանիզմների» ներգործունության բարձրացումը զարգացած սոցիալիզմի հասարակության նոր հնարավորությունների ռեալ արտահայտությունն են։ Այդպիսի մոտեցումն առանձնապես մեծ նշանակություն ունի երիտասարդ մարդու անձի ձևավորման համար։ Այսպես, հայտնի է, որ գիտական կոմունիզմի տեսության մեջ միշտ մեծ նշանակություն է տրվում աճող սերնդի աշխատանքային դաստիարակության հարցերին։ Գաղափարաքաղաքական, մտավոր, բարոյական, գեղագիտական և ֆիզիկական դաստիարակության հետ զուգակցված՝ աշխատանքային դաստիարակությունը մեծապես որոշում է երիտասարդ մարդու կենսական կարևորագույն սկզբունքների ու նպատակադրումների ձևավորման բնույթն ու բովանդակությունը, նպաստում նրա ունակությունների, ստեղծագործական ուժերի զարգացմանը, նրա կամային հատկությունների, բնավորության գծերի ձևավորմանը։ Աշխատանքային դաստիարակությունը հնարավորություն է ընձեռում վաղ հասակից, անձնական փորձի հիման վրա, ճաշակել ազատ աշխատանքի ուժն ու գեղեցկությունը, մարդու մեջ սաղմնավորել ու ամրապնդել ինքնավստահության, ընկերականության զգացումները, համաժողովրդական պայքարին հաղորդակից լինելու, արժանապատվության ու պատվի զգացումները։

Արդի պայմաններում երիտասարդության աշխատանքային դաստիարակության պրակտիկան պատշաճ տեսական հիմնավորում է ստանում։ Հենվելով կոնկրետ գիտական հանձնարարականների սիստեմի վրա, այն ընդգրկում է երիտասարդության ամենատարբեր տարիքային խմբերը։ Ստեղծվում են ուսումնական հաստատությունների հետ արդյունաբերական ձեռնարկությունների, գիտական հիմնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների կապի պետականորեն կազմակերպված ձևեր, լայնորեն են կիրառվում ուսանող երիտասարդության աշխատանքային դաստիարակության զանազան միջոցները և այլն։ Դպրոցի պոլիտեխնիկացման գաղափարները, որ առաջադրել են մարքսիզմի հիմնադիրները, առավել կոնկրետացվում և իրականացվում են արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում։

Այսպիսով, մենք տեսնում ենք, թե կուսակցության գաղափարական աշխատանքում որքան օրգանապես են արտացոլված նոր մարդու ձևավորման պրոբլեմները, մեր մարդասիրական իդեալները, կոմունիստական աշխարհայացքի սկզբունքները։

# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԼԻՆԵԼՈՒԹՅԱՆ ԸՆԹԱՑՔԸ

**Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**

ՀՈԿՏԵՄԲԵՐԸ՝ ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ԱՌԱՎՈՏԸ, մարդկության պատմության մեծագույն իրադարձությունն է, սոցիալական առաջընթացի փարոսը։ Հոկտեմբերից է սկզբնավորվում նոր, սոցիալիստական ապրելակերպի հաստատումը, որը մեր օրերում շղթայական ռեակցիայի նման խոր արմատներ է գցել հողագնդի մայրցամաքներում։ Ռեալ սոցիալիզմը ողջ մարդկության առջև հառնում է որպես հասարակական կյանքի կազմակերպման այնպիսի ձև, ուր ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները մարդու անարգել զարգացման ու կատարելագործման համար։ Հիրավի, Հոկտեմբերի ամենանշանակալի նվաճումը նոր մարդու ձևավորումն է։

***

Մարդու համար չկա ավելի հետաքրքրական օբյեկտ, քան ինքը՝ մարդը։ Մարդու պրոբլեմը հավերժական է, այժմեական։ Մարդը փիլիսոփայական գիտելիքի մշտական առարկան է, իմացության հիմնական առեղծվածներից մեկը։ Ճշմարիտ է այն դրույթը, թե այնքանով է փիլիսոփայական մարդու պրոբլեմը, որքանով մարդկային է փիլիսոփայությունը։ Մարդուն ուսումնասիրում են տարբեր բնագավառի բազմաթիվ գիտություններ, սակայն նրա հասարակական բարձրագույն դրսևորումը, որպես անհատ, կազմում է փիլիսոփայության հետազոտման հատուկ առարկան, որն ընդհանրացնում, ընդհանուր հայտարարի է բերում մյուս գիտությունների հասումները։

Քննելով մարդու էությունը որպես հասարակական հարաբերությունների միագումար, մարքսիզմ-լենինիզմը հնարավորություն է ընձեռում ճշմարտացի ըմբռնելու մարդու և հասարակության փոխհարաբերությունների դիալեկտիկան։ «Իմ սեփական լինելությունը,— գրել է Կ. Մարքսը,— հասարակական գործունեություն է... և ինձ գիտակցում եմ որպես հասարակական էակ» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, М., 1956, стр. 590)։

Անհատը միջավայրի, սոցիալ-պատմական հարաբերությունների արդյունք է՝ բազմապիսի ու բազմաթիվ թելերով կապված շրջապատի հետ։ Այդ կապերը պարզունակ չեն, շարժուն են, ճկուն։ Մեծ է միջավայրի ազդեցությունը մարդու ձևավորման վրա, սակայն այն բնավ նրան չի զրկում ինքնատիպությունից, հոգեբանական ուրույն դիմագծից։ Նա գիտակցաբար, կամ անգիտակցաբար է առնչվում շրջապատին, հասարակությանը, դրսևորելով աշխարհայացքային, արժութային մոտեցում։ Լենինը նկատել է, որ անձնական բացառություններ խմբային ու դասակարգային տիպերից իհարկե կան և միշտ կլինեն։ Սակայն սոցիալական տիպերը մնում են (տե՛ս В. И. Ленин, ПСС, т. 36, стр. 207)։

Մարդու անձնական հատկանիշները, անշուշտ, դրսևորվում են նրա վարքագծում, սակայն գործելակերպը մեծապես պայմանավորված է նրա դասակարգային պատկանելիությամբ, տվյալ հասարակական արտադրության, փոխանակման ու բաշխման համակարգում գրաված տեղով։ Բուրժուան,— ասել է

Կ. Մարքսը,— կարող է լինել օրինակելի ընտանիքավոր, կենդանիների պաշտպանության ընկերության անդամ, ունենալ բարի համբավ։ Սակայն, երբ գործը վերաբերում է իր շահերին, որպես բուրժուա նա բանվորների հանդեպ անսիրտ է։ Բանվորն առօրյա կյանքում շատ ավելի զգայուն է, քան բուրժուան... բանվորների հումանիզմը ավելի վառ է դրսևորվում (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 356—357)։

Մարդն ակտիվ գործող էակ է և ոչ թե պասիվ դիտորդ։ Նա ներգործում է իրեն շրջապատող իրերի վրա, տալով դրանց որոշակի ձև ու հատկություններ՝ բավարարելու պատմականորեն անհրաժեշտաբար առաջացած հասարակական ու անձնական պահանջմունքները։ Ի վերջո, աշխարհի վերափոխմամբ է պայմանավորվում մարդու լինելության իմաստը։ Բազմակողմանի, բազմաբնույթ է մարդու գործունեությունը։ Լինելով անձնավորության հասարակական կեցության հիմնական եղանակը, կյանքում ինքնահաստատվելու վճռական ձևը, այն հանդես է գալիս որպես բարդ, ամբողջական համակարգ։

Մարդուն հատուկ է անբավարարվածության զգացումը, նրան ինչ-որ բան պակաս է, մեծ է ձգտման ուժը։ Միայն նպատակային գործունեությամբ է հնարավոր բավարարել մարդկային պահանջմունքները։ Մարդու գործունեության արդյունավետությունը մեծապես պայմանավորված է նրա նպատակի ու միջոցի միջև եղած կապը ճիշտ ընտրելու ունակությամբ։ Աշխատանքի բնույթի փոփոխման համապատասխան հարստանում է մարդու գիտելիքը բնության, շրջապատի մասին. արտադրագործիքների զարգացմամբ փոխվում է ինքը՝ մարդը, հասարակության արտադրաուժերի գլխավոր և վճռական տարրը։ Տեխնիկայի նվաճումները, մարդկային աշխատանքի արգասիքը և միաժամանակ միջոցը հասարակական մարդու արտադրողական օրգաններն են։ Որքան շատ է մարդը կատարելագործում տեխնիկան, բնության առավել հզոր ուժեր է ենթարկում իրեն, այնքան ավելի աճում են նրա ունակություններն ու գիտելիքները։ Կառավարման ավտոմատ սիստեմները փոխում են մարդու և մեքենայի միջև եղած ֆունկցիաների բաժանումը։ Անցյալում աշխատանքի գործիքները, պատկերավոր ասած, մարդու ձեռքերի շարունակությունն էին, հզորացնող ուժը։ Այժմ կիբեռնետիկ սարքերը բազմապատկում են մարդկային ուղեղի աշխատանքը։ Որոշ մտավոր գործողություններ, որոնք առաջ բացառապես կատարում էր մարդը, այժմ փոխանցվել են մեքենաներին։ Գիտատեխնիկական հեղաշրջման պայմաններում մարդու աշխատանքային ֆունկցիաներն առավելապես ստանում են ստեղծագործական, կառավարման ու հսկման բնույթ։

Անհատի սոցիալական էության հարստությունն ու բարդությունը պայմանավորված են նրա հասարակական առնչություններով, գիտակցության մեջ, գործողություններում սոցիալական բազմազան արժույթներն իմաստավորելու աստիճանով։ Որոշ առումով ինքնատիպ ու անկրկնելի են մարդու ներաշխարհը, կյանքի հանդեպ ունեցած նրա ակնկալությունները։ Սխալ է այն մտայնությունը, թե մարդու ինքնությունը բացարձակապես միջավայրի արդյունք է։ Նման մեկնաբանման դեպքում անտեսվում է անհատի հարաբերական ինքնուրույնությունը, կողմնորոշվելու սեփական կարողությունը։

Անհատի և հասարակության կապը միջնորդավորված է, դրսևորվում է նախնական կոլեկտիվի միջոցով— ընտանիք, ուսումնական-աշխատանքային կոլեկտիվ։ Միայն այդ սոցիալական օղակներն են (և այլ կերպ դժվար է պատկերացնել) անհատին հաղորդակցում հասարակության հետ։

Նախնական կոլեկտիվը ամբողջական սոցիալական օրգանիզմի բջիջն է, որտեղ և առաջանում են շփման անմիջական ձևեր, կապեր։ Ամեն մի անհատ կրում է այն կոլեկտիվի կնիքը, որտեղ ինքը մեծացել է, դաստիարակվել, դրոշմ թողնելով տվյալ հանրության վրա։ Հարկ է նկատել, որ այս կամ այն ձևով անձնավորության ձևավորման վրա ներազդում են նաև ժամանակաշրջանը, ազգային ավանդույթները, դասակարգային ու անհատական միկրոպայմանները և այլն։ Աշխատանքային կոլեկտիվում իրար փոխազդող մարդիկ միավորվում են ո՛չ միայն արտադրական նպատակով, այլև փոխանակում որոշակի գաղափարներ, բարոյական, գեղագիտական, գիտական և այլ արժույթներ։ Կոլեկտիվը նպաստում է հասարակական կարծիքի ձևավորմանը, անձնական հարաբերությունների կարգավորմանը։ Չպետք է մոռանալ, որ նույն անձը միաժամանակ հանդես է գալիս տարբեր դերերում— հայր, ամուսին, բանվոր, ընկեր, ծանոթ, ընթերցող, հեռուստադիտող, ուղևոր և այլն։ Մարդկային առնչությունները բարդ են ու միջնորդավորված և երևան են գալիս զանազան կապերի ու կապակցությունների մեջ։



Հայտնի է, որ մասնավոր սեփականատիրական աշխարհում մարդիկ հակադրվում են իրար, հասարակությանը։ Սակայն այդ չի նշանակում, թե առհասարակ դասակարգային հասարակության մեջ մարդկանց միջև վերանում են սոցիալական կապերը։ Այստեղ պահպանվում են իշխելու ու ենթարկվելու հարաբերությունները։ Աշխատանքի հանրային բնույթը թվում է թե միավորում է մարդկանց. իրականում մասնավոր սեփականությունը ծնում է պայքարի ու մրցակցության ոգի, որը դրսևորվում է էգոիզմի ու ինդիվիդուալիզմի բիրտ կերպարանքով։ Բուրժուական հասարակական հարաբերությունները մարդկանց օժտում են անհատապաշտական հոգեբանությամբ։ Բուրժուական աշխարհում ամեն ոք ձգտում է իշխել ամենքի վրա, ոչնչացնել, սնանկացնել մրցակիցներին։ Ինչպես ասում էր Ա. Շոպենհաուերը, ամեն ոք իրեն համարում է աշխարհի կենտրոնը, սեփական գոյությունը և հաջողությունը նախընտրում է ուրիշինից, պատրաստ է ոչնչացնելու աշխարհը իր սեփական «ես»-ն ավելի երկար պահպանելու համար։ Ժամանակակից էկզիստենցիալիստները մարդու համար ամենակարևորը համարում են անձնական գոյության փաստը։ Սակայն մարդը հավերժական չէ։ Նա ծնվում է, ապրում ու մահանում։ Այստեղից էկզիստենցիալիստները եզրակացնում են, թե իբր մարդու ողջ կյանքն անցնում է մահվան նկատմամբ ունեցած սարսափի մեջ, թե նա միայնակ է, մարդիկ վտանգավոր, օտար էակներ են, որոնք նույն վախով են տառապում։ Էկզիստենցիալիզմի սոցիալական արմատը բուրժուական իրականությունն է, անվստահությունն ապագայի նկատմամբ։

Մայրամուտ ապրող բուրժուական հասարակությունն անկարող է ստեղծել կենսահաստատ, լավատեսական փիլիսոփայություն։ Միայնակության, «ես»-ի ինքնամփոփության մոտիվը սոցիալական խոր բախումների դրսևորում է։ Մարդու ստրկացումը տեխնիկայի կողմից, աշխատանքի հանդեպ բարոյական խթանների բացակայությունը, դեմոկրատական ազատությունների սահմանափակումը և հասարակության բյուրոկրատացումը, հոգևոր արժույթների նկատմամբ ուտիլիտարիզմն ու տեխնիցիզմը խանգարում են մարդկային անհատականության զարգացմանը։ Մարդը գիտակից արարչից վերածվում է մասնիկի, ենթարկվելով կապիտալիստական հասարակության ահավոր մեխանիզմի շարժման ռիթմին։ Կապիտալիզմի պատմությունը՝ մարդու կողմից մարդուն շահագործելու, ճնշելու և ստրկացնելու պատմություն է։

Քսաներորդ դարի պատերազմները վկայում են, որ կապիտալիզմի զարգացման իմպերիալիստական փուլում զոհվեց ու հաշմանդամ դարձավ շուրջ հարյուր միլիոն մարդ, ոչնչացվեցին դարերի ընթացքում ստեղծված նյութական ու հոգևոր բազում արժեքներ։ Կապիտալիզմի պայմաններում ամեն մի նոր գյուտ ու հայտնագործություն, հատկապես ռազմական բնագավառներում, կարող են վտանգ սպառնալ մարդկությանը։

Անհատը ազատ է այնտեղ, որտեղ նա ոչ միայն միջոց է իրականացնելու հասարակական նպատակները, այլև, առաջին հերթին՝ ինքնանպատակ է հասարակության համար։ Անհատի ազատագրման գլխավոր պայմանը հասարակության ազատագրումն է շահագործումից, ճնշումից, սովից ու աղքատությունից։

Բուրժուական հասարակարգի պաշտպաններն ստիպված են խոստովանել, որ կապիտալի աշխարհում հոգևոր արժույթներն իմաստազրկվել են։ Որդեգրելով պեսիմիստական տրամադրություններ, նրանք պրոպագանդում են այն հոռետեսական սկզբունքը, թե օրհնյալ է նա, ով ոչինչ չի ակնկալում և, հետևաբար, երբեք չի հիասթափվի։ Կորցնելով հեռանկարը, նրանք բարբաջում են կյանքի, նպատակների ունայնության, մահվան անխուսափելիության մասին։

Ի հակադրություն բուրժուական գաղափարախոսության, մարքսիզմ-լենի-

նիզմն իր բնույթով խորապես լավատեսական է: Այն մարդուն ներարկում է կենսահաստատ աշխարհայացք, գաղափարական համոզմունք, հավատ բանականության հզորության, մարդկության պայծառ ապագայի նկատմամբ: Մարքս-լենինյան գաղափարախոսությունը տոգորված է հումանիստական այն վեհ սկզբունքով, որ իսկական երջանկությունը հնարավոր է միայն այն հասարակության մեջ, որտեղ բացառվում է սեփական երջանկությունն ուրիշների ապերջանկությամբ հաստատելու հնարավորությունը, որտեղ մարդիկ ձերբազերծվել են սոցիալական անհավասարությունից:

Ժամանակի ընթացքում մարդկությունն առաջադրել է բարոյական տարբեր իդեալներ— մարդկանց շահերի ներդաշնակ միասնության, անձնականի ու հասարակականի զուգորդման, արդարության, բարու, ճշմարտության ու գեղեցկության թագավորության վերաբերյալ: Այդ իդեալները կերպարանափոխվել են կյանքի խառնարանում, հակադրվել պրակտիկ բարոյականությանը, հարստացել վերջինիս փորձով, կանխորոշել բարոյական առավել բարձր նորմերի ուրվագծեր, քան տվյալ ժամանակաշրջանում գործող մարդկային հարաբերությունները կարգավորող արժեքները: «Կյանքը դեպի կատարյալն է ընթանում,— գրել է Մ. Գորկին,— ու ղեկավարվում է նրանով, որ տակավին գոյություն չունի, սակայն ենթադրվում է, պատկերացվում է դրա իրականանալու հնարավորությունը: Իրականությունը մշտապես իդեալի մարմնացում է, և բացասելով, փոփոխելով այն... մենք երևակայությամբ ստեղծում ենք ուրիշը, լավագույնը»:

Սոցիալական օպտիմիզմի, գաղափարական համոզվածության ոգեշնչող օրինակ են Մարքսի, Էնգելսի, Լենինի կյանքն ու գործը: Մեյերին հասցեագրած նամակում Մարքսը գրել է. «...Ինչո՞ւ ես Ձեզ չէի պատասխանում: Որովհետև գտնվում էի մահվան շեմին: Ես պետք է օգտագործեի աշխատունակությանս ամեն մի պահը, ավարտելու համար իմ երկը, որին ես զոհաբերեցի առողջությունս, կյանքի երջանկությունը, ընտանիքը: Հուսով եմ՝ այս բացատրությունը բավական է: Ես ծիծաղում եմ, այսպես ասած, «պրակտիկ» մարդկանց ու նրանց գերիմաստության վրա: Եթե ուզում ես անասուն լինել, կարելի է, իհարկե, երես դարձնել մարդկության տանջանքներից ու սեփական մաշկից դուրս չգալ: Սակայն ես ինձ, հիրավի, ոչ պրակտիկ կհամարեի , եթե ոտքերս փռեի լիովին՝ գոնե ձեռագիր վիճակում չավարտելով գիրքս» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 31, стр. 451):

Իրոք, երբ մարդը ձեռնարկում է որևէ գործի՝ առանց համոզվելու այն գաղափարների ճշմարտացիության մեջ, որոնց համար ինքը պետք է պայքարի, զրկվում է կամային մղումներից, ջանքերի նպատակայնությունից, ներշնչանքից ու ոգեշունչ վերելքից, որոնք անհրաժեշտ են ցանկացած, հատկապես սոցիալական մեծարժեք գործերում: Առանց հոգեկան այրման, առանց հուզավառ բանականության ոչ մի վեհ բան չի ծնվում: Պատմությունն անխոս վկան է այն բանի, երբ հանուն սոցիալական արդարության վսեմ ճշմարտությունների, այդ գաղափարների երդվյալ պաշտպաններն արհամարհել են մահը, այրվել խարույկի վրա, կրել ամենատանջալի պատիժը:

Մեկնելով մարդու էության գիտական ըմբռնման ու հասարակական զարգացման օրինաչափություններից՝ մարդու զարգացումը մեր դարաշրջանում մարքսիզմ-լենինիզմը դիտում է հին շահագործողական հասարակությունից անդասակարգ հասարակության անցնելու պրոցեսում: Այս հասարակության մեջ վերանում են կարիքն ու ճնշումը. հասարակական խնդիրների լուծման ընթացքում մարդը համերաշխ է իր գործընկերների հետ, նրան հնարավորություն է ընձեռվում լիովին զարգացնելու տաղանդն ու ունակությունները:

Դեռևս անցյալ դարի քառասունական թվականներին Մարքսն ու Էնգելսը նշում էին, որ մարդու ստեղծագործական ուժերը կոմունիզմի օրոք կարող են առավել լրիվ հայտաբերվել ու զարգանալ: Իրական կոլեկտիվիստական այդ հասարակարգը, ըստ նրանց, տարբերվում է շահագործողական աշխարհի թվացող կոլեկտիվիզմից: Նոր հասարակության մեջ սոցիալական հարաբերությունները նոր որակ են ստանում: Կապիտալիզմին բնորոշ է իրերի իշխանությունը, որն ամայացնում է մարդու ներաշխարհը, նրան ենթարկում պատահականու-



թյան (կամ ինչ-որ ճակատագրի), զոհաբերում արտաքին ու օտար նպատակի: Նոր հասարակարգում մարդն ինքն է տնօրինում իր կյանքն ու ճակատագիրը: Բուրժուական անձնավորության թվացյալ ազատությունը, որը Մարքսը բնութագրել է որպես «ամեն մի անձնական ազատության լիակատար վերացում ու անհատականության կատարյալ ստրկացում հասարակական այնպիսի պայմաններում, որոնք ընդունում են իրերի ուժի ձև», փոխարինվում է իսկական ազատությամբ, երբ մարդիկ իրենք են վերահսկում սեփական գոյության պայմանները: Նման հասարակության մեջ առաջին անգամ իրականացվում է յուրաքանչյուր անհատի բացառիկ արժանիքը, որպես անհատական յուրօրինակության մեջ ստեղծագործական ուժերի և ունակությունների կրող. «Յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է», կարդում ենք Կոմունիստական կուսակցության մանիֆեստում: Այդ միտքը, որ արտացոլված է նաև ՍՍՀՄ Նոր Սահմանադրության մեջ, դարձել է կոմունիստական իդեալի արտահայտություն:

Անցյալի էթիկան դիմում էր վերպատմական բարոյական աղբյուրներին (աստծուն, բարու հավերժական գաղափարին կամ մարդու բնությանը), մարդկանց վերադաստիարակության հարցերը հանգեցնելով հասարակական պայմաններից դուրս առանձին անհատի բարոյական գիտակցության զարգացման: Այն մեծ տեղ էր հատկացնում անձնավորության վարքագծում բանականության ու հույզի փոխհարաբերության, կրքերի վրա բանականության հսկման, անձնավորության գիտակցության մեջ արմատացած տենչերին իշխող վերացական պարտքի ուսումնասիրմանը: Մարքս-լենինյան էթիկան այս և ուրիշ հարցեր քննում է մարդու և հասարակության առնչությունների, սոցիալական առաջընթացի մեկնակետից: Պատմական պրոցեսի ընթացքում հարստանում է բարոյական սկզբունքների բովանդակությունը, ստեղծվում են նոր դարաշրջանի պահանջմունքներին համահունչ հասարակական հարաբերությունները կարգավորող նոր արժույթներ:

Մեր գաղափարական հակառակորդները շարունակում են վայրահաչել, թե իբր կոմունիզմն անտարբեր է մարդու ներաշխարհի նկատմամբ: Եվ այդ «մեղադրանքն» արտահայտվում է զանազան տարբերակներով: Ըստ էթիկական տարբերակի, կոմունիզմը չի ընդունում անձնական խիղճը, այն փոխարինում է հասարակական կամ անառարկելի հեղինակավոր խղճով: Այստեղ մոռացության է տրվում, որ հասարակական հարաբերություններից անկախ անձնական խիղճ գոյություն չունի: Խիղճը, ինչպես բարոյական մյուս հասկացությունները, արտահայտում է մարդկանց փոխհարաբերությունն իրենց առօրյա շփման ընթացքում: Դրա սնուցիչ աղբյուրը ոչ թե առանձին անհատն է, այլ հասարակությունը, որոշակի դասակարգը կամ հասարակական խումբը:

Անցյալի պատմությունից մեզ հայտնի են դարաշրջաններ, երբ ժամանակի ոգին, խիղճը, բարոյական առաջընթացն արտահայտել են առաջավոր մտածողները, որոնց գաղափարները հասարակական մեծ ներգործություն են ունեցել աշխատավորական լայն զանգվածների շրջանում, մղել նրանց հեղափոխական պայքարի: Մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունն է՝ ժողովրդական զանգվածների ղեկավարը կոմունիստական հասարակության կառուցման համար ծավալված պայքարում:

Մեր երկրում նոր կյանքի հաստատման փորձը վկայում է, որ մարդու անհատական աշխարհը (ընդ որում և բարոյական) առավելապես հարստանում է այն դեպքում, երբ անհատը սերտորեն կապված է մարդկանց, կոլեկտիվի, ժողովրդի հետ՝ հանուն ընդհանուր նպատակների: «Ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին,— ասում է ընկեր Բրեժնևը,— ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ»: Կուսակցության XXV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը բովանդակում է երկրի նախորդած տարիների սոցիալիստական զարգացման սկզբունքային գնահատականը, ընդհանրացնում անցած հնգամյակների վիթխարի նշանակությունը՝ որպես մասսաների կոմունիստա-

կան դաստիարակության դարբնոց։ Մեծ Հոկտեմբերի վաթսունամյակի կարևորագույն արդյունքը, նշված է զեկուցման մեջ, սովետական մարդն է, որը, կառուցելով նոր կյանք, «ինքն էլ փոխվեց անճանաչելիորեն, իր մեջ միացնելով գաղափարական համոզվածությունն ու հսկայական կենսական եռանդը, կուլտուրան, գիտելիքները և դրանք կիրառելու կարողությունը»։

Այս ժամանակամիջոցում կուտակված փորձը համոզիչ վկայում է, որ մարդու դաստիարակության գործում չպետք է միայն ապավինել բարենպաստ հանգամանքներին, հուսալով, թե մարդկանց բարձր գաղափարական ու բարոյական հատկանիշները, կոմունիզմ կառուցելու նրանց պատրաստակամությունը, կամքն ու կարողությունը կձևավորվեն ինքնաբերաբար, որպես տնտեսական ու սոցիալական վերափոխումների արդյունք։ Կոմունիզմը հաստատվում է հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում՝ միայն աշխատավորների նպատակասլաց ու կազմակերպված գործունեությամբ։ Բնական է, որ նոր մարդու ձևավորումը տեղի է ունենում գիտականորեն կանխագծված եղանակով։

Գաղափարադաստիարակչական աշխատանքը սոցիալիստական հասարակության մեջ իրականացվում է մարքս-լենինյան մեթոդոլոգիայի հիման վրա։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների մշակած նոր մարդու ձևավորման հիմնարար սկզբունքներն ու օրինաչափությունները զարգանում ու կատարելագործվում են սոցիալիստական ու կոմունիստական շինարարության ընթացքում։ ՍՄԿԿ գաղափարադաստիարակչական գործունեության վիթխարի փորձն ընդհանրացված է կուսակցական փաստաթղթերում։ Կոմունիստական կուսակցությունը մարդկանց դաստիարակության գործում գիտական մոտեցումը հիմնում է այդ պրոցեսին հատուկ օբյեկտիվ օրինաչափությունների գիտակցական օգտագործման, մարդու հասարակական-պրակտիկ էության ճշմարտացի ըմբռնման վրա, դիտելով նրան որպես սեփական կենսական պրոցեսի արարիչ ու արդյունք։

Պարագաներն այն չափով են ստեղծում մարդկանց, որ չափով մարդիկ իրենք են ստեղծում պարագաները։ Անհատի էությունը հասարակական հարաբերությունների միագումար է, ուստի նոր մարդու ձևավորումն իրականացվում է այդ հարաբերությունների համակարգի կոմունիստական վերափոխմամբ։ Միայն այդ եղանակով է հնարավոր ցանկալի փոփոխություն առաջացնել մարդու էության մեջ։ Մարդկանց գիտակցության մեջ կոմունիստական տարրեր կարող են ձևավորվել դասակարգային պայքարում, սոցիալիստական առաջընթացի համար մղվող մարտերում, ինչպես և կոմունիստական շինարարությանը նրանց գործնական մասնակցության, կոմունիստական գաղափարախոսության սկզբունքների ու վարքագծի նորմերի յուրացման շնորհիվ։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, մեր հասարակությունը նոր մարդու դաստիարակության գործում ձեռք է բերել անվիճելի հաջողություններ։ Միաժամանակ համագումարը մեծ ուշադրություն նվիրեց կոմունիստական դաստիարակության հասունացած խնդիրներին։ Դրանցից գլխավորը գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացումն է։ Այդ խնդրի լուծման համար, ինչպես ցույց է տալիս կուսակցական կազմակերպությունների փորձը, անհրաժեշտ է դաստիարակության գործը ծրագրելիս ապահովել կոմպլեքսային մոտեցում— գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության օրգանական միասնություն՝ չանտեսելով աշխատավորների տարբեր խմբերի առանձնահատկությունները։

Կոմպլեքսային մոտեցումը մարդու դաստիարակության կազմակերպման գիտական, ստեղծագործական մեթոդ է։ Այն համապատասխանում է զարգացած, հասուն սոցիալիստական հասարակության բնույթին, հումանիստական իդեալներին, բխում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրակտիկայի, հասարակական հարաբերությունների ողջ համակարգի կատարելագործման, նոր մարդու ձևավորման պահանջներից։ Հարկ է նկատել, որ կոմպլեքսային մոտեցումը ոչ միայն կուսակցական կազմակերպությունների, անմիջապես դաստիարակությամբ զբաղվող գաղափարական հաստատությունների գործն է։ Ցանկացած ժողովրդատնտեսական գործունեություն ունի սո-



ցիալ-դաստիարակչական ասպեկտ և, հետևաբար, յուրաքանչյուր տնտեսվար, ծառայող կամ աշխատանքային կոլեկտիվի ղեկավար պարտավոր է մարդկանց հետ աշխատելիս հաշվի առնել նրանց պահանջները։

Նոր մարդու ձևավորման պրոցեսի օպտիմալ կառավարման կարևորագույն պայմաններից են գաղափարադաստիարակչական աշխատանքի մեթոդները և դրանց կիրառման եղանակները։ Կոմունիստական դաստիարակության հիմնական նպատակը անհատի համակողմանի ու ներդաշնակ զարգացումն է, որը ներառնում է կոմունիստական համոզվածությունը, խոր գիտելիքները, սոցիալական բարձր ակտիվությունը, բարոյական և ֆիզիկական կատարելությունը։ Գաղափարաբարոյական աշխատանքի նման ուղղվածությունը գիտականորեն հիմնավորված է և համահնչուն է հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների պահանջներին։ Անհատի համակողմանի զարգացման լենինյան գաղափարը կուսակցության գաղափարադաստիարակչական աշխատանքի մայրուղին է։

Ժամանակակից բուրժուազիայի գաղափարախոսները, ճգնելով սև գույնով ներկայացնել կոմունիզմը, խեղաթյուրում են նրա վսեմ նպատակներն ու հումանիստական էությունը։ Ինդուստրիալ սոցիոլոգիական կոնցեպցիայի կողմնակիցները, օրինակ, տարածել են վերսիա, որի համաձայն կոմունիզմը էկոնոմոցենտրիստական հասարակական սիստեմ է, իբր վերջինիս միակ նպատակը տեխնիկատնտեսական առաջընթացն է։ Ըստ ամերիկացի սոցիոլոգ Օլվին Թոֆլերի, կոմունիզմն իբր ինդուստրիալիզմի տարբերակ է, որը չի լուծում օտարման պրոբլեմը, և դրա համար մարդիկ, իրենց գործերն ու մտքերը նվիրաբերելով կոմունիզմին, զոհվում են ապամարդկային գաղափարներին։

Ջնայած Ամերիկան իր երկուհարյուրամյակը նշում էր անցած տարվա հուլիսի 4-ին, տոնակատարությունների պաշտոնական ավարտը տեղի ունեցավ ս. թ. հուլիսի 4-ին, երբ երկուհարյուրամյակի տոնակատարման հանձնաժողովը ԱՄՆ-ի կոնգրեսին հանձնեց իր հինգ հատորանոց զեկուցումը։ Ծոխ նկարազարդված ժողովածուն կարծես ընդհանրացնում է Միացյալ Նահանգների երկուհարյուրամյա պատմությունը, տալիս է ներկայիս Ամերիկայի դիմանկարը և կանխատեսում ամերիկյան հասարակության զարգացման հեռանկարը։ Այստեղ շեշտը դրվում է «ամերիկյան դեմոկրատիայի», «ամերիկյան արժույթների» և իհարկե, «ամերիկյան պատրանքի» վրա։ Հեղինակների կարծիքով, ժողովածուն պետք է լինի յուրաքանչյուր ամերիկացու սեղանի գիրքը։

Սակայն իրականում ինչ պատահեց «ամերիկյան պատրանքի» ու «ամերիկյան արժույթների» հետ։ Այդ մասին են պատմում Մ. Հարինգտոնը իր Կապիտալիզմի մայրամուտը և Պ. Շրեգը՝ Վերջ ամերիկյան ապագային գրքերում։ Միայն վերնագրերը բավական են հասկանալու հեղինակների խոհերը։ Ամերիկան ստեղծում է նորագույն տեխնոլոգիա, սակայն հոգեպես աղքատացել է։ 70-ական թվականների ճգնաժամը, նշում է Մ. Հարինգտոնը, այն փաստի ճշգրիտ հաստատումն է, որ կապիտալիզմը պատմականորեն իր դարն ապրել է և, լինելով աղետաբեր, խանգարում է առաջընթացին։

Վառելիքի արդյունահանման ընդլայնման հետևանքը դարձավ էներգետիկական ճգնաժամը, ժամանակակից տեխնոլոգիան ծնեց ահռելի գործազրկություն, սոցիալական քաղաքականությունը՝ «հիվանդ հասարակություն», որտեղ միլիոնավոր մարդիկ ստանում են ողորմություն ու անկարող են իրենց կերակրել։ Պ. Շրեգը խոստովանում է, որ ամերիկացիները կորցրել են հավատն ապագայի նկատմամբ, հավատազրկվել են Վիետնամում, ուսանողների ջարդի ժամանակ Չիկագոյում, Ուոտերգեյտում, ռասայական կոնֆլիկտներում։ Մենք կարող ենք հսկել մարդուն տիեզերք ուղարկող մեքենան, սակայն անկարող ենք կանխատեսել մեր ապագան... երկու հարյուր տարի մենք մեր երկիրն անվանում էինք «հնարավորությունների երկիր»։ Այսօր մարդիկ տեսան դրանց ռեալ իմաստը և երես են թեքում։ «Պաբլիկ ինտրեստ» հանդեսը «Առատության միֆը» հոդվածում նկատել է, թե «մեր ամենամեծ սխալը (և դա հաստատեցին 70-ական թվականները) այն է, որ մենք անցյալին հանձնեցինք աղքատության պրոբլեմը։ Մեզանում երբեք չի եղել «առատության հասարակություն»... ի՞նչ անել այն 20—30 մլն աշխատողներին, որոնք չեն

տանում մեր հասարակության դաժան օրենքը՝ «կենդանի է մնում ուժեղը»։ Բուրժուական ողջամիտ գաղափարախոսների խոստովանությամբ այսպիսին է արդի կապիտալիստական աշխարհի իրավիճակը։

Ամենօրյա գաղափարադաստիարակչական աշխատանքի սերտ կապը ներդաշնակ անհատի ձևավորման հեռանկարային նպատակների հետ՝ հասարակական արտադրության հետագա զարգացման կարևոր պայմանն է տասներորդ հնգամյակում։ Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները սոցիալիզմի առավելությունների հետ միացնելու, ժողովրդական տնտեսության վերելքի, արտադրության արդյունավետության ու որակի բարձրացման խնդիրները չեն կարող լուծվել առանց աշխատողների մասնագիտական վարպետության, նրանց սոցիալական ակտիվության, քաղաքացիականության մակարդակի, կոմունիստական գիտակցականության բարձրացման։ Գիտատեխնիկական հեղափոխությունը, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման աճող ու բարդացող խնդիրները ենթադրում են համապատասխան փոփոխություններ մարդու գիտակցության, նրա մտածողության բնույթի ու բովանդակության, վարքագծի ու աշխատանքային գործունեության ոլորտում։ Հետևաբար բարձրանում է նրա գաղափարական, աշխատանքային կարգավորիչների դերը, որը և պետք է համապատասխանորեն արտացոլվի գաղափարադաստիարակչական ամենօրյա աշխատանքում, նրա բովանդակության, ձևերի ու մեթոդների մեջ։

Սոցիալիստական արտադրությունը նպաստում է դրսևորելու մարդու ստեղծագործական հնարավորությունները, հանրօգուտ աշխատանքը վերածելու առաջին կենսական պահանջմունքի հասարակության ամեն մի անդամի համար։ Սակայն տակավին պահպանվում է ձեռքի ծանր աշխատանքը։ Չեն հաղթահարվել գործալքությունները, պարապուրդները, ցածրորակ արտադրանքի թողարկումը և այլ թերություններ, որոնց պատճառով կորչում են միլիոնավոր մարդ-օրեր։ Այս առնչությամբ կոմունիստական դաստիարակության հիմնական խնդիրներից է, ինչպես նշվել է կուսակցական փաստաթղթերում, աշխատանքի գիտակցական կարգապահության, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում որակի բարձրացումը։

Հակակոմունիզմը բոլոր միջոցներով ձգտում է, որպեսզի սոցիալական իներտության, քաղքենիության, ընչաքաղցության վիրուսը մեր հասարակության մեջ հարուցի սովետական մարդկանց բուրժուական վերասերման համաճարակ։ Եվ այդ հասկանալի է։ Դասակարգային պայքարի պրակտիկան վկայում է, որ բուրժուական արժեքների ազդեցությամբ առավելապես համակված են սպառողական մտայնության տեր մարդիկ։ Իրերի պաշտամունքը, հարստանալու տենչը, կաշառակերությունը, յուրացումները, հավելագրումները, սպեկուլյացիան, քծնանքը, հաճոյակատարությունը, պորտաբուծությունը, հարբեցողությունը, անտարբերությունը մարդու նկատմամբ ի հայտ են գալիս կյանքի հանդեպ սպառողական վերաբերմունք ցուցաբերելիս։ Ահա թե ինչու ժամանակակից պայմաններում աշխատավորների բարեկեցության մշտական վերելքի, սպառման հասարակական ֆոնդերի ավելացման ժամանակ անհրաժեշտ է լինում խելամիտ ու արդյունավետ օգտագործել հասարակության նյութական ու հոգևոր արժեքները, հետևողականորեն բարձրացնել մարդկանց գաղափարաբարոյական մակարդակը։ «Մենք,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— քիչ արդյունքների չենք հասել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Մենք այսուհետ ևս հետևողականորեն կլուծենք այդ խնդիրը։ Սակայն անհրաժեշտ է, որ նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացմամբ։ Հակառակ դեպքում մենք կստանանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ։ Սա չի կարելի աչքաթող անել»։

Կուսակցության այս պահանջը նպատակ ունի կուսկազմակերպություններին զինելու դաստիարակչական միջոցառումների լուրջ ծրագրերով, որտեղ պետք է հանգամանորեն լուսաբանվեն մարդու հասարակական էությունը, նրա գոյության իմաստը, հասարակության հետ ունեցած փոխհարաբերությունների սկզբունքները։ Միաժամանակ անհրաժեշտ է հետևողական պայքար կազմակերպել մարդկանց վարքագծում նկատվող անցյալի մնացուկների դեմ, դիմակերծել բուրժուական ապրելակերպի հակամարդասիրական էությունը։

Այստեղ, անշուշտ, կարևոր են սոցիալիստական ապրելակերպի ակտիվ ու փաստարկված պրոպագանդան, խելամիտ պահանջմունքների, կյանքի ճշգրիտ կողմնորոշման, բարձր ճաշակի, բարեխիղճ ու ստեղծագործաբար աշխատելու անհրաժեշտության գիտական հիմունքների մշակումն ու լուսաբանումը։ Ճշմարիտ է, սակայն, որ այդ հարցերը մերթ պատշաճ ուշադրության չեն արժանանում համապատասխան կազմակերպությունների կողմից, քաղաքական ուսուցման համակարգում, աշխատանքային կոլեկտիվներում։ Չէ՞ որ կյանքում մարդկանց գործած շատ սխալներ հետևանք են նրանց ոչ ճիշտ սոցիալական կողմնորոշման կամ գաղափարադաստիարակչական աշխատանքում տեղ գտած վրիպումների։

Կենցաղային վնասակար սովորույթների իներցիան, տարբեր բնույթի տոնախմբություններին, իրադարձություններին, կենցաղային հաջողություններին նվիրված միօրինակ հանդիսությունները հոգեկան լիցք չեն հաղորդում անհատին, արգելակում են նրա առաջընթացը։ Ուսումնասիրությունները վկայում են, որ մեղանում մարդկանց ազատ ու արտաաշխատանքային ժամանակի զգալի մասը ծախսվում է տնային գործերի, պասիվ զվարճությունների վրա։ Մարդկանց խելամիտ հանգստի ու կենցաղի կազմակերպումը նրանց կուլտուրայի ու գիտակցականության բարձրացման կարևոր պայման է։

«Հեղափոխական ստեղծարար աշխատանքի ընթացքում,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին որոշման մեջ,— և ազատության պայքարում, սոցիալիստական շինարարության առօրյայում կազմավորվում և կոփվում էր սովետական մարդը։ Իր աշխատանքային սխրանքներով ու ստեղծագործական մեծագործություններով, Հայրենական մեծ պատերազմի ահեղ փորձություններում ցուցաբերած հերոսական տոկունությամբ ու արիությամբ, ամբողջ աշխարհում դասակարգային եղբայրներին ցույց տված իր անշահախնդիր օգնությամբ սովետական մարդն ապացուցել է իր խորին նվիրվածությունը կոմունիզմի իդեալներին, իր բոցաշունչ հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը։ Նա իր մեջ միավորում է գաղափարական համոզվածություն և հսկայական կենսական եռանդ, մշտական ձգտում դեպի գիտելիքների ու կուլտուրայի բարձունքները, կոլեկտիվիզմի և ընկերական փոխօգնության զգացում։ Սովետական մարդը ջերմորեն սիրում է իր սոցիալիստական հայրենիքը։ Նրա ամբողջ կյանքի բովանդակությունը դարձել է ոգեշունչ աշխատանքը հանուն կոմունիզմի»։

Կոմունիստական գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների ու պրակտիկ գործողությունների համաձուլվածք է։ Ուրեմն, կոնկրետ գործերն են դաստիարակչական աշխատանքի հաջողության չափանիշը։ Սակայն այն չպետք է միայն սահմանափակել աշխատանքի արդյունքներով։ Այստեղ անհրաժեշտ են կոմպլեքսային չափանիշներ, երբ, բացի արտադրական ցուցանիշներից, հաշվի է առնվում նաև աշխատողի ակտիվ դիրքորոշումը կենսական կարևոր հարցերի լուծման գործում։ Խոսքի ու գործի միասնություն, որպես ամենօրյա վարքագծի նորմ, գիտակցական վերաբերմունք հասարակական պարտքի հանդեպ, պատրաստակամություն, կամք ու կարողություն կոմունիզմի կառուցման համար— կուսակցական այս սկզբունքները ցանկացած կոլեկտիվում գաղափարադաստիարակչական ողջ աշխատանքի գնահատման մեթոդոլոգիական հիմքն են։ Այս հարցերը հանգամանորեն քննարկվեցին ՀԿԿ Կենտկոմի անցյալ տարվա հոկտեմբերյան պլենումում։

Ակներև է, որ անցած ժամանակաշրջանում դրական որոշ տեղաշարժեր են կատարվել։ Բոլոր օղակներում նկատելիորեն ամրապնդվել է կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահությունը, բարձրացել պատասխանատվությունը վստահված գործի նկատմամբ, ուժեղացել կազմակերպական աշխատանքը։ Այդ ամենի վկայությունն այն հաջողություններն են, որ հանրապետությունում ձեռք են բերվել նյութական արտադրության ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտներում։ Կատարվածը հուսադրում է, ոգեշնչում։ Սակայն առջևում մեծ գործեր կան, նոր ընագծեր։

# ՏԵՄՊԵՐԻ ՀԱՐՑՈՒՄ ՍՄԿԿ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՎԵՏՈԼՈԳԻԱՅԻ ՃԳՆԱԺԱՄԸ*

Հ. Վ. ՀԱԿՈԲՅԱՆ

*ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ տնտեսական մրցության մեջ գլխավորը տնտեսության, հատկապես արդյունաբերության զարգացման տեմպերն են։*

*Դեռ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից առաջ* Սպառնացող աղետը և ինչպես պայքարել դրա դեմ *հայտնի աշխատության մեջ Վ. Ի. Լենինը նշում էր, որ փետրվարյան հեղափոխությունն արեց այն, որ Ռուսաստանը մի քանի ամսում իր* քաղաքական *կարգերով հասավ առաջավոր երկրներին։ Բայց այդ քիչ է,— ասում էր Վ. Ի. Լենինը։— Պատերազմն անողոք է. հարցը դնում է անողոք կտրականությամբ՝ կա՛մ կործանվել, կա՛մ հասնել առաջավոր երկրներին և նրանցից առաջ անցնել* նաև տնտեսապես...

*Կործանվել, կամ ամբողջ թափով առաջ սլանալ։ Պատմությունն այսպես է դրել հարցը (տե՛ս Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 25, էջ 466—467)։*

*Զարգացման բարձր տեմպերի հարցին Վ. Ի. Լենինը բազմիցս անդրադարձել է հատկապես Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո, շեշտելով, որ պրոլետարիատն իրականացնում է աշխատանքի հասարակական կազմակերպման ավելի բարձր տիպ կապիտալիզմի համեմատությամբ։ Դրանում նա տեսնում էր «Կոմունիզմի անխուսափելի լիակատար հաղթանակի ուժի աղբյուրը և գրավականը» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 29, էջ 513)։*

*Կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ սոցիալիզմի հաղթանակը համարելով անխուսափելի, պրոլետարական հեղափոխության առաջնորդը աճի տեմպերի ապահովումն զգալի չափով պայմանավորում էր ՍՄԿԿ ճիշտ տնտեսական քաղաքականությամբ, այն բանով, թե որքանով կառավարող կուսակցությունը կկարողանա գիտականորեն ըմբռնել և օգտագործել սոցիալիստական արտադրաեղանակի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, զուգորդելով դրանք սովետական քաղաքական կարգի առավելությունների հետ։ «...մենք ձեռք կբերենք այն,— գրում էր Վ. Ի. Լենինը,— որ կհասնենք մյուս պետություններին այնպիսի արագությամբ, որի մասին նրանք մինչև անգամ չեն երազել... այդպիսի արագությանը, եթե շարժումը ղեկավարում է իրոք հեղափոխական կուսակցությունը, այդպիսի արագությանը մենք հավատում ենք և այդպիսի արագությանը մենք, ինչ էլ որ լինի, կհասնենք» (Վ. Ի. Լենին,* Երկեր, *հ. 33, էջ 464—465)։*

*Անշեղորեն կատարելով լենինյան պատգամները, տնտեսության, մասնավորապես արդյունաբերության աճի բարձր և կայուն տեմպերի ապահովումը ՍՄԿԿ դարձրեց իր տնտեսական քաղաքականության անկյունաքարը, հասնելով պատմության մեջ նախադեպը չունեցող արդյունքների՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության համակողմանի ու ներդաշնակ զարգացման ասպարեզում։*

«Վեց տասնամյակում Հոկտեմբերի հայրենիքի ձեռք բերած նվաճումները համոզիչ վկայությունն են այն բանի, որ սոցիալիզմը ապահովել է հասարակության կյանքի բոլոր կողմերի առաջադիմության՝ պատմության մեջ չտեսնված տեմպեր»*— ասված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թ. հունվարի 31-ի որոշման մեջ։*

*Իմպերիալիզմի գաղափարախոսներն անկարող լինելով լռության մատնել ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության նվաճումները, ճգնում են վիճարկել դրանք, ժխտել դրանց միջազգային-քաղաքական նշանակությունը։*

*Այսպես կոչված սովետոլոգները այդ քաղաքականությունը մեկնաբանում են որպես ՍՄԿԿ «ղեկավար վերնախավի» սուբյեկտիվ կամքի արտահայտություն, բարձր տեմպերը համարելով միակողմանի աճի արգասիք՝ մատնացույց անելով արտադրամիջոցների արտադրության առավել զարգացման ՍՄԿԿ քաղաքականությունը։ Այլ կերպ ասած՝ նրանք չեն ընդունում օբյեկտիվ օրինաչափությունների առկայությունը, որոնք ընկած են այդ տեմպերի հիմքում և ամենից առաջ արտադրահարաբերությունների վճռորոշ նշանակությունն արտադրաուժերի զարգացման համար։*

*Պայքարելով պատմության մատերիալիստական ըմբռնման դեմ, մարտնչող իմպերիալիզմի գաղափարախոսներն ու քաղաքագետները փորձում են ժխտել հասարակական-արտադրական ֆորմացիաների մարքսիստական տեսությունը և, հետևաբար, արտադրահարաբերությունների և արտադրաուժերի համապատասխանության օրենքը։ Եվ դա էլ բոլոր նորագույն բուրժուական տեսությունների, մասնավորապես, «տեխնոլոգիական դետերմինիզմի» հիմքն է։*

*Այդ տեսության կողմնակիցները, գերագնահատելով գիտատեխնիկական հեղափոխության դերը, գտնում են, որ դրա միջոցով հնարավոր է լուծել կապիտալիզմի բոլոր սցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրները և հետևաբար՝ սոցիալական հեղափոխությունը դառնում է «ավելորդ»։*

*Այսպիսով, ժխտելով արտադրաուժերի զարգացման խնդրում արտադրահարաբերությունների նշանակությունը, սովետոլոգները կասկածելի են համարում սովետական տեմպերը, ձեռնարկելով դրանք վերանայելու և վերագնահատելու փորձեր։*

***

*Բուրժուական տնտեսագետներն ու սոցիոլոգները փորձել են ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության արդյունքները վերանայել դեռևս 1940-ական թվականների վերջերից։ Սակայն դրանք մեծապես ծավալվեցին 50—60-ական թվականներին, հատկապես անգլո-ամերիկյան և ֆրանսիական բուրժուական գրականության մեջ, և շարունակվում են առ այսօր։*

*Քննադատելով ՍՍՀՄ արդյունաբերության զարգացման բարձր և կայուն տեմպեր ապահովելու ՍՄԿԿ քաղաքականությունը, բուրժուական գաղափարախոսները ճգնում են ապացուցել, որ իբր սովետական վիճակագրությունը գիտակցաբար ներկայացնում է ուռճացված տվյալներ, որոնք խեղաթյուրում են իրերի իրական վիճակը տեմպերի հարցում։*

*Տակավին 1947 թ. առարկելով այդ պնդմանը, սովետական տնտեսությանը քաջատեղյակ ամերիկյան տնտեսագետ Ա. Յուգովը գրում էր, որ սովետական վիճակագրական մեթոդոլոգիան չի կարող չտարբերվել Եվրոպայում և Ամերիկայում ընդունված մեթոդոլոգիայից թեկուզ այն առումով, որ սոցիալիստական տնտեսությունը զարգանում է իրեն յուրահատուկ օրինաչափություններով։ Նա ուշադրություն էր հրավիրում այն բանին, որ ՍՍՀՄ-ում գոյություն ունի ուղղակի կապ տնտեսական պլանավորման և վիճակագրության միջև, որ վիճակագրությունը չի կարող զբաղվել աճպարարությամբ, որովհետև այն ընթացիկ և հեռանկարային պլանավորման հիմքն է։ Նա իրավամբ գտնում էր, որ վիճակագրությունը ՍՍՀՄ-ում արտացոլում է եղած փաստերը շատ ավելի մեծ պարզությամբ ու լիակատարությամբ, քան մյուս երկրներում, որտեղ ազգային խնդիրների և առանձին ճյուղերի վիճակագրական ուսումնասիրությունը ո՛չ միայն շատ խճողված է տվյալների ստացման տեխնիկական թերությունների հետևանքով, այլ նաև կանխամտածված կերպով խեղաթյուրված է մասնավոր շահերի, առևտրական գաղտնիքի, մրցակցության և այլ պատճառներով։*

*) *Հոդվածում օտար աղբյուրներից բերված վկայակոչումները ստուգված են մեր կողմից։* Խմբ.։

Ինչպես, սովետական վիճակագրության տվյալները հերքելու և ՍՍՀՄ զարգացման տեմպերի «իրական» պատկերն ստանալու սովետոլոգների առաջարկած զանազան մեթոդները պարզապես չեն դիմանում ոչ մի գիտական քննադատության: Այդ մեթոդները վերլուծելիս ամենից առաջ աչքի է զարնում երկու առավել ընդհանուր արատ:

Նախ՝ նրանց ճնշող մեծամասնությունը ինդեքսների հաշվարկման ժամանակ կիրառում է ոչ թե սովետական գները, այլ ուրիշ արժեքային էկվիվալենտներ: Այսպես, անգլիական տնտեսագետ Ք. Քլարկը սովետական ազգային եկամտի աճի ցուցանիշը հաշվարկելիս օգտագործում է այսպես կոչված «միջազգային միավորներ»՝ նկատի ունենալով ապրանքի և աշխատանքի այն քանակությունը, որը կարելի էր ձեռք բերել մեկ դոլարով՝ 1925—1934 թվականներին: Ա. Գերշենկրոնը հաշվարկել է ՍՍՀՄ ծանր արդյունաբերության աճի ինդեքսը 1928—1937 թվականների համար՝ ամերիկյան դոլարային գներով, Ջ. Ուայլերը ՍՍՀՄ ազգային եկամտի տվյալները վերանայել է 1940 թ. ամերիկյան գների հիման վրա, Ն. Յասնին կիրառել է 1926—27 թթ. անփոփոխ գների այսպես կոչված «դոլարային համարժեքը», Ժ. Մարչևսկին՝ «միջին եվրոպական գները» և այլն: Այս մեթոդը սխալ է և արատավոր իր հիմքում, որովհետև ամեն մի երկրի ազգային արտադրության առանձնահատկությունները, մասնավորապես աշխատանքի արտադրողականության վիճակը, արտադրանքի ինքնարժեքը առավել ճշգրտորեն արտացոլված են միայն ազգային շրջանակներում գոյացած գներում:

Այս հանգամանքին ուշադրություն է հրավիրում անգլիական տնտեսագետ Ֆ. Սետոնը, սովետական արտադրանքի աճի ցուցանիշները հաշվարկելիս որպես կշիռ ամերիկյան գների կիրառումը համարելով անթույլատրելի:

Սովետական վիճակագրության տվյալները վերանայելու փորձերի մյուս առավել ընդհանուր խոցելի կողմն այն է, որ սովետոլոգների հաշվարկած ինդեքսները չեն ընդգրկում արդյունաբերական արտադրանքի շատ ֆիզիկական շարքեր: Այսպես, Հոջմենը սովետական արդյունաբերության զարգացման տեմպերը որոշելիս օգտագործել է՝ 1928—37 թվականների համար 137, 1940—1946-ի համար՝ 22, իսկ 1951 թ. համար միայն 18 տեսակ արտադրանքի ցուցանիշներ: Գերշենկրոնը կիրառել է ընդամենը արտադրանքի ֆիզիկական 128, Շիմկինը՝ 21 շարքի տվյալներ:

Սովետական տնտեսության զարգացման արդյունքների հայտնի կեղծարար Ու. Նատերի ինդեքսները պարունակում են 54-ից մինչև 165 տեսակ արտադրանք: Արևմտագերմանական կոնյունկտուրային ինստիտուտը փորձել է սովետական արդյունաբերական արտադրանքի ցուցանիշը մինչև 1939 թ. ստանալ 47 ֆիզիկական շարքերի միջոցով:

Սովետական ցուցանիշների վերանայման բուրժուական մեթոդները հաճախ հանգում են տնտեսական միակ ցուցանիշի (ինդիկատորի) ընտրությանը, ինչպես, օրինակ, որևէ բազիսային միատարր արտադրանքի կամ նրա մի քանի տեսակների թողարկումը, դրանց աճի չափերը նույնացնելով ողջ արդյունաբերության աճի տեմպերի հետ:

Որպես այդպիսի «ինդիկատորներ» Դ. Շիմկինն օգտագործել է հանքանյութերի օգտագործումը ՍՍՀՄ-ում, Ջ. Բլեկմենը երկաթուղային, գետային, ներքին ծովային, ավտոմոբիլային և օդային տրանսպորտի բեռնաշրջանառությունը և նավթամուղների թողարկման կարողությունը: Ինքը՝ Սետոնը որպես ինդիկատոր օգտագործել է վառելանյութի, պողպատի և էլեկտրաէներգիայի սպառումը:

Նման արատավոր մեթոդը նույնպես հանգեցնում է ցուցանիշի աղավաղման, որովհետև սովետոլոգները, որպես կանոն, կանխամտածված ձևով, ամենից հաճախ անտեսում են արտադրանքի առավել արագ զարգացող ճյուղերն ու տեսակները, որպեսզի ստանան ՍՍՀՄ արդյունաբերության աճի նվազեցված տեմպեր: Օրինակ՝ Ք. Քլարկը, դիմելով բացահայտ կեղծիքի, հաշվի չի առել արտադրանքի մի շարք կարևոր տեսակներ, խոստովանելով, թե «դրանք այնպես կբարձրացնեին ցուցանիշը, որ այն չէր ծառայի իր նպատակին»: Իսկ



այդ նպատակը, ինչպես նշել է Հոջմենը, «արդյունաբերական արտադրանքի աճի ավելի համեստ պատկեր ստանալն է»:

Առանձին դեպքերում տեղի ունի առաջին հայացքից անհասկանալի երևույթ. արտադրանքի ֆիզիկական կազմի ավելի լիակատար հաշվառման դեպքում ստացվում են աճի ավելի ցածր ցուցանիշներ: Այսպես, Հոջմենի արած համեմատությունից պարզվում է, որ սովետական մեքենաշինական արդյունաբերության արտադրանքի նրա հաշվարկած ինդեքսն ավելի բարձր է, քան Գերշենկրոնինը, թեև ինքը վերցրել է արտադրանքի միայն 76 տեսակ, իսկ Գերշենկրոնը՝ 128:

Դա բացատրվում է նրանով, որ Գերշենկրոնը, ի տարբերություն Հոջմենի, գիտակցաբար կիրառել է 1939 թ. ամերիկյան դոլարային գները՝ շեշտելով, որ տնտեսական զարգացման ավելի բարձր մակարդակ ունեցող ԱՄՆ-ի 1939 թ. արտադրանքի գների կիրառումը մի շարք տարիների համար ցույց է տալիս աճի ավելի ցածր տեմպ, «քան սովետական մեքենաշինական արտադրանքի ամեն մի ինդեքս, որը հիմնված է ռուսական գների վրա»:

Տեմպերի հարցում ՍՄԿԿ քաղաքականության արդյունքների բուրժուական կեղծարարների կիրառած մեթոդները բացի այս, առավել ընդհանուր թերություններից ունեն նաև առանձին, այս կամ այն մեթոդին հատուկ արատներ:

Դ. Շիմկինի կողմից հանքանյութերի օգտագործումը որպես ելակետ ընդունելը, ասենք, կարող է արդարացվել նրանով, որ իրապես հումքի բնական պաշարների հարցը շատ կարևոր է այս կամ այն երկրի տնտեսության ինչպես ընթացիկ զարգացման համար, այնպես էլ ապագա հեռանկարները որոշելիս: Այդպես են մտածում ֆրանսիական սոցիոլոգ Ռ. Արոնը, ամերիկյան տնտեսագետներ՝ Ջ. Հոչկինսը և Ջ. Մորիսոնը, իսկ «Յ. Ս. Նյուս էնդ Ուորլդ ռիպորտ» հանդեսը գրում է, որ «Հակառակ տնտեսական հզորությունը... ազգային համախառն արտադրանքով չափելու ավանդական ձևին, հաջորդ քառորդ դարի ընթացքում բուն երկրում արտադրված հումքը առավել մեծ դեր կխաղա տնտեսական հզորությունը գնահատելիս»:

Անժխտելի է, որ ՍՍՀՄ-ն ունի շատ ավելի մեծ պոտենցիալ հնարավորություններ, քան նրա գլխավոր մրցակիցը՝ Միացյալ Նահանգները: Այդ կապակցությամբ ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց, թե կարևոր պրոբլեմներից մեկը, որ «...մենք մեծ թափով լուծում էինք իններորդ հնգամյակի տարիներին, երկրի վառելիքի, էներգիայի, մետաղի և հումքի պահանջմունքների ապահովումն է: Այդ պրոբլեմը մեր առջև կանգնած է ոչ թե բնական ռեսուրսների ֆիզիկական պակասի պատճառով, այլ այն պատճառով, որ դրանց պաշարները սահմանափակ են բնակեցված, արդյունաբերական կենտրոններին մոտիկ գտնվող շրջաններում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 56):

Շիմկինը, նշելով, որ լեռնահանքային արդյունաբերության սիստեմատիկ զարգացումն ապահովում է երկրի հավակնությունների գլխավոր բանալիները ներքին քաղաքականության մեջ և արտասահմանում, ՍՍՀՄ-ի համար արդյունաբերական աճի բարձր տեմպերի պահպանումն ուղղակի պայմանավորում է հանքանյութերով բավարար չափով ապահովվածությամբ, անելով որոշակի կանխագուշակումներ: Ամենից առաջ, եթե Շիմկինն իր գիրքը գրեր գոնե 60-ական թվականներին, ապա հարկադրված կլիներ վերանայել իր կանխատեսումների մեծ մասը: Սակայն ամենակարևորն այն է, որ Շիմկինը, ելակետ ընդունելով այն դրույթը, թե արդյունաբերական արտադրանքի աճը ուղիղ համեմատական է հանքանյութերի սպառման չափերին, Գ. Գրոսմենի մասնակցությամբ այդ սկզբունքով վերահաշվել է սովետական ցուցանիշները և ստացել զգալիորեն նվազեցված ինդեքսներ:

Սակայն Շիմկինը հաշվի չի առել մի շարք տնտեսական գործոններ, որոնք էական նշանակություն ունեն արդյունաբերության զարգացման տեմպերի համար, ինչպես՝ արտադրողականության բարձրացումը, արտադրության տեխնոլոգիայի կատարելագործումը (որը հասցնում է հումքի տնտեսման), տեխնիկական առաջընթացը, արտադրության կուլտուրայի բարձրացումը (ավելի քիչ թափոններ) և այլն: ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի երրորդ նստաշրջանում նշվեց, որ միայն մեկ տոկոսի չափով համապատասխան հան-

քային հումքի տնտեսումը արտադրությանը լրացուցիչ տալիս է մեկ միլիոն տոննա պողպատ, մոտ 5 միլիոն տոննա նավթ, մինչև 3 միլիարդ խորանարդ մետր գազ («Правда», 9-го июля, 1975 г.)։

Այդ պատճառով միշտ չէ, որ արտադրանքի թողարկման աճի տեմպերը պայմանավորված են հանքանյութերի սպառման չափերով։

Արդյունաբերական արտադրանքի և հանքանյութերի սպառման ինդեքսների փոխհարաբերության վրա ներազդում են բազմաթիվ գործոններ։ Եվ Հոջմենը նկատել է, որ այդ գործոնների ազդեցության մեջ չկա ընդհանուր միտում և ուստի անհնար է ապրիորի ասել, ինչն է ավելի արագ աճում արդյունաբերական վերելքի ժամանակ՝ արդյունաբերական արտադրանքի, թե՞ օգտակար հանածոների օգտագործման ինդեքսը։

Սակայն Դ. Հոջմենը քննադատում է Շիմկինի մեթոդի որոշ կողմերը միայն, սկզբունքորեն չժխտելով նրա փորձի անհրաժեշտությունը։ Ավելին, նա առաջադրում է սովետական արդյունաբերության զարգացման տեմպերի հերքման իր սեփական մեթոդը։ Հոջմենը հատկապես հանդես է գալիս արդյունաբերական արտադրանքի համախառն արժեքի ցուցանիշի դեմ, որը որոշվում է գործարանային մեթոդով և պարունակում կրկնակի հաշվարկ։ Բանն այն է, որ այդ մեթոդի կիրառմամբ ամեն մի դիտարկման միավոր (գործարան, ֆաբրիկա, կոլտնտեսություն, սովետական տնտեսություն, շինարարական օբյեկտ) հաշվարկում է իր արտադրանքի ցուցանիշը և ներկայացնում վիճակագրական մարմիններին, որոնք դրանց գումարման միջոցով հանում են ընդհանուր ցուցանիշ։ Այդ դեպքում, երբ այս կամ այն դիտարկման միավորի արտադրանքը ժողովրդատնտեսական իմաստով վերջնական չէ և փոխանցվում է այլ ձեռնարկությունների կամ ճյուղերի հետագա վերամշակման համար, ասենք պողպատաձուլական ձեռնարկության արտադրած պողպատը, որը հանձնվում է մեքենաշինական գործարանին, ապա դրա արժեքը ընդհանուր ինդեքսում կարող է արտացոլվել մեկից ավելի անգամ՝ նախ արտադրանքի արժեքի և ապա հաջորդ ձեռնարկության արտադրանքի հումքի արժեքի ձևով։ Ահա արտադրանքի համախառն արժեքի ցուցանիշում, հիմք ընդունելով կրկնակի հաշվարկի հնարավորությունը, Հոջմենը գտնում է, որ արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերի վերաբերյալ սովետական վիճակագրության տվյալներն ուռճացված են և փորձում է որոշել այսպես կոչված «զուտ արտադրանքի» կամ նոր ավելացված արժեքի ցուցանիշը։ «Զուտ արժեք» ասելով նա հասկանում է արդյունաբերության ոլորտում արտադրված ազգային եկամտի գումարը։

Հայտարարելով, որ «զուտ արժեքի» ստեղծման հարցում ինքը նկատի է առնում միայն այսպես կոչված ֆակտորալ (արտադրության հետ կապված) ծախսերը, Հոջմենը արժեքի բոլոր բաղադրամասերից (աշխատավարձ, շահույթներից մասհանում պետական բյուջեին, շրջանառության հարկ, մասհանումներ սոցիալական ապահովագրության ֆոնդին և աշխատավարձից այլ մասհանումներ) ընդունում է միայն աշխատավարձը և աշխատավարձից մասհանումները։ Իր ցուցանիշների հաշվարկման համար նա որպես կշիռ ընդունում է 1934 թ. ՍՍՀՄ-ում բանվորներին ու ծառայողներին վճարված աշխատավարձը և դրանից կատարված մասնահանումները, մի կողմ նետելով շահույթը և շրջանառության հարկը, որը նա համարում է ոչ թե սոցիալիստական հասարակության հավելյալ արտադրանքի իրացման միջոց, այլ իրացման ժամանակ գնորդներից կորզված ակցիզ, նույնացնելով այն կապիտալիզմի պայմաններում գոյություն ունեցող անուղղակի հարկերի հետ։

Հոջմենը ստիպված է խոստովանել, որ շահույթը արտադրության ծախսերի և իրացման գնի տարբերությունն է՝ հանած շրջանառության հարկը։ Այսպիսով, նա շահույթը փաստորեն համարում է նոր ստեղծված արժեք կամ զուտ արժեք և, այնուամենայնիվ, այն չի մուծում այդ արժեքի մեջ, պատճառաբանելով, որ անհնար է այն անջատել և ճշգրտորեն որոշել։

Հասկանալի է, որ «զուտ արժեքից» նրա կարևոր բաղադրամասերը հանելուց հետո Հոջմենը պետք է ստանար սովետական արդյունաբերության զարգացման նվազեցված տեմպեր։ Ճիշտ է, նրա հաշվարկած ինդեքսը բարձր է



մյուս սովետոլոգների ստացած ցուցանիշներից, սակայն զգալիորեն ցածր է սովետական տվյալների համեմատությամբ։ Իսկ երբ նա այդ նվազեցված ցուցանիշները համեմատում է ԱՄՆ-ի, Արևմտյան Գերմանիայի, Ճապոնիայի, Ֆրանսիայի, Իտալիայի արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերի հետ (1929—1950 թթ.), ապա ստացվում է, որ նույնիսկ այդ դեպքում սովետական տեմպերը մնում են չգերազանցված։

Կարևորն այն է, որ սովետական վիճակագրության մեջ գործարանային մեթոդը ցուցանիշների հաշվարկման միակ միջոցը չէ։ Ներկայումս նրա կիրառման ոլորտը խիստ սահմանափակ է, և այդ մեթոդով ստացված տվյալներով պարզում են սոսկ տարբեր ձեռնարկությունների միջև եղած տնտեսական կապերը, բայց ոչ արտադրանքի աճի ընդհանուր ցուցանիշները։ Սովետական վիճակագրության մեջ կիրառվում է նաև ժողովրդատնտեսական մեթոդը, որով հաշվարկվում է ազգային եկամուտը։ Այդ մեթոդը ինդեքսից դուրս թողնելով մի ձեռնարկությունից մյուսին և մի ճյուղից մյուսին փոխանցվող արտադրանքի արժեքը, բացառում է կրկնակի հաշվարկը։

Պատահական չէ, որ հենց ազգային եկամտի ցուցանիշներն էլ «քննադատության» թիրախ են դարձրել սովետոլոգիայի «վետերաններ» Ք. Քլարկը, Ա. Բերգսոնը և Ն. Յասնին։ Վերջինս 1951 թ. սկզբին գրում էր. «Համախառն մեթոդը լավագույնն է։ Այն հիմք է ընդունում «արտադրական» սկզբունքը, աստիճանաբար ընդունվում է, բայց ավելի քիչ ուշադրություն է հատկացվում այն փաստին, որ սովետական ազգային եկամուտը կամ զուտ արտադրանքն ավելի է ուռճացված, քան համապատասխան համախառն արտադրանքը»։

Սովետոլոգները լավ են հասկանում, որ եթե կարելի է անտեսել համախառն արժեքի ինդեքսը որպես կրկնակի հաշվարկ պարունակող, ապա ազգային եկամտի ցուցանիշներն արտացոլում են տնտեսության աճի դինամիկայի ճշգրիտ պատկերը։ Ընդ որում, ազգային եկամտի հաշվարկման սովետական մեթոդը լավագույնն է։ Նա հիմք է ընդունում «արտադրական» սկզբունքը, տալով զուտ արտադրանքի զուտ վիճակը։ Մինչդեռ բուրժուական վիճակագրությունը հիմք ընդունելով «բաշխման» սկզբունքը, ազգային եկամուտն ստանում է գումարելով երկրի ամբողջ ինքնագործ բնակչության եկամուտները։ Հաշվի չի առնվում նաև տնտեսության բաժանումն արտադրական և ոչ արտադրական ոլորտների։ Իսկ դա խիստ կարևոր է, որովհետև ազգային եկամուտն ստեղծվում է միայն նյութական արտադրության ոլորտում, իսկ ոչ արտադրական ոլորտում նրա մի մասը ենթարկվում է սոսկ վերաբաշխման։ Այսպիսով, ազգային եկամտի հաշվարկման այդ եղանակը թույլատրում է կրկնակի հաշվարկ, որի հետևանքով ստացվում են ուռճացված տվյալներ։

Ինչ վերաբերում է ՍՍՀՄ ազգային եկամտի աճի տեմպերին, ապա դրանք զգալիորեն ավելի բարձր են ԱՄՆ-ի տեմպերից, որն արդյունք է ամենից առաջ արդյունաբերության առավել արագ զարգացման։ Այսպես, հաշվարկի համադրելի մեթոդիկայով որոշված աճի տարեկան միջին տեմպերը կազմել են (տոկոսներով) (Государственный пятилетний план развития народного хозяйства СССР на 1971—1975 гг., М., 1972, стр. 336)։

| Տարիները | Ազգային եկամուտը | | Կապիտալ ներդրումները | | Արդյունաբերական արտադրանքը | | Աշխատանքի արտ. արդ. մեջ | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | ՍՍՀՄ | ԱՄՆ | ՍՍՀՄ | ԱՄՆ | ՍՍՀՄ | ԱՄՆ | ՍՍՀՄ | ԱՄՆ |
| 1951—1960 | 10,2 | 2,9 | 12,6 | 1,7 | 11,7 | 3,9 | 7,4 | 3,1 |
| 1961—1965 | 6,5 | 4,9 | 6,3 | 5,2 | 8,6 | 6,1 | 4,6 | 4,8 |
| 1966—1970 | 7,8 | 3,0 | 7,6 | 1,9 | 8,5 | 3,6 | 5,8 | 2,2 |

Հետագա տարիներին ևս ՍՍՀՄ աճի տեմպերը բոլոր ցուցանիշներով գերազանցում են ԱՄՆ-ի և մյուս կապիտալիստական երկրների տեմպերին։ Մասնավորապես, եթե 1951 թ. ՍՍՀՄ ազգային եկամուտը կազմում էր ԱՄՆ-ի մակարդակի 31 տոկոսը, ապա 1973 թ. հասավ արդեն 66 տոկոսի (СССР в цифрах в 1973 г., М., 1974, стр. 48)։

Այսպիսով, ազգային եկամտի աճի ցուցանիշները, որպես ճշգրիտ և կրկնակի հաշվարկից զերծ տվյալներ, լավագույն միջոցն են ՍՍՀՄ արդյունաբերության զարգացման տեմպերի հարցում ՍՄԿԿ քաղաքականության նվաճումները գնահատելու համար, մանավանդ որ ՍՍՀՄ ազգային եկամտում արդյունաբերության բաժինը գերակշռող է և, հետևաբար, դրա արտադրանքի ավելացման տեմպերը նույնիսկ ավելի բարձր են ազգային եկամտի աճի ընդհանուր տեմպերից։

Այնուհանդերձ, հակառակ փաստերին, սովետոլոգները շարունակում են իրենց փորձերը։ Փարիզի համալսարանի պրոֆեսոր Ժ. Մարչևսկին փորձում է հերքել սովետական տեմպերի նշանակությունը արդյունաբերության արդյունավետության տեսանկյունից, նախապես հայտարարելով, որ «հակառակ լեգենդի՝ սոցիալիստական երկրներում աճի տեմպերը բարձր չեն կապիտալիստական երկրների աճի տեմպերից»։

Ընդունելով սոցիալիստական տնտեսական մոդելի արտակարգ արդյունավետությունը արմատական կառուցվածքային փոփոխություններ առաջ բերելու գործում (ՍՍՀՄ-ը ագրարային երկրից դարձավ ինդուստրիալ 12 տարում՝ 1928—1940 թթ., Բուլղարիան, Հունգարիան, Ռումինիան՝ 20 տարում՝ 1950—1970 թթ.), Մարչևսկին ստիպված է խոստովանել, որ «շուկայական տնտեսության մեջ այդքան խոր և կտրուկ փոփոխություններ երբեք չէին կարող իրականացվել այդպիսի կարճատև ժամանակամիջոցում»։

Սակայն, ուշադրությունը սևեռելով մարդկանց կարիքները բավարարելու առումով տնտեսության արդյունավետության վրա, Մարչևսկին գտնում է, որ սոցիալիստական և կապիտալիստական տնտեսական սիստեմների դինամիկայի համեմատությունն օրինաչափ կլինի այն ժամանակ, երբ հաշվի առնվեն զարգացման համարժեքային աստիճաններն այն երկրների, որոնք ունեն բնակչության մեկ շնչին ընկնող համեմատելի, եթե ոչ նույնանման, արտադրանք։ Նա մի կողմից, մեղմ ասած, մոռանում է, որ մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով առաջ անցնելու համար այս կամ այն պետությունը նախ պետք է առաջ անցնի իր մրցակցից արտադրանքի բացարձակ չափերով։ Իսկ այս ասպարեզում ՍՍՀՄ-ի նվաճումներն ակնառու են։ Նա առաջ է անցել ԱՄՆ-ից քարածխի, չուգունի, պողպատի, նավթի, երկաթի, մարգանեցի և քրոմի հանքաքարի, կոքսի, մագիստրալային ջերմաքարշերի և էլեկտրաքարշերի, տրակտորների, պոլիմետաղների, ցեմենտի, հանքային պարարտանյութերի, բամբակյա և բրդյա կտորեղենի, շաքարի, կենդանական յուղի և մի քանի այլ արտադրատեսակների թողարկմամբ։ Մարչևսկին անտեսում է նաև, որ դեռ 1960-ական թվականների սկզբին սոցիալիստական երկրները շատ ասպարեզներում մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով արդեն առաջ էին անցել «համապատասխան» կապիտալիստական երկրներից։ Մյուս կողմից ոչ ՍՄԿԿ-ն և ոչ էլ սոցիալիստական համագործակցության այլ երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունները չեն ժխտում, որ մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով սոցիալիստական երկրներն ընդհանուր առմամբ դեռ զիջում են առաջատար կապիտալիստական տերություններին, թեև ոչ այն չափով, ի՜նչ ենթադրում է Մարչևսկին։

Ինչպես տեսնում ենք, հետպատերազմյան տարիների սովետոլոգիան կիրառել և կիրառում է տեմպերի հարցում ՍՄԿԿ քաղաքականության «քննադատության» ամենատարբեր մեթոդներ ու ձևեր, չհասնելով ոչ մի շոշափելի արդյունքի։ Եվ զարմանալի չէ, որ 70-ական թվականների սկզբին սովետոլոգիան սկսեց արդեն իսկական ճգնաժամ ապրել։

Է. Մեյերը 1975 թ. սեպտեմբերին «Ֆորչուն» ամսագրում տպագրած հոդվածում խոստովանում էր, որ սովետոլոգիային սպառնում է վերջնական կործանում, եթե նրան չհաջողվի հարմարվել միջազգային լարվածության թուլացման իրադրությանը և օգուտ կորզել սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավումից, երկու երկրների առևտրատնտեսական և գիտատեխնիկական համագործակցության ընդլայնումից։ Անտարակույս, Մեյերն աշխատում է սովետոլոգիայի ճգնաժամը բացատրել գլխավորապես ոչ թե նրա գաղափարական-քաղաքական դիրքերի սնանկությամբ, այլ ինֆլյացիայով և այդ հողի



վրա ծագած ֆինանսական դժվարություններով։ Ինչպես հայտնի է, ամերիկյան սովետոլոգիական հիմնարկությունները գլխավորապես ֆինանսավորվում են մոնոպոլիաների կողմից։ Սակայն 1976 թ. սկզբից մասնավոր ֆոնդերը պետք է դադարեցնեին դրամական հատկացումները ՍՍՀՄ-ի հետազոտությամբ զբաղվող հիմնարկություններին։

Դրա գլխավոր պատճառն այն է, որ նույնիսկ մեծ բիզնեսը կորցրել է հետաքրքրությունը սովետոլոգիայի նկատմամբ, որովհետև նրա հանձնարարականները և դեղատոմսերը ինքնախաբեության և մոլորությունների աղբյուր են եղել։ Եվ Մեյերը տրտնջում է այն առթիվ, որ այժմ, երբ ՍՍՀՄ-ի հետազոտությունները դառնում են ավելի դժվարին և բարդ խնդիր և դրան հասկանալն այնքան անհրաժեշտ, «սովետական հետազոտությունները... կորցնում են իրենց հնչեղությունը»։

Բայց սովետոլոգիայի ճգնաժամի իսկական պատճառը մենք գտնում ենք Մեյերի այն խոստովանության մեջ, որ ժամանակակից սովետոլոգիան ծնունդ է առել «սառը պատերազմի» բովում, նրա արգասիքն է, և գրեթե ներկայիս բոլոր «ՍՍՀՄ-ի գիտակները» իրենց գործունեությունն սկսել են այն ժամանակ։ Նույնիսկ բիզնեսմենների կարծիքով, սովետոլոգ պրոֆեսոր-տեսաբանները բիզնեսից ոչինչ չհասկացող «պրոֆեսիոնալ սկեպտիկներ են», «սառը պատերազմի» չվերակառուցված կողմնակիցներ, «զայրացած էմիգրանտներ»։

Մեյերը բիզնեսմեններին խորհուրդ է տալիս օգտվել սովետոլոգների ծառայություններից, ՍՍՀՄ-ի հետ գործարար հարաբերություններում օգտագործել նրանց հանձնարարականները, անշուշտ, վճարելով դրա դիմաց, որը հնարավորություն կընձեռի լուծել ֆինանսական պրոբլեմը։ Կոլումբիական համալսարանի կենտրոնի պաշտոնաթող դիրեկտորի կարծիքով տարեկան 2 մլն դոլար է անհրաժեշտ, որպեսզի այդ հիմնարկությունները շարունակեն նոր մասնագետների պատրաստումը և հետազոտական աշխատանքները ակադեմիական պատշաճ մակարդակով։

Սակայն ի՞նչ են ներկայացնում իրենցից սովետոլոգների հանձնարարականները, որոնց մասին խոսում է Մեյերը։ Պարզվում է, որ ներծծված լինելով «սառը պատերազմի» տրամաբանությամբ, դրանք ոչ մի կերպ չեն կարող նպաստել սովետաամերիկյան փոխըմբռնմանը և միջազգային մթնոլորտի բարելավմանը։ Ընդհակառակը, առաջնորդվելով այդ հանձնարարականներով, ԱՄՆ-ի գործարար աշխարհն առհասարակ ոչ մի գործ չպետք է ունենա Սովետական Միության հետ, որպեսզի անտեղի չսպանի իր ժամանակն ու միջոցները։ Այժմ էլ ամերիկյան սովետոլոգների հանձնարարականները ներթափանցված են մարտնչող հակասովետիզմով և շարունակում են խեղաթյուրել սովետական իրականությունը։

Իրոք, դրանք են սովետոլոգիայի ճգնաժամի պատճառները։ Սակայն ճգնաժամը դեռ կործանում չէ։ Սովետոլոգիան, հատկապես ամերիկյան, շարունակում է մնալ հակասովետիզմի և հակակոմունիզմի առաջապահ դիրքում, և պայքարը դրա դեմ մնում է որպես կարևորագույն գաղափարական խնդիր։ «...երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ։

Երկու աշխարհայացքների պայքարում չի կարող տեղ լինել չեզոքության ու կոմպրոմիսների համար։ Այստեղ հարկավոր է քաղաքական բարձր զգոնություն, ակտիվ, օպերատիվ և համոզիչ պրոպագանդիստական աշխատանք, հարկավոր է ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 111)։

Պայքարը սովետոլոգիայի դեմ թելադրված է սոցիալիզմի և կապիտալիզմի գաղափարական հակամարտության անխուսափելիությամբ, հակամարտություն, որն առանձնապես սրվում է միջազգային լարվածության մեղմացման և տարբեր հասարակարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության պայմաններում։

# ՀՈԲԵԼՅԱՆԱԿԱՆ ՏԱՐՎԱՆ՝ ՀԱՐՎԱԾԱՅԻՆ ԱՎԱՐՏ

**Գ. Ա. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ**
Հայկական ՍՍՀ ԿՎՎ-ի պետ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ առաջ բերեց ամբողջ երկրի աշխատավորների քաղաքական ու ստեղծագործական ակտիվության նոր վերելք։ Ներգրավվելով համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ՝ առաջավոր բանվորները, կոլեկտիվները և կազմակերպությունները ստանձնեցին սոցիալիստական բարձր պարտավորություններ, որոնք միտում են արտադրության ռեզերվների, գիտության ու տեխնիկայի նվաճումների լրիվ օգտագործման, «Աշխատել ավելի լավ, բարձրացնել արդյունավետությունն ու որակը» նշանաբանով, ՍՄԿԿ XXV համագումարի բոլոր կանխագծումների իրականացման համար։

Հնգամյակի առաջին տարվա պլանների ու պարտավորությունների կատարման ընթացքում, արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման համար ծավալված մրցությունում երկրի աշխատանքային շատ կոլեկտիվներ դրական փորձ կուտակեցին։ Գնահատելով կուտակված փորձի հասարակական նշանակությունը՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումում արտասանած ճառում նշեց. «Արդյունավետության և որակի համար պայքարը նշանակում է, որ յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն պետք է ըստ ամենայնի խրախուսի ու տարածի իրոք գործնական և օգտակար նախաձեռնությունները, վճռականորեն վերացնի այն ամենը, ինչը խանգարում է ստեղծագործական մտքի բաբախյունին, նորարարությանը, խանգարում մեր առաջընթացին»։

Սոցիալիստական մրցությունն ավելի խոր բովանդակություն ստացավ և արդյունավետ ձևերով դրսևորվեց 1977 թվականին՝ ի նշանավորումն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի։ Մրցության ստեղծագործական բնույթը և ուժը երևան եկան ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման համար մղվող պայքարի ամենապատասխանատու և վճռական տեղամասերում։

Աշխատանքային մրցակցության թափը ծնեց հայրենասիրական նոր նախաձեռնություններ։ Դրա հաստատումը եղավ ժողովրդական տնտեսության զարգացման 1976 թ. և 1977 թ. 11 ամսվա պլանների անթերի կատարումը։ Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները հաջողությամբ կատարում են արտադրանքի արտադրության ու իրացման, աշխատանքի արտադրողականության աճի, արտադրատեսակների մեծ մասի թողարկման, ինքնարժեքի իջեցման և տեխնիկատնտեսական այլ ցուցանիշների պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։ Մրցության մեջ լավագույն արդյունքների են հասել թեթև, անտառային ու փայտամշակման, տեղական արդյունաբերության մինիստրությունների, էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի, հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության միութենական մինիստրությունների ձեռնարկությունների կոլեկտիվները։ Արտադրական խնդիրները հաջողությամբ են լուծում գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի, կապի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողները։

Անցած տարվա և ընթացիկ տարվա ինն ամիսների ժողովրդատնտեսական պլանների կատարման գործում ձեռք բերված հաջողությունները կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական, քաղաքական ու դաստիարակչական մեծ աշխատանքի արդյունք են։ ՍՍՀՄ նոր Սահմանադրության 6-րդ հոդվածում ասված է. «Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է»։ Ելնելով այն գլխավոր դրույթից, որ ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին, կուսակցական կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում արտադրության կազմակերպմանը, շարունակ կատարելագործում են սոցիալիստական մրցության ղեկավարումը, իրականացնում նրա կազմակերպման լենինյան սկզբունքները՝ մասսայականությունը, հրապարակայնությունը, արդյունքների համեմատությունը, ձեռք բերված հաջողությունների գործնական արմատավորումը, բարոյական խրախուսման միջոցների կիրառման ճշտությունը։ Օգտագործելով մրցության ղեկավարման բազմազան ձևեր, հենվելով կոմունիստների անձնական օրինակի վրա, հանրապետության կուսակցական կազմակերպությունները մոբիլիզացնում են կոլեկտիվների ուժերը՝ առաջադրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Սոցիալիստական մրցության արդյունավետությունը բնութագրվում է նաև նրանով, որ դրա ընթացքում ծնունդ են առել արժեքավոր շատ նախաձեռնություններ, որոնք ուղղված էին տասներորդ հնգամյակի պլանների ժամկետից շուտ կատարմանը և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի արժանավայել դիմավորմանը։ Այսպես, Հայէլեկտրագործարանի գործիքաշինական արտադրամասը, որ ղեկավարում է սոցիալիստական աշխատանքի հերոս Ռոլանդ Մովսիսյանը, հանդես եկավ «60 հարվածային շաբաթ՝ մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին» կոչով։ Հանրապետության ձեռնարկությունների բրիգադների, տեղամասերի, հերթափոխերի և արտադրամասերի մոտ 9 հազար կոլեկտիվներ հետևեցին այդ նախաձեռնությանը։ Մրցությունն ընդգրկում էր ավելի քան 280 հազար բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների ու ծառայողների։ Ալյումինի գործարանի գլանողների բրիգադը, որը ղեկավարում է Վ. Պետրոսյանը, հանդես եկավ «Հնգամյակի երկու տարվա առաջադրանքը՝ 1977 թվականի նոյեմբերի 7-ին» նախաձեռնությամբ։ Այդ նախաձեռնությունը ևս պաշտպանեցին շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ։ Ջարենցավանի «Կենտրոնական ձուլարան» գործարանի կուսակցական կազմակերպությունը պաշտպանեց աշխատաժամանակը տնտեսելու վերաբերյալ բարձր հաճախականության տրանսֆորմատորների տեղամասի աշխատողների նախաձեռնությունը։ Նրանց նշանաբանն էր՝ «Աշխատաժամանակի ոչ մի րոպեի կորուստ»։ Ընթացիկ տարվա անցած ինն ամսում այդ տեղամասում փաստորեն չեն եղել բանվորների աշխատանքից ուշանալու կամ պարապուրդների դեպքեր։ Այդ նախաձեռնությունը պաշտպանեցին մյուս արտադրամասերի և հարակից ձեռնարկությունների կոլեկտիվները։

Սոցիալիստական մրցության մասնակիցներն իրենց ուշադրությունը սևեռում են որակական ցուցանիշների լավացման վրա։ Այդ առումով ուսանելի փորձ կա Երևանի էլեկտրասարքերի գործարանում։ Այստեղ, կոմունիստների նախաձեռնությամբ, ձեռնարկության կոլեկտիվը պայքարում է միայն գերազանց որակի արտադրանք թողարկելու համար։ Որակի բարձրացման համար շարժումը լայն արձագանք գտավ ու տարածվեց հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների և արտադրական բնույթի կազմակերպությունների շատ կոլեկտիվներում։ Այդ պայքարի շնորհիվ ընթացիկ տարվա առաջին կիսամյակում պետական որականիշ է շնորհվել 215 արտադրատեսա-

կի, որականիշ ունեցող արտադրատեսակների ընդհանուր քանակը, հոկտեմբերի 1-ի դրությամբ, հասավ 1.065-ի՝ 1976 թվականի 788-ի դիմաց: Ընդ որում, պատրաստի արտադրատեսակների թվում որականիշ ունեցող արտադրանքի տեսակարար կշիռը կազմեց 11,5 տոկոս, իսկ շատ ձեռնարկություններում այդ տոկոսը ավելի բարձր է:

1977 թ. աշխատանքային հաջող մեկնարկ վերցրին ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունները: Լենինականի Մայիսյան ապստամբության անվան բամբակեղենի արտադրական միավորման նախաձեռնությամբ սոցիալիստական մրցություն է ծավալվել «Համագործակցություն՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերազանց որակի արտադրանքի թողարկման, սարքավորումների մեկ միավորից առավելագույն արտադրանքի ստացման համար» լոզունգով: Այդ հայրենասիրական շարժման մեջ արդեն ընդգրկված է ավելի քան 100 հազար մարդ: Կոշիկի «Մասիս» միավորման կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ կազմակերպվել է մրցություն՝ «Հայաստանի ապրանքներին՝ բարձր որակ» նշանաբանով: Կոլեկտիվները հատկապես արդյունավետ մրցություն են ծավալել «Տասներորդ հնգամյակում՝ երկու հնգամյակի առաջադրանք» լոզունգն իրականացնելու համար: Այդ նախաձեռնությանն այսօր հետևում է մոտ երեք հազար մարդ: Անցյալ տարվա վերջին թեթև արդյունաբերության 100 էնտուզիաստներ զեկուցեցին երկու տարվա առաջադրանքի կատարման մասին: Նրանց թվում էին նաև Լենինականի Մայիսյան ապստամբության անվան արտադրական միավորման 32 առաջավորներ: Երկու տարվա նորմաներ են կատարել Երևանի կոշիկի «Մասիս» միավորման 23 առաջավորներ, ինչպես նաև Երևանի կարի «Գարուն» արտադրական միավորման շատ բանվորուհիներ:

«Տասներորդ հնգամյակին՝ բարձր որակի պտղատու և խաղողի այգիներ» արժեքավոր նախաձեռնությամբ հանդես են եկել Նոյեմբերյանի շրջանի այգեգործները: Դրա հեղինակն էր սովխոզի բրիգադավար Ժ. Մովսիսյանը, որին շնորհվել է ՍՍՀՄ պետական մրցանակ: Այդ նախաձեռնությունը պաշտպանեցին շրջանի մյուս տնտեսությունների կոլեկտիվները:

Հանրապետությունում հետագա հանդիպական պլաններ ընդունելու հիման վրա զարգացել է մրցությունը: 139 արտադրական միավորումների և ձեռնարկությունների կոլեկտիվներ ընդունել են հանդիպական պլաններ՝ 23,7 մլն ռուբլու արտադրանք իրացնելու վերաբերյալ: Հանդիպական պլաններ են ընդունել քիմիական ու թեթև արդյունաբերության, ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունների բոլոր ձեռնարկությունները, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների 91 տոկոսը, գունավոր մետալուրգիայի վարչության ձեռնարկությունների 80 տոկոսը և այլն: Դրա շնորհիվ հանրապետության արդյունաբերությունն ընթացիկ տարվա 11 ամսվա արտադրանքի իրացման պլանը, հաշվի առնելով նաև հանդիպականը, կատարել է 102,6 տոկոսով: Արտադրանքի իրացման առաջադրանքները հաջողությամբ են կատարել «Նաիրիտ» արտադրական միավորումը (101,0 տոկոս), Կիրովականի Ա. Մյասնիկյանի անվան քիմիական գործարանը (103,0 տոկոս), Երևանի նուրբ բրդյա գործվածքների կոմբինատը (102,3 տոկոս), Երևանի «Հայհախճապակի» արտադրական միավորումը (107 տոկոս), Երևանի կարի «Գարուն» արտադրական միավորումը (104,7 տոկոս), Չարենցավանի «Կենտրոնական ձուլարան» գործարանը՝ (103,9 տոկոս) և այլն:

Լայն տարածում է ստացել Ռոստովի մարզի ձեռնարկությունների կոլեկտիվների կոչը՝ «Աշխատել առանց ետ մնացողների, արդյունավետ, բարձր որակով»: Կուսակցական մարմինների ղեկավարությամբ այդ նախաձեռնությունը լայն պաշտպանություն գտավ Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի, կապի, շինարարության և բնակչության սպասարկման ոլորտի կոլեկտիվների կողմից: 1976 թ. և 1977 թ. ինն ամիսների արդյունքներով, ցինկապատ ամանեղենի, մաքուր երկաթի արտադրության փորձնական դեկորատիվ գործվածքների գործարանների և տրիկոտաժի ֆաբրիկայից բացի, Երևան քաղաքի բոլոր արդյունաբերական ձեռնարկությունները հիմնականում կատարել են այդ պարտավորությունները: Այդ նախաձեռ-



նությունը հաջողությամբ արմատավորվել է Կիրովական և Լենինական քա-
ղաքների ձեռնարկություններում և լավ արդյունքի հասցրել գրեթե բոլոր կոլեկ-
տիվներին:

Մեր հանրապետությունում լայն արձագանք գտավ զլոբինյան առաջավոր
մեթոդը: Շինարարական կազմակերպությունների ավելի քան 530 բրիգադներ
կամ դրանց ընդհանուր թվի մոտ 25 տոկոսը գործում է սոցիալիստական
աշխատանքի հերոս Ի. Զլոբինի բրիգադային կապալի մեթոդով: Շինարարա-
կան աշխատանքի կազմակերպման այդ առաջավոր մեթոդը մեծապես նպաս-
տում է շինարարության ժամկետների կրճատմանը, շինանյութերի տնտեսմանը
և որակի բարելավմանը:

Դեռ վաթսունական թվականներին ծնունդ առավ Անդրկովկասի եղբայրա-
կան հանրապետությունների միջև սոցիալիստական պայմանագրեր կնքելու
հայրենասիրական ինտերնացիոնալ նախաձեռնությունը: Այդ մրցությունն ըն-
դարձակեց իր շրջանակները և ներառավ Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի
համասեռ շատ կոլեկտիվների՝ բրիգադների, արտադրամասերի, ֆերմաների,
ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների: Բարեկամական
մրցության արդյունքների ամենամյա ամփոփումները ցուցադրում են այն մեծ
նվաճումները, որ ձեռք են բերում մեր երկրի եղբայրական հանրապետություն-
ների ժողովուրդները:

Փորձը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր կուսակցական կազմակերպու-
թյունները մշտապես ու արդյունավետ կերպով գլխավորում են սոցիալիստա-
կան մրցությունը, ուր նրանք պաշտպանում են կոլեկտիվների, բանվորների,
կոլտնտեսականների, գիտական աշխատողների բոլոր նոր ձեռնարկումները,
ստեղծագործական նախաձեռնությունը, ուր աշխատանքի հիմքում դրված են
տեխնիկական առաջադիմությունը, նորն ու առաջավորը, այնտեղ առկա են
էական հաջողությունները պետական առաջադրանքների կատարման ու գերա-
կատարման գործում: «Մենք ամենքս ուրախանում ենք,— կուսակցության XXV
համագումարի ամբիոնից ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի.
Բրեժնևը,— թե ինչպիսի խոր արմատներ են արձակել սոցիալիստական մրցու-
թյան լենինյան գաղափարները: Մենք հպարտանում ենք, որ մրցության ավան-
գարդում ընթանում են կոմունիստները: Մրցությունը խոր ազդեցություն է գոր-
ծում տնտեսական պրակտիկայի վրա, երկրի հասարակական-քաղաքական
կյանքի վրա, բարոյական մթնոլորտի վրա: Այսուհետև ևս համակողմանիորեն
զարգացնել սոցիալիստական մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմու-
նիստական վերաբերմունքի շարժումը՝ այսպիսին է մեր ընդհանուր մարտա-
կան լոզունգը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 115): Կուսկազմակեր-
պությունների այս դրույթներն ու պահանջները համարում են ամենօրյա գործո-
ղության ուղեցույց և առավել խելամտորեն են զբաղվում սոցիալիստական
մրցության կազմակերպման ու ծավալման հարցերով:

Սոցիալիստական մրցության ծավալման ընթացքում աշխատավորների
շրջանում կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների կա-
տարած դաստիարակչական և կազմակերպչական գործունեության շնորհիվ
մեծ Հոկտեմբերի հոբելյանի նախաշեմին հանրապետության կոլեկտիվները
զգալի հաջողություններ ձեռք բերեցին արդյունաբերության, գյուղատնտեսու-
թյան բնագավառում, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում: Համա-
խառն արտադրանքի թողարկման ընթացիկ տարվա 11 ամսվա պլանը կա-
տարվել է 102,7 տոկոսով, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմա-
տությամբ աճը կազմել է 7,9 տոկոս, պլանով սահմանված 6,1 տոկոսի դիմաց:
Ընդ որում, արտադրանքի իրացման պլանը կատարվել է 102,4 տոկոսով, իսկ
աճը կազմել 7,3 տոկոս, աշխատանքի արտադրողականության բարձրացման
պլանի կատարողականը հասել է 101,9, աճը՝ 3,9 տոկոսի, սոցիալիստական
պարտավորության 3,5 տոկոսի դիմաց: Աշխատանքի արտադրողականության
բարձրացման հաշվին ստացվել է արդյունաբերական արտադրանքի աճի ավելի
քան 50 տոկոսը: Սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ են
կատարում երկաթուղային, ավտոմոբիլային և օդային տրանսպորտի կոլեկ-
տիվները: Սոցիալիստական մրցության ծավալման ընթացքում լավ արդյունքի

ների, ավտոբեռնիչների, սարքերի, ավտոմատացման միջոցների ու դրանց պահեստամասերի, կենցաղային սառնարանների, էլեկտրահարդուկների, բոլոր տեսակի կենցաղային ժամացույցների վերաբերյալ և այլն։ Բարձրացել է ժողովրդական սպառման ապրանքների խոտանված արտադրանքի— ոչ-ալկոհոլային խմիչքների, հանքային ջրերի, տնտեսական օճառի, բոլոր տեսակի պանիրների, մսի, թռչունի և կաշվե գալանտերեային առարկաների, գորգերի տոկոսը։ Ամենից ավելի մեծ քանակությամբ բողոքարկներ են ստացել Կիրովականի «Ավտոմատիկա», Երևանի էլեկտրատեխնիկական, Լենինականի հղկող հաստոցների գործարանները, Երևանի «Սևան» և «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորումները և այլ ձեռնարկություններ։

Մի շարք ձեռնարկություններում դեռևս թույլ են պայքարում աշխատանքային կարգապահության ամրապնդման ու աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, կադրերի հոսունության դեմ։ Բավական է ասել, որ միայն 1976 թ. աշխատաժամանակի կորուստները հանրապետության արդյունաբերության մեջ կազմել են ամբողջ աշխատաժամանակի զգալի տոկոսը և այդ պատճառով պակաս է թողարկվել ավելի քան 48 մլն ռուբլու արտադրանք։ Այդ թերությունները չեն վերացվել նաև 1977 թվականին։ Միայն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ամբողջ աշխատանքային օրվա և ներհերթափոխային պարապուրդների, գործալքումների, ադմինիստրացիայի թույլտվությամբ աշխատանքի դուրս չգալու պատճառներով տեղի ունեցած աշխատաժամանակի կորուստների հետևանքով պակաս է տրվել միլիոնավոր ռուբլու արտադրանք։ Եվ դա զգալիորեն իջեցրել է հանրապետության արդյունաբերության կողմից արտադրական պլանի կատարման տոկոսը և աճի տեմպը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում եղած թերությունները վկայում են, որ հանրապետության մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններ պատշաճ նշանակություն չեն տալիս կոլեկտիվներում տարվող բացատրական աշխատանքին, հանձնարարված գործի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքի, կատարվող աշխատանքների որակի համար բարձր պատասխանատվության ոգով աշխատավորների դաստիարակությանը։

Սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում թերություններ կան նաև շինարարության մեջ, տրանսպորտում, բնակչության կենցաղային սպասարկման բնագավառում, առևտրում և այլն։ Շինարարական հիմնարկ-ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները չեն ապահովում կապիտալ շինարարության պլանների կատարման համար ծավալված սոցիալիստական մրցության անհրաժեշտ ղեկավարությունը, պատշաճ վերահսկողություն չեն իրականացնում հիմնական արտադրական ֆոնդերի ժամանակին գործարկման համար ադմինիստրացիայի ծավալած գործունեության և շինարարական-մոնտաժային աշխատանքի պլանների ժամանակին կատարման նկատմամբ։ Այդ ամենի հետևանքով հիմնական ֆոնդերի գործարկման ընթացիկ տարվա 11 ամսվա պլանը կատարվել է ընդամենը 38,5 տոկոսով, կենտրոնացված կապիտալ ներդրումներինը՝ 87,6 և շինարարական-մոնտաժային աշխատանքներինը՝ 94 տոկոսով։ Անհրաժեշտ է նշել, որ տարիներ շարունակ հանրապետությունում անբավարար են իրացվում կապիտալ ներդրումները. հիմնական ֆոնդերի գործարկման պլանն ամեն տարի կատարվում է 75 տոկոսից ոչ ավելի։

Ստանձնած պարտավորությունները չեն կատարվում նաև արտադրական կարողությունների գործարկման բնագավառում։ Այսպես, «Հայէներգոշին» վարչությունը պարտավորվել էր ժամկետից շուտ շահագործման հանձնել Շամբի ՀԷԿ-ի կարողությունները, սակայն ինն ամսում տարեկան պլանը կատարել էր միայն 78,1 տոկոսով։ «Արփա—Սևան» վարչությունը պետք է մինչև նոյեմբերի 7-ը ապահովեր Կեչուտի ամբարտակի շահագործման հանձնումը, մինչդեռ պլանի կատարողականը ինն ամսում կազմել է ընդամենը 39,8 տոկոս։ Կարողությունների գործարկումը չի ապահովվել «Նաիրիտ» արտադրական միավորումում, Երևանի ավտոդողերի, ավտոմոբիլի գործարաններում, էջ-



միածնի երկաթբետոնե առարկաների, Մասիսի ատաղձագործական առարկաների կոմբինատներում և այլն։

Անբավարար է բնակարանային (տարեկան պլանը կատարվել է 89,1 տոկոսով), հանրակրթական դպրոցների (59 տոկոսով) և նախադպրոցական հիմնարկությունների (28,2 տոկոսով) շինարարության վիճակը։ Դեռևս պատահում են այնպիսի ղեկավարներ, որոնք սխալ են հասկանում կուսակցական մարմինների դերը սոցիալիստական մրցության գործում, կարծում են, թե դա միայն արհմիութենական կազմակերպությունների գործն է։ Ավելին, առանձին դեպքերում նրանք կուսակցական պահանջկոտություն չեն ցուցաբերում «Խոսք ես տվել՝ կատարիր» նշանաբանի ապահովման նկատմամբ։ Թեթև արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները չեն կատարել իրենց խոստումը և պարտավորությունները բամբակեղենի գործվածքների, գորգերի և գորգագործական առարկաների արտադրության բնագավառում, սննդի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ շամպայն գինիների, մակարոնեղենի, հանքային ջրերի, շինանյութերի արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները՝ տուֆի, սանտեխնիկական առարկաների, երկաթբետոնի, մթերումների մինիստրության ձեռնարկությունները՝ ալյուրի, համակցված կերերի, ձավարի և այլ մթերքների արտադրության բնագավառում։

Ինչպես տեսնում ենք, սոցիալիստական մրցության կազմակերպման և պետական պլանների կատարման գործում կան բավականաչափ թերություններ։ Սա ցույց է տալիս, որ մրցության ընթացքում ի հայտ են գալիս ոչ միայն առաջավորներն ու հաղթողները, այլև ետ մնացողները։ Մրցությունը դրանով իսկ օգնում է կուսակցական մարմիններին՝ ուժերը կենտրոնացնել թերությունները վերացնելու, ետ մնացող տեղամասերը առաջավորներին հասցնելու և եղած ռեզերվները լիովին օգտագործելու համար։ Իսկ այդ ամենի նպատակն է է՛լ ավելի արագացնել ժողովրդական տնտեսության ճյուղերի զարգացման տեմպերը։ Կուսակցական կազմակերպությունների կատարած հետևողական աշխատանքը հուսալի արգելապատնեշ է դնում ձևապաշտության, կազյոնչչինայի, ցուցամոլության, այն ամենի առջև, որոնց դեմ ամենավճռական պայքար են մղում կոմունիստները։

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարում ասաց. «Մրցության քաղաքական հստակ ուղղվածությունը հատկապես ցայտունորեն է դրսևորվում աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման մեջ։ Այդ շարժմանը մասնակցում են տասնյակ միլիոնավոր մարդիկ»։ Այդ դրական երևույթը նկատելի է նաև մեր հանրապետությունում։ Մեզ մոտ սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են ավելի քան 800 հազար բանվորներ ու ծառայողներ և մոտ 100 հազար կոլտնտեսականներ։ Համաժողովրդական հայրենասիրական այդ շարժումն ընդգրկել է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը։ Արդյունավետության և որակի համար մղվող պայքարի գաղափարը միս ու արյուն է դարձել ամեն մի աշխատողի մեջ՝ լինի նա բանվոր, կոլտնտեսական թե մտավորական։

# ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

**Ա. Գ. ԱՂԱԲԱԲՈՎ**
Հայկական ՍՍՀ պետպլանի գիտության ու տեխնիկայի բաժնի վարիչ

ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի որոշման մեջ ասված է, որ «Հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կոմունիստական կուսակցության կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 178)։

Տասներորդ հնգամյակում երկրի տնտեսական զարգացման ընդհանուր ընթացքը նախորդ հնգամյակի շարունակությունն է, առաջընթաց մի քայլ սոցիալիստական հասարակության անդամների նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման մարզում։

Այդ խնդրի հաջող լուծման կարևոր պայման են արտադրության զարգացման ինտենսիվացումը, արտադրական ռեսուրսների ռացիոնալ ու արդյունավետ յուրացումն ու օգտագործումը։

Երկրի ժողովրդական տնտեսության պլանավորման պրակտիկայում, ՍՍՀՄ պետպլանի մեթոդական ցուցումներին համապատասխան, հանրային արտադրության տնտեսական արդյունավետությունը պլանավորվում է ոչ թե ըստ մեկ, այլ ըստ ցուցանիշների համակարգի, քանի որ հանրային արտադրության արդյունավետությունը պայմանավորված է մի շարք գործոններով, և միայն ցուցանիշների համակարգի միջոցով է հնարավոր ճիշտ հետևությունների հանգել արդյունավետության մակարդակի վերաբերյալ։

Աշխատանքային, նյութական ու ֆինանսական միջոցների առավել նպատակահարմար օգտագործումը բնորոշող յուրաքանչյուր ցուցանիշի բարելավումը հանրային արտադրության արդյունավետության աճի դրսևորումն է։ Այդպիսի ցուցանիշներ են, ամենից առաջ, կենդանի աշխատանքի արտադրողականությունը, նյութատարությունը, ֆոնդահատույցը, շահավետությունը և մի շարք այլ գործոններ։ Արտադրության արդյունավետությունը բնորոշվում է նաև այնպիսի հատուկ ցուցանիշներով, ինչպիսիք են՝ հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի տեսակարար ծախսումները, աշխատանքի հերթափոխայնության գործակիցը և այլն։

Ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակի պլանում նախատեսված է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 29,2 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի արտադրության աճի մոտ 67, գյուղատնտեսական արտադրանքի աճի 97 տոկոսը և շինմոնտաժային աշխատանքների ողջ աճը ձեռք կբերվի աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով։ Այդպիսով, կստացվի ազգային եկամտի աճի $^{3}/_{4}$-ը։



Աշխատանքի արտադրողականության աճի վերոհիշյալ ցուցանիշներին հասնելու համար, առաջին հերթին, անհրաժեշտ է արտադրության մեջ արագ արմատավորել գիտության և տեխնիկայի նվաճումները, բարձրացնել աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը։ Այդ նշանակում է, ամենից առաջ, հիմնարար հետազոտությունների հետագա զարգացում, ինչպես և կիրառական հետազոտությունների, նախագծակոնստրուկտորական աշխատանքների և արտադրության մերձեցում ու ինտեգրացում։

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել գիտության ու տեխնիկայի զարգացման, արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արմատավորման ասպարեզում։ Աճել է հանրապետության գիտական պոտենցիալը։ Այդ տարիներին կազմակերպվել են 17 նոր գիտահետազոտական հիմնարկություններ և հաշվիչ կենտրոններ, այդ թվում՝ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի մաթեմատիկայի և մեխանիկայի ինստիտուտները, ռադիոֆիզիկական չափումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը և այլն։

Հանրապետության գիտական հիմնարկություններում գիտական աշխատողների թիվն ավելացել է երեք հազարով և այժմ այն հասնում է 18 հազարի, որոնցից 650-ը գիտությունների դոկտորներ են, 5.000-ը՝ թեկնածուներ։

Հետազոտություններ են ծավալվել հատկապես այնպիսի հիմնարար գիտությունների ասպարեզում, ինչպես՝ աստրոֆիզիկան, մաթեմատիկան, մեխանիկան, կարծր մարմինների ֆիզիկան, քիմիան, երկրաբանությունը, սեյսմոլոգիան և այլն։

Որոշակի են հաջողությունները նաև կիրառական հետազոտությունների ոլորտում։ Այսպես, գյուղատնտեսության ասպարեզում կատարվել են հետազոտություններ և կազմվել խոշոր մասշտաբների հողային քարտեզներ՝ առանձին տնտեսությունների և հանրապետության համար, բուծվել են նոր, բարձր բերքատու բանջարանոցային կուլտուրաներ, արմատավորված է ուլտրամանուշակագույն ճառագայթների օգտագործումը հավերի ձվատվության բարձրացման, ճտերի քաշի ավելացման նպատակով...

Շինարարության ասպարեզում մշակված և արմատավորված են շարժական մեծածավալ կաղապարամածների և հարկերի բարձրացման մեթոդով կառուցվող տների նախագծեր, մշակվում են հավաքովի ձուլածո կարկասային շենքերի ճարտարապետական-պլանավորման լավագույն լուծումներ։

Արմատավորված են ավտոմատ կառավարման 13 համակարգերի առաջին հերթերը, որոնցից 3-ը՝ միջգերատեսչական։ Կազմակերպված են 11 նոր հաշվիչ կենտրոններ, իսկ էլեկտրոնային-հաշվիչ մեքենաների թիվը գրեթե կրկնապատկվել է։ Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են տեխնիկական մոտ 2.400 նոր կարևորագույն միջոցառումներ, որոնցից 400-ը՝ արդյունաբերական արտադրանքների նոր տեսակների իրացման, 770-ը՝ առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, ավելի քան 600-ը՝ արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման նպատակով։

1976 թվականի սկզբին հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում գործարկվում էին 1.070 մեքենայացված հարահոս և 140 ավտոմատ գծեր, կոմպլեքսային մեքենայացված 115 տեղամասեր և 109 արտադրամասեր, ավտոմատացված 17 տեղամասեր և 23 արտադրամասեր, կոմպլեքսային ավտոմատացված 4 տեղամասեր և 6 արտադրամասեր, կոմպլեքսային մեքենայացված ու ավտոմատացված 25 ձեռնարկություններ։

Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման միջոցների արմատավորմամբ գունավոր մետաղագործության հիմնական արտադրությունում աշխատանքների մեքենայացման մակարդակը 1970-ի 57-ից հասել է 63,1 տոկոսի, 1975 թ. շինանյութերի արդյունաբերությունում, համապատասխանաբար՝ 54-ից 65 տոկոսի, թեթև արդյունաբերությունում՝ 65-ից 68,3-ի, սննդի՝ 47-ից 61,5-ի, փայտամշակման՝ 44-ից 57,9-ի, տեղական արդյունաբերությունում՝ 48-ից 57,4 տոկոսի։

Նշված ժամանակաշրջանում հարաբերականորեն ազատվել են մոտ 18 հա-

զար աշխատողներ։ Նոր տեխնիկայի արմատավորման նպատակով գործադրված միջոցառումների շնորհիվ 1975 թ. տնտեսվել է մոտ 32 մլն ռուբլի։

Տեխնիկական առաջընթացի զարգացման գործում մեծ է գյուտարարների ու ռացիոնալիզատորների ավանդը. նրանք ներդրել են 83 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն. գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումից տարեկան տնտեսվել է, միջին հաշվով, 32 մլն ռուբլի։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական միջոցն է, որը հանրապետության զարգացման տնտեսական ու սոցիալական պրոբլեմների լուծման անհրաժեշտ պայմանն է։

Տասներորդ հնգամյակում նոր խնդիրներ են ծառացել հանրապետության գիտնականների առջև, որոնց լուծման համար անհրաժեշտ են գիտատեխնիկական առաջընթացի պլանավորման նոր, ավելի կատարելագործված մեթոդներ։

Դրանց մշակման ու արմատավորման նպատակով նախատեսվում են ոչ թե տարանջատ միջոցառումներ, այլ գիտատեխնիկական պրոբլեմների լուծման կոմպլեքս ծրագիր։ Նախատեսվում է Հայկական ՍՍՀ պետպլանի կողմից պլանավորվող կազմակերպություններում ընթացիկ հնգամյակում ուսումնասիրել մոտ 140 գիտական պրոբլեմներ ու 270 թեմաներ, ընդ որում, 190-ը մշակել մինչև 1980 թվականը։

Ելնելով ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. պետական պլանով նախատեսված գիտատեխնիկական ծրագրերի հիմնական առաջադրանքներից՝ հանրապետության գիտական հաստատություններն ակտիվ կմասնակցեն համապատասխան գիտական պրոբլեմների մշակմանը, պրոբլեմներ, որոնց վրա կատարվող ծախսերի տեսակարար կշիռը կկազմի դրանց ընդհանուր ծավալի մոտ 35 տոկոսը։ Նախատեսվում է հանրապետության գիտական հաստատություններում ուսումնասիրել գիտատեխնիկական մի շարք կարևորագույն պրոբլեմներ, մասնավորապես՝

**հասարակական գիտությունների ասպարեզում**— հանրային արտադրության արդյունավետության ու ինտենսիվացման բարձրացման, ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման կատարելագործման, ինչպես և հանրապետությունում սոցիալ-տնտեսական պրոցեսների կանխատեսման հարցեր.

**ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ասպարեզում**— փոշենյութային քվանտային արագացուցիչների ռադիոաստղագիտության և տիեզերական կապերի համար օգտագործվող գերզգայուն ռադիոընդունիչ սարքերի պատրաստման հարցեր.

**կարծր մարմինների ֆիզիկայի ասպարեզում**— քվանտային էլեկտրոնիկայի համար անհրաժեշտ առկա տեխնիկական արժեքավոր բյուրեղների և նորերի ստացման տեխնոլոգիայի կատարելագործման պրոբլեմներ.

**քիմիա-տեխնոլոգիական գիտությունների ասպարեզում**— գործնական արժեքավոր հատկություններով օժտված պոլիմերային հումքերի ու նյութերի (էլեկտրամեկուսիչ հումքեր, լաքաներկային ծածկույթներ, հոտավետ նյութեր և այլն) ստացման համար անհրաժեշտ միացությունների սինթեզի հետ կապված հարցեր. հանքահումքի մի քանի տեսակների կոմպլեքսային վերամշակման տեխնոլոգիայի կատարելագործման հարցեր. դժվարահալ նյութերի ստացման նպատակով խտացման փուլում, ինքնատարածուն, գերջերմային սինթեզի ռեժիմի պայմաններում անօրգանական նյութերի այրման մեխանիզմի ուսումնասիրություն.

**հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության ձեռնարկությունների համար** ուսումնասիրություններ կկատարվեն հաստոցների ճշգրտությունը, հուսալիությունն ու երկարակեցությունը բարձրացնելու, մրրկապտտենահան հաստոցների ստեղծման, թվածրագրային կառավարման հաստոցների տեխնոլոգիական պրոցեսների մշակման ու արմատավորման նպատակով.



**էլեկտրոնային արդյունաբերության ձեռնարկությունների համար** կհետազոտվեն երրորդ և չորրորդ սերնդի միջին և փոքր հզորության՝ էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ինչպես և ներքին հիշողության հարմարանքների ստեղծման ուղիները.

**էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունների համար** կմշակվեն մինչև 100 կվտ հզորությամբ, 400 հերց հաճախականությամբ ունիֆիկացված գեներատորներ. I և II գաբարիտի կոմպակտ տրանսֆորմատորներ՝ ձուլածո մեկուսիչ ունեցող տրանսֆորմատորների բազայի վրա գերարագ բարձր հաճախականության ասինխրոն շարժիչներ՝ մոտորանվավոր մեքենաների 200 կիլովատանոց գազատուրբինային ագրեգատների քարշող էլեկտրահաղորդալարերի համար.

**շինանյութերի արդյունաբերության մեջ**— պեռլիտի կոմպլեքսային վերամշակման հարցեր, փքուն պեռլիտից ապակեհումք, ֆիլտրող փոշիներ և այլ նյութեր, ինչպես և ջերմամեկուսիչ ու ակուստիկ սալիկներ ստանալու նպատակով. հարահոս գծերում, հիմնական տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացմամբ, բնական քարից երեսպատման սալիկների արտադրության տեխնոլոգիայի մշակման հարցեր։

Գիտական հիմնարկությունների աշխատանքի հաջողությունները մեծ չափով պայմանավորված են նրանով, թե դրանց ղեկավարներն ինչպե՛ս կվերաբերվեն ու կլուծեն դրանց աշխատանքի արդյունավետության բարձրացման հարցերը։

Թերևս, կիրառական բնույթի գիտական հիմնարկություններում, գիտահետազոտական աշխատանքների վրա կատարված ծախսերի արդյունավետությունը վերլուծելիս, դրանց գործունեության գլխավոր չափանիշը պետք է լինի ավարտուն մշակումների արմատավորումը արտադրության մեջ, հանգամանք, որը նաև նորույթի ու գիտական մշակումների պատենտունակության անհրաժեշտ պայմանն է լիցենզիաների հետագա վաճառքի համար, իսկ այդ հնարավոր կլինի միայն գիտատեխնիկական ինֆորմացիայի ծառայության պատշաճ կազմակերպման դեպքում։

Գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացման համար մեծ նշանակություն ունեն գիտական խդեաների ընտրության հարցերը, որոնք նման պրոբլեմներ լուծելիս ամենից առաջ պետք է ծրագրային-նպատակային բնույթ կրեն։

Գիտության արդյունավետությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է, որ հանրապետության մինիստրություններն ու գերատեսչությունները գիտական հիմնարկությունների, նախագծակոնստրուկտորական կազմակերպությունների, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկությունների հետ մեկտեղ մշակեն գիտատեխնիկական պրոբլեմների կոմպլեքսային լուծում և իրացնեն ծրագրանպատակային խնդիրները։

Գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացման նպատակով ընթացիկ հնգամյակում առավել մեծ ուշադրություն կնվիրվի փորձարարական և փորձնական բազաների ստեղծմանը։ Այսպես, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայում նշված նպատակներին հատկացվող ծախսերը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, կավելանան երեք անգամ և կկազմեն մոտ 3 մլն ռուբլի։ Նախատեսվում է բարելավել նաև մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների գիտական հիմնարկությունների փորձարարական և փորձնական բազաները։ Գիտահետազոտական պրոբլեմների կոմպլեքսային լուծման, ինչպես և հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում տեխնիկական առաջընթացի շնորհիվ ընթացիկ հնգամյակում կարմատավորվեն տեխնիկայի ներդրման մի շարք միջոցառումներ։ Այսպես, միայն ժողովրդատնտեսական պլանով նախատեսվում է ներդնել 3.350 կարևորագույն միջոցառում, այդ թվում 300-ը՝ արդյունաբերական արտադրանքի յուրացման, 550-ը՝ արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, 600-ը՝ առաջավոր տեխնոլոգիայի, 520-ը՝ աշխատանքի գիտական կազմակերպման և այլ ոլորտներում։

Լուրջ խնդիրներ են ծառացած հանրապետության մեքենաշինական ձեռ-

# ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

**Ա. Գ. ԱՂԱԲԱԲՈՎ**
Հայկական ՍՍՀ պետպլանի գիտության ու տեխնիկայի բաժնի վարիչ

ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի որոշման մեջ ասված է, որ տասներորդ «Հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ հետևողականորեն իրականացնել ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը բարձրացնելու կոմունիստական կուսակցության կուրսը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 178)։

Տասներորդ հնգամյակում երկրի տնտեսական զարգացման ընդհանուր ընթացքը նախորդ հնգամյակի շարունակությունն է, առաջընթաց մի քայլ սոցիալիստական հասարակության անդամների նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման մարզում։

Այդ խնդրի հաջող լուծման կարևոր պայման են արտադրության զարգացման ինտենսիվացումը, արտադրական ռեսուրսների ռացիոնալ ու արդյունավետ յուրացումն ու օգտագործումը։

Երկրի ժողովրդական տնտեսության պլանավորման պրակտիկայում, ՍՍՀՄ պետպլանի մեթոդական ցուցումներին համապատասխան, հանրային արտադրության տնտեսական արդյունավետությունը պլանավորվում է ոչ թե ըստ մեկ, այլ ըստ ցուցանիշների համակարգի, քանի որ հանրային արտադրության արդյունավետությունը պայմանավորված է մի շարք գործոններով, և միայն ցուցանիշների համակարգի միջոցով է հնարավոր ճիշտ հետևություններ հանգել արդյունավետության մակարդակի վերաբերյալ։

Աշխատանքային, նյութական ու ֆինանսական միջոցների առավել նպատակահարմար օգտագործումը բնորոշող յուրաքանչյուր ցուցանիշի բարելավումը հանրային արտադրության արդյունավետության աճի դրսևորումն է։ Այդպիսի ցուցանիշներ են, ամենից առաջ, կենդանի աշխատանքի արտադրողականությունը, նյութատարությունը, ֆոնդահատույցը, շահավետությունը և մի շարք այլ գործոններ։ Արտադրության արդյունավետությունը բնորոշվում է նաև այնպիսի հատուկ ցուցանիշներով, ինչպիսիք են՝ հումքի, նյութերի, վառելիքի, էներգիայի տեսակարար ծախսումները, աշխատանքի հերթափոխայնության գործակիցը և այլն։

Ժողովրդական տնտեսության զարգացման տասներորդ հնգամյակի պլանում նախատեսված է աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 29,2 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի արտադրության աճի մոտ 67, գյուղատնտեսական արտադրանքի աճի 97 տոկոսը և շինմոնտաժային աշխատանքների ողջ աճը ձեռք կբերվի աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով։ Այդպիսով, կստացվի ազգային եկամտի աճի $^{3}/_{4}$-ը։



Աշխատանքի արտադրողականության աճի վերոհիշյալ ցուցանիշներին հասնելու համար, առաջին հերթին, անհրաժեշտ է արտադրության մեջ արագ արմատավորել գիտության և տեխնիկայի նվաճումները, բարձրացնել աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը։ Այդ նշանակում է, ամենից առաջ, հիմնարար հետազոտությունների հետագա զարգացում, ինչպես և կիրառական հետազոտությունների, նախագծակոնստրուկտորական աշխատանքների և արտադրության մերձեցում ու ինտեգրացում։

Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել գիտության ու տեխնիկայի զարգացման, արտադրության մեջ գիտատեխնիկական նվաճումների արմատավորման ասպարեզում։ Աճել է հանրապետության գիտական պոտենցիալը։ Այդ տարիներին կազմակերպվել են 17 նոր գիտահետազոտական հիմնարկություններ և հաշվիչ կենտրոններ, այդ թվում՝ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի մաթեմատիկայի և մեխանիկայի ինստիտուտները, ռադիոֆիզիկական չափումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտը և այլն։

Հանրապետության գիտական հիմնարկություններում գիտական աշխատողների թիվն ավելացել է երեք հազարով և այժմ այն հասնում է 18 հազարի, որոնցից 650-ը գիտությունների դոկտորներ են, 5.000-ը՝ թեկնածուներ։

Հետազոտություններ են ծավալվել հատկապես այնպիսի հիմնարար գիտությունների ասպարեզում, ինչպես՝ աստրոֆիզիկան, մաթեմատիկան, մեխանիկան, կարծր մարմինների ֆիզիկան, քիմիան, երկրաբանությունը, սեյսմոլոգիան և այլն։

Որոշակի են հաջողությունները նաև կիրառական հետազոտությունների ոլորտում։ Այսպես, գյուղատնտեսության ասպարեզում կատարվել են հետազոտություններ և կազմվել խոշոր մասշտաբների հողային քարտեզներ՝ առանձին տնտեսությունների և հանրապետության համար, բուծվել են նոր, բարձր բերքատու բանջարանոցային կուլտուրաներ, արմատավորված է ուլտրամանուշակագույն ճառագայթների օգտագործումը հավերի ձվատվության բարձրացման, ճտերի քաշի ավելացման նպատակով...

Շինարարության ասպարեզում մշակված և արմատավորված են շարժական մեծածավալ կաղապարամածների և հարկերի բարձրացման մեթոդով կառուցվող տների նախագծեր, մշակվում են հավաքովի ձուլածո կարկասային շենքերի ճարտարապետական-պլանավորման լավագույն լուծումներ։

Արմատավորված են ավտոմատ կառավարման 13 համակարգերի առաջին հերթերը, որոնցից 3-ը՝ միջգերատեսչական։ Կազմակերպված են 11 նոր հաշվիչ կենտրոններ, իսկ էլեկտրոնային-հաշվիչ մեքենաների թիվը գրեթե կրկնապատկվել է։ Իններորդ հնգամյակի տարիներին հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են տեխնիկական մոտ 2.400 նոր կարևորագույն միջոցառումներ, որոնցից 400-ը՝ արդյունաբերական արտադրանքների նոր տեսակների իրացման, 770-ը՝ առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, ավելի քան 600-ը՝ արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման նպատակով։

1976 թվականի սկզբին հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում գործարկվում էին 1.070 մեքենայացված հարահոս և 140 ավտոմատ գծեր, կոմպլեքսային մեքենայացված 115 տեղամասեր և 109 արտադրամասեր, ավտոմատացված 17 տեղամասեր և 23 արտադրամասեր, կոմպլեքսային ավտոմատացված 4 տեղամասեր և 6 արտադրամասեր, կոմպլեքսային մեքենայացված ու ավտոմատացված 25 ձեռնարկություններ։

Արտադրության մեքենայացման ու ավտոմատացման միջոցների արմատավորմամբ գունավոր մետաղագործության հիմնական արտադրությունում աշխատանքների մեքենայացման մակարդակը 1970-ի 57-ից հասել է 63,1 տոկոսի, 1975 թ. շինանյութերի արդյունաբերությունում, համապատասխանաբար՝ 54-ից 65 տոկոսի, թեթև արդյունաբերությունում՝ 65-ից 68,3-ի, սննդի՝ 47-ից 61,5-ի, փայտամշակման՝ 44-ից 57,9-ի, տեղական արդյունաբերությունում՝ 48-ից 57,4 տոկոսի։

Նշված ժամանակաշրջանում հարաբերականորեն ազատվել են մոտ 18 հա-

զար աշխատողներ։ Նոր տեխնիկայի արմատավորման նպատակով գործադրված միջոցառումների շնորհիվ 1975 թ. տնտեսվել է մոտ 32 մլն ռուբլի։

Տեխնիկական առաջընթացի զարգացման գործում մեծ է գյուտարարների ու ռացիոնալիզատորների ավանդը. նրանք ներդրել են 83 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն. գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների արմատավորումից տարեկան տնտեսվել է, միջին հաշվով, 32 մլն ռուբլի։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման հիմնական միջոցն է, որը հանրապետության զարգացման տնտեսական ու սոցիալական պրոբլեմների լուծման անհրաժեշտ պայմանն է։

Տասներորդ հնգամյակում նոր խնդիրներ են ծառացել հանրապետության գիտնականների առջև, որոնց լուծման համար անհրաժեշտ են գիտատեխնիկական առաջընթացի պլանավորման նոր, ավելի կատարելագործված մեթոդներ։

Դրանց մշակման ու արմատավորման նպատակով նախատեսվում են ոչ թե տարանջատ միջոցառումներ, այլ գիտատեխնիկական պրոբլեմների լուծման կոմպլեքս ծրագիր։ Նախատեսվում է Հայկական ՍՍՀ պետպլանի կողմից պլանավորվող կազմակերպություններում ընթացիկ հնգամյակում ուսումնասիրել մոտ 140 գիտական պրոբլեմներ ու 270 թեմաներ, ընդ որում, 190-ը մշակել մինչև 1980 թվականը։

Ելնելով ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. պետական պլանով նախատեսված գիտատեխնիկական ծրագրերի հիմնական առաջադրանքներից՝ հանրապետության գիտական հաստատություններն ակտիվ կմասնակցեն համապատասխան գիտական պրոբլեմների մշակմանը, պրոբլեմներ, որոնց վրա կատարվող ծախսերի տեսակարար կշիռը կկազմի դրանց ընդհանուր ծավալի մոտ 35 տոկոսը։ Նախատեսվում է հանրապետության գիտական հաստատություններում ուսումնասիրել գիտատեխնիկական մի շարք կարևորագույն պրոբլեմներ, մասնավորապես՝

**հասարակական գիտությունների ասպարեզում**— հանրային արտադրության արդյունավետության ու ինտենսիվացման բարձրացման, ժողովրդական տնտեսության պլանավորման ու կառավարման կատարելագործման, ինչպես և հանրապետությունում սոցիալ-տնտեսական պրոցեսների կանխատեսման հարցեր.

**ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ասպարեզում**— փոշենյութային քվանտային արագացուցիչների ռադիոաստղագիտության և տիեզերական կապերի համար օգտագործվող գերզգայուն ռադիոընդունիչ սարքերի պատրաստման հարցեր.

**կարծր մարմինների ֆիզիկայի ասպարեզում**— քվանտային էլեկտրոնիկայի համար անհրաժեշտ առկա տեխնիկական արժեքավոր բյուրեղների և նորերի ստացման տեխնոլոգիայի կատարելագործման պրոբլեմներ.

**քիմիա-տեխնոլոգիական գիտությունների ասպարեզում**— գործնական արժեքավոր հատկություններով օժտված պոլիմերային հումքերի ու նյութերի (էլեկտրամեկուսիչ հումքեր, լաքաներկային ծածկույթներ, հոտավետ նյութեր և այլն) ստացման համար անհրաժեշտ միացությունների սինթեզի հետ կապված հարցեր. հանքահումքի մի քանի տեսակների կոմպլեքսային վերամշակման տեխնոլոգիայի կատարելագործման հարցեր. դժվարահալ նյութերի ստացման նպատակով խտացման փուլում, ինքնատարածուն, գերջերմային սինթեզի ռեժիմի պայմաններում անօրգանական նյութերի այրման մեխանիզմի ուսումնասիրություն.

**հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության ձեռնարկությունների համար** ուսումնասիրություններ կկատարվեն հաստոցների ճշգրտությունը, հուսալիությունն ու երկարակեցությունը բարձրացնելու, մրրկապատճենահան հաստոցների ստեղծման, թվածրագրային կառավարման հաստոցների տեխնոլոգիական պրոցեսների մշակման ու արմատավորման նպատակով.



**էլեկտրոնային արդյունաբերության ձեռնարկությունների համար** կհետազոտվեն երրորդ և չորրորդ սերնդի միջին և փոքր հզորության՝ էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, ինչպես և ներքին հիշողության համարանքների ստեղծման ուղիները.

**էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկությունների համար** կմշակվեն մինչև 100 կվտ հզորությամբ, 400 հերց հաճախականությամբ ունիֆիկացված գեներատորներ. I և II գաբարիտի կոմպակտ տրանսֆորմատորներ՝ ձուլածո մեկուսիչ ունեցող տրանսֆորմատորների բազայի վրա գերարագ բարձր հաճախականության ասինխրոն շարժիչներ՝ մոտորաանվավոր մեքենաների 200 կիլովատանոց գազատուրբինային ագրեգատների քարշող էլեկտրահաղորդալարերի համար.

**շինանյութերի արդյունաբերության մեջ**— պեռլիտի կոմպլեքսային վերամշակման հարցեր, փքուն պեռլիտից ապակեհումք, ֆիլտրող փոշիներ և այլ նյութեր, ինչպես և ջերմամեկուսիչ ու ակուստիկ սալիկներ ստանալու նպատակով. հարահոս գծերում, հիմնական տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացմամբ, բնական քարից երեսպատման սալիկների արտադրության տեխնոլոգիայի մշակման հարցեր։

Գիտական հիմնարկությունների աշխատանքի հաջողությունները մեծ չափով պայմանավորված են նրանով, թե դրանց ղեկավարներն ինչպե՛ս կվերաբերվեն ու կլուծեն դրանց աշխատանքի արդյունավետության բարձրացման հարցերը։

Թերևս, կիրառական բնույթի գիտական հիմնարկություններում, գիտահետազոտական աշխատանքների վրա կատարված ծախսերի արդյունավետությունը վերլուծելիս, դրանց գործունեության գլխավոր չափանիշը պետք է լինի ավարտուն մշակումների արմատավորումը արտադրության մեջ, հանգամանք, որը նաև նորույթի ու գիտական մշակումների պատենտունակության անհրաժեշտ պայմանն է լիցենզիաների հետագա վաճառքի համար, իսկ այդ հնարավոր կլինի միայն գիտատեխնիկական ինֆորմացիայի ծառայության պատշաճ կազմակերպման դեպքում։

Գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացման համար մեծ նշանակություն ունեն գիտական իդեաների ընտրության հարցերը, որոնք նման պրոբլեմներ լուծելիս ամենից առաջ պետք է ծրագրային-նպատակային բնույթ կրեն։

Գիտության արդյունավետությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է, որ հանրապետության մինիստրություններն ու գերատեսչությունները գիտական հիմնարկությունների, նախագծակոնստրուկտորական կազմակերպությունների, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկությունների հետ մեկտեղ մշակեն գիտատեխնիկական պրոբլեմների կոմպլեքսային լուծում և իրացնեն ծրագրանպատակային խնդիրները։

Գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացման նպատակով ընթացիկ հնգամյակում առավել մեծ ուշադրություն կնվիրվի փորձարարական և փորձնական բազաների ստեղծմանը։ Այսպես, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայում նշված նպատակներին հատկացվող ծախսերը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, կավելանան երեք անգամ և կկազմեն մոտ 3 մլն ռուբլի։ Նախատեսվում է բարելավել նաև մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների գիտական հիմնարկությունների փորձարարական և փորձնական բազաները։ Գիտահետազոտական պրոբլեմների կոմպլեքսային լուծման, ինչպես և հանրապետության ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում տեխնիկական առաջընթացի շնորհիվ ընթացիկ հնգամյակում կարմատավորվեն տեխնիկայի ներդրման մի շարք միջոցառումներ։ Այսպես, միայն ժողովրդատնտեսական պլանով նախատեսվում է ներդնել 3.350 կարևորագույն միջոցառում, այդ թվում 300-ը՝ արդյունաբերական արտադրանքի յուրացման, 550-ը՝ արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, 600-ը՝ առաջավոր տեխնոլոգիայի, 520-ը՝ աշխատանքի գիտական կազմակերպման և այլ ոլորտներում։

Լուրջ խնդիրներ են ծառացած հանրապետության մեքենաշինական ձեռ-

նարկությունների առջև թողարկվող արտադրանքի արագ նորացման առումով։ Հանրապետության ապրանքային արտադրանքի ընդհանուր ծավալում 1975 թվականին նորացված արտադրանքի տեսակարար կշիռը կազմել է ընդամենը 3,2 տոկոս, իսկ քիմիական և նավթաքիմիական մեքենաշինության ձեռնարկություններում՝ 1,4, ավտոմատացման միջոցների սարքաշինության ու կառավարման սիստեմների ձեռնարկություններում՝ 2,1 տոկոս։ Հանրապետության մեքենաշինական և ավտոմոբիլային արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքը զգալիորեն ետ է մնում արդի պահանջներից։

Աշխատանքի արտադրողականության աճի հիման վրա հանրային արտադրության արդյունավետությունը կարելի է բարձրացնել ամենից առաջ տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման միջոցով։ Մինչդեռ 1975 թվականին հանրապետության արդյունաբերության մեջ աշխատողների և մեքենայացված հարահոս գծերն սպասարկողների 39,2 տոկոսն աշխատանքը կատարում էր ձեռքով, այդ թվում՝ մեքենաշինական ու մետաղամշակման ձեռնարկություններում՝ 55,2 տոկոսը։

Ընթացիկ հնգամյակում արդյունաբերական ձեռնարկություններում ծավալուն աշխատանքներ կկատարվեն մեքենայացված ու ավտոմատացված գծերի, տեղամասերի ու արտադրամասերի ստեղծման նպատակով։ Շահագործման կհանձնվեն 640 հոսքային մեքենայացված, կոմպլեքսային-մեքենայացված և կիսավտոմատ գծեր, 180 մեքենայացված տեղամասեր ու արտադրամասեր, 160 ավտոմատ գծեր, ինչպես նաև՝ 70 ավտոմատացված տեղամասեր ու արտադրամասեր։

Արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման շնորհիվ աշխատանքների մեքենայացման մակարդակը գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում 1975 թվականի 63,1 տոկոսից 1980 թվականին կհասնի 71-ի, համապատասխանաբար՝ շինանյութերի արդյունաբերության ձեռնարկություններում՝ 65-ից 71-ի, սննդարդյունաբերության ձեռնարկություններում՝ 61,5-ից 79-ի, տեղական արդյունաբերության ձեռնարկություններում՝ 57,4-ից 61,6 տոկոսի։

Արդյունաբերական արտադրությունում նշանակալիորեն կբարձրանան նաև տեխնիկատնտեսական մակարդակը, ինչպես և թողարկվող արտադրանքի որակը։ Այսպես, բաց-լեռնահանքային արտադրանքը մեկ բանվորի հաշվով նկատելիորեն կավելանա, համապատասխանորեն կաճեն նաև ֆլոտացիոն ֆաբրիկաների ընդհանուր կարողությունները։ Նոր հակազդիչների կիրառմամբ հանքաքարի հարստացման կոլեկտիվ-ընտրողական սխեման կօգտագործվի հանքաքարի վերամշակման պրոցեսում, որի շնորհիվ հարստացվող հանքաքարի ընդհանուր ծավալում դրա տեսակարար կշիռը կկազմի 90 տոկոս։

Մեքենաշինական ձեռնարկություններում կմեծանա պլաստմասսաներից ու մետաղափոշիներից պատրաստվող մասերի տեսակարար կշիռը, կներդրվեն զոդման նոր պրոցեսներ, ունիվերսալ հավաքովի հարմարանքներ։ Կավելանա օգտագործվող թվածրագրային կառավարման մետաղահատ հաստոցների թիվը։ Սարքաշինության մեջ նախատեսվում է տեղական նշանակության սարքերի փոխարեն կոմպլեքսային սարքերի ու ավտոմատացման համակարգի ստեղծման միջոցով թարմացնել թողարկվող արտադրանքների անվանակարգը։

Թեթև արդյունաբերության ձեռնարկությունների 12 արտադրամասերում կարմատավորվի ծանր և աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում, իսկ մսի ու կաթի արդյունաբերության ձեռնարկություններում առաջին անգամ կանցնեն բոլոր կիսաֆաբրիկատների արտադրության հարահոս-մեքենայացված գծերի։

Ընթացիկ հնգամյակում կընդլայնվեն ժողովրդական տնտեսության կառավարման հանրապետական ավտոմատացված համակարգի (ԿՀԱՀ) մշակման աշխատանքները. այդ առնչությամբ արդյունաբերական շահագործման կհանձնվի պլանային հաշվարկների, պետական վիճակագրության ու գիտատեխնիկական ինֆորմացիայի միջգերատեսչական ավտոմատացված համակարգերի երկրորդ հերթը։ Միաժամանակ կսկսվի Երքաղսովետի գործադիր



կոմիտեի, կոմունալ տնտեսության, տեղական արդյունաբերության, սննդարդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության, սոցիալական ապահովության հանրապետական մինիստրությունների կառավարման ավտոմատացված համակարգերի մշակումը. կստեղծվեն նաև տվյալների հանձնման հանրապետական սիստեմ և հաշվիչ կենտրոնների միասնական ցանց։

Հանրապետության մինիստրություններում, գերատեսչություններում և ձեռնարկություններում կկազմակերպվեն նոր հաշվիչ կենտրոններ, ընդ որում. հատուկ ուշադրություն կնվիրվի փնջային հաշվիչ կենտրոնների ստեղծմանը։ Հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ զգալի չափով կավելանան նոր տեխնիկայի միջոցառումների արմատավորման ծախսերը, միայն արդյունաբերական արտադրության մեջ այդ ծախսերն ամեն տարի կհասնեն 50 մլն ռուբլու, ընդ որում դրա կեսը կհատկացվի նոր, առաջավոր տեխնոլոգիայի յուրացմանը։

Արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորումը կհասցնի այն բանին, որ ամեն տարի հարաբերականորեն կազատվեն 4—5 հազար մարդ, իսկ ինքնարժեքի իջեցումից կամ արտադրածախսերի նվազումից կտնտեսվեն մոտ 16—18 մլն ռուբլու միջոցներ։ Արդյունաբերական արտադրության մեջ նոր տեխնիկայի արմատավորումից ստացված տնտեսական արդյունքը 1980 թվականին կկազմի մոտ 70 մլն ռուբլի։

Հետազոտման փուլից մինչև արտադրության մեջ գիտական նվաճումների ներդրման պրոցեսի արագացմանը կարող է նպաստել այնպիսի գործոն, ինչպիսին է գիտաարտադրական միավորումների, կոնստրուկտորական բյուրոների և նախագծային կազմակերպությունների, ինչպես և հիմնարար գիտական հաստատությունների շուրջը փորձարարական-արդյունաբերական բազաների ստեղծումը։ Այդ ասպարեզում հանրապետությունում որոշակի գործ է արված Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայում. Լենինական քաղաքում կազմակերպված է հատուկ ինստիտուտ, ինչպես և կոնստրուկտորական հատուկ բյուրոներ՝ Երևանի պետական համալսարանին և պոլիտեխնիկական ինստիտուտին կից։

Ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունի պրոֆիլային հիմնարար գիտական հաստատությունների և հանրապետության միավորումների ու ձեռնարկությունների փոխկապերի ընդլայնումը։ Նման կապեր են հաստատվել, օրինակ, Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատի և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի Ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտի միջև. գիտատեխնիկական համագործակցության պայմանագիր է կնքված օրգանական քիմիայի ինստիտուտի և «Պոլիվինիլացետատ» գործարանի միջև, քիմիական, ֆիզիկայի և Կիրովականի բարձրջերմաստիճանային տաքացուցիչների գործարանի միջև և այլն։

Այսպիսով, տասներորդ հնգամյակում հանրային արտադրության արդյունավետության բարձրացման ասպարեզում խոշոր խնդիրներ են ծառացած հանրապետության գիտական աշխատողների, ինժեներների, տեխնիկների և աշխատողների առջև. խնդիրներ, որոնց լուծումը հնարավոր է գիտատեխնիկական առաջընթացի արագացմամբ ապահովվող աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով։

ՍՄԿԿ XXV համագումարում շեշտվեց գիտատեխնիկական առաջընթացի արագացման առաջնահերթ նշանակությունը, նշվեց, որ գիտության ու տեխնիկայի ասպարեզում կատարվող հեղաշրջումը պահանջում է տնտեսական գործունեության ոճի ու մեթոդների արմատական փոփոխություններ, վճռական պայքար քարացածության ու հնամոլության դեմ, նպաստավոր պայմանների ստեղծում գիտական նոր գաղափարների իրականացման համար՝ գյուտարարությունից մինչև մասսայական արտադրություն։ «Այս ամենը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,— խորապես կուսակցական խնդիրներ են։ Եվ մեր ամբողջ տնտեսական շինարարության մեջ այսօր, թերևս, ավելի հրատապ և ավելի պատասխանատու խնդիրներ չկան» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 72)։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

**Հ. Վ. ՄԻՆԱՍՅԱՆ**
ՀԿԿ Արարատի շրջկոմի առաջին քարտուղար

*ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԱՐԱՏԻ ՇՐՋԱՆԻ գյուղատնտեսության ավանդական ճյուղն է։ Իր զարգացման ներկա մակարդակով և հեռանկարներով այն առաջատար տեղ է գրավում շրջանի էկոնոմիկայում։ Ներկայումս կոլեկտիվ և պետական տնտեսություններն ունեն 3.500 հեկտար խաղողի այգի, որից 3.000 հեկտարը բերքատու է։ Մեծ է մեր շրջանի տեսակարար կշիռը Սովետական Հայաստանի խաղողի արտադրության ու մթերումների ընդհանուր ծավալում։ Տնտեսությունները տալիս են հանրապետության խաղողի համախառն բերքի ու մթերումների մոտ մեկ քառորդը։ Այս տարի, օրինակ, երկրին վաճառված 217 հազար տոննա խաղողից 54 հազար տոննան բաժին ընկավ մեր շրջանին (հաշված նաև այլ սեկտորի վաճառածը)։*

*Շրջանի կոլտնտեսականները, սովխոզների ու վերամշակող ձեռնարկությունների բանվորները խորին գոհունակությամբ ընդունեցին հանրապետության աշխատավորների փայլուն հաղթանակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ողջույնի նամակը։ Առանց տարակուսելու կարելի է ասել, որ այդ հաղթանակի ապահովման գործում զգալի ներդրում ունեն նաև մեր շրջանի աշխատավորները։ Հիանալի հաջողության հասան, մասնավորապես, մեր խաղողագործները։ Նրանք խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստացան 128 ցենտներ բերք՝ 24 ցենտներով գերազանցելով շրջանի համար աննախադեպ համարվող 1976 թ. ցուցանիշը։ Դրա շնորհիվ միայն կոլեկտիվ ու պետական տնտեսությունները պլանով նախատեսվածից ավելի հավաքեցին վեց հազար տոննա խաղողի համախառն բերք։ Խաղողագործական 18 տնտեսություններից առաջադրանքները թերակատարեց միայն մեկը։*

*Այդ նվաճումները մեր մարդկանց հայրենանվեր աշխատանքի ու հերոսական ջանքերի, արդյունավետության ու որակի բարձրացման համար և մեծ Հոկտեմբերի 60-ամյակի պատվին շրջանով մեկ ծավալված սոցիալիստական մրցության՝ համաժողովրդական պայքարի արգասիք են։*

*Մենք կարող ենք և պարտավոր ենք նվաճել ավելի բարձր բնագծեր. դրա վկայությունն առանձին տնտեսությունների առավել նշանակալի արդյունքներն են։ Այսպես, Թայթանի կոլտնտեսությունում խաղողի այգիների միջին բերքատվությունն այս տարի կազմեց 267, Փոքր Վեդու, Ավշարի, Մեծ Վեդու կոլտնտեսություններում և «Դվին» սովխոզում՝ 150—165 ցենտներ։ Թայթանի ցուցանիշն ամենաբարձրն է ոչ միայն մեր շրջանում, այլև հանրապետությունում։ Ի դեպ, նրան է պատկանում նաև հանրապետական մեկ այլ ռեկորդ. կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Հ. Աբգարյանի ղեկավարած բրիգադն իր մշակած այգիների ամեն մի հեկտարից հավաքեց 278,7 ցենտներ բերք։*



*Ինչո՞վ են պայմանավորված խաղողագործության բնագավառի մեր հաջողությունները, ինչ աղբյուրներից են գոյանում վերը հիշատակված տոննաները։ Խաղողագործությունը շրջանի գյուղատնտեսական էկոնոմիկայի գլխավոր ու ամենաեկամտաբեր ճյուղն է, և կուսշրջկոմը, բնականաբար, մեծ ուշադրություն է նվիրում դրա զարգացմանը։ Սկզբնական կուսկազմակերպությունների, տնտեսությունների ղեկավարների, շրջսովետի գործկոմի գյուղվարչության մասնագետների, շրջանի խաղողագործների բոլոր ուժերը մշտապես ուղղում ենք մի գլխավոր նպատակի՝ ամեն կերպ բարձրացնել խաղողագործության վարման կուլտուրան, ապահովել այդ ճյուղի բարձր արդյունավետությունը, հասնել հեկտարի միջին բերքատվության առավելագույն ցուցանիշի։*

*«Խաղողի և պտուղների արտադրության տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարումն ապահովելու համար,— ասաց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում,— մենք պետք է լուծենք եռմիասնական մի խնդիր՝ խիստ բարձրացնենք այգիների մշակության կուլտուրան՝ կիրառելով ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը, վերացնենք նոսրությունը և հիմնենք նոր այգիներ։ Այդ խնդիրը լուծելով միայն մենք խաղողագործությունն ու պտղաբուծությունը կբարձրացնենք որակական նոր մակարդակի»։ Համագումարի այս ծրագրային առաջադրանքի ոգով են իրենց աշխատանքները կազմակերպում մեր շրջանի խաղողագործները։ Մենք բյուրոյի նիստերում, խորհրդակցություններում քանիցս քննարկել ենք խաղողագործության զարգացման հարցը և մշակել այգիների վերակառուցման ու ընդլայնման, դրանց լիարժեքության ապահովման ու մշակության կուլտուրայի բարձրացման միջոցառումներ։*

*Հայտնի ճշմարտություն է, որ բարձր բերքատվության հիմնական նախապայմանն այգիների լիարժեքության ապահովումն է։ Լիարժեքության համար պայքարն սկսվում է, ամենից առաջ, այգիների յուրաքանչյուր հեկտարի վրա վազերի անհրաժեշտ քանակություն (2666 վազ) ապահովելուց։ Այս մասին պետք է հոգան ո՛չ միայն տնտեսական ղեկավարները, այլև կուսկազմակերպությունները։ Գաղտնիք չէ, որ հին թմբային այգիները չեն տալիս ցանկալի արդյունք նախ և առաջ այն պարզ պատճառով, որ դրանցում, սահմանված այդ քանակի փոխարեն, յուրաքանչյուր հեկտարի վրա կա ընդամենը 800—1.500 վազ։ Նման պայմաններում, բնականաբար, ավելորդ է խոսել այգիների արդյունավետության բարձրացման մասին։ Շրջանի կուսկազմակերպությունները վերջին տարիներին հետևողականորեն զբաղվում են խաղողի այգիների լիարժեքությունն ապահովելու հարցով։ Ուսումնասիրություններից պարզվել է, որ այսօր շրջանում կա 800 հեկտար հին, թմբային ցածր բերքատու այգի։ Հենասյունային այգիների մի զգալի մասում ևս վազերը նոսր են, նկատվում են բաց տարածություններ։*

*Կուսշրջկոմն իր որոշումներով պահանջել է սկզբնական կուսկազմակերպություններից ու տնտեսությունների ղեկավարներից հեկտարի լիարժեքությունն ապահովել հիմնականում երկու ճանապարհով՝ թմբային այգիների վերակառուցմամբ (դրանք հենասյունային դարձնելու միջոցով) և բաց տարածություններն անդալիններով ու արմատակալներով լրացնելու եղանակով։*

*Թե բերքատվության բարձրացման ինչպիսի մեծ ռեզերվ ունի թմբային այգիների վերակառուցումը, ցույց է տալիս Փ. Վեդու կոլտնտեսության օրինակը։ Սրանից 10—12 տարի առաջ տնտեսությունն ուներ 160 հեկտար խաղողի հին, թմբային այգի։ Որքան էլ հոգ էր տարվում խնամքի, մշակության և մյուս աշխատանքների որակի բարձրացման մասին, արդյունքը, այնուամենայնիվ, չէր գոհացնում։ 1965 թ. կոլտնտեսությունն ստացավ 985 տոննա համախառն բերք կամ ամեն մի հեկտարից՝ 61,5 ցենտներ։*

*Արարատյան դաշտավայրի պայմաններում, դա ինչ խոսք, ցածր ցուցանիշ էր։ Կուսշրջկոմի ցուցումով կոլտնտեսության վարչությունը և սկզբնական*

կուսկազմակերպությունը բազմակողմանիորեն քննարկեցին այդ հարցը և խնդիր դրեցին վերակառուցել թմբային բոլոր այգիները, վազերը բարձրացնել հենասյուների վրա։ Այժմ, երբ վերակառուցման աշխատանքներն ամբողջությամբ ավարտված են, և տնտեսությունում չկա ոչ մի հեկտար թմբային այգի, նորից դիմենք թվերին։ Դրանք պերճախոս կերպով կպատմեն, թե ընդամենը մեկ տասնամյակում տնտեսությունը որքա՜ն մեծ առաջընթաց է ապրել խաղողի բերքատվության բարձրացման ասպարեզում. նույն 160 հեկտար այգուց նա 1977 թ. ստացավ 2.794 տոննա համախառն բերք կամ ավելի քան 2,8 անգամ շատ, քան 1965 թվականին։ Հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 162 ցենտներ։

Հին այգիների վերակառուցումը նույնպիսի արդյունք է տալիս նաև շրջանի մյուս տնտեսություններում։ Այսպիսով, փորձը կա, լավ արդյունքը՝ ևս։ Հետևաբար, կարելի է գործը շարունակել համարձակորեն, առանց տարակուսանքի, վաղվա հեռանկարի հանդեպ մեծ վստահությամբ։ Այդպես էլ վարվում ենք։ Կուսշրջկոմի բյուրոն 1976 թ մարտի 12-ի իր նիստում քննարկեց շրջանի տնտեսություններում խաղողագործության և պտղաբուծության արդյունավետության բարձրացման հարցը և մշակեց այգիների վերակառուցման ու բերքատվության բարձրացման կոնկրետ միջոցառումներ, որոնց իրականացումը նախադրյալներ կստեղծեր խաղողագործության բուռն զարգացման ու վերելքի համար։ Շրջկոմի բյուրոյի որոշումը քննարկվեց բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում, կոլեկտիվների ժողովներում։ Ամենուրեք պայքար ծավալվեց այդ որոշման կենսագործման համար։ Անցել է մոտ երկու տարի, և այսօր մենք կարող ենք ասել, թե ինչ է արվել. 1976 թ. և 1977 թ. գարնանը վերակառուցման նպատակով տնկվել է 370 հեկտար նոր շպալերկ այգի, բոլորն էլ՝ մեքենահարմար։ Դրանք հիմնականում զտասորտ են և հետագա բարձր բերքի լավ երաշխիք են տալիս։ Բայց զտասորտության և արժեքավոր սորտերի լայն ներդրման համար հարկ է ունենալ տնկարանային հուսալի տնտեսություն։ Այս հարցում ևս առաջխաղացում կա։ Վերջին երկու տարում շրջանում հիմնվել է 50 հեկտար տնկարան։ Նույն ժամանակամիջոցում հենասյուների վրա է բարձրացվել 230 հեկտար այգի։ Դա հնարավորություն կընձեռի զգալիորեն բարձրացնելու մշակության աշխատանքի մեքենայացման աստիճանը։

Կուսշրջկոմը մշտապես հետևում է այգիների մշակության, խնամքի, բերքահավաքի և ընթացիկ մյուս աշխատանքների կազմակերպմանը։ Ելնելով խաղողագործության տնտեսական արդյունավետության բարձրացման շահերից և Հայաստանի կոմկուսակցության XXVI համագումարի ուղղակի պահանջից՝ մենք այգիների վերակառուցումը և դրանց բերքատվության աճի ապահովումը համարում ենք կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների առաջնահերթ ու անհետաձգելի խնդիրներից մեկը։ Սակայն, բնավ չենք պահանջում, որ վերակառուցումը կատարվի միանգամից։ Մենք քաջ գիտենք, որ դա տևական պրոցես է։ Ահա ինչու տնտեսությունները, մեր որոշումներին համապատասխան, նախ տնկում են նոր այգի (լիարժեք, բարձր բերքատու սորտերով), ինչպես հարկն է խնամում վազերը, ապա՝ երբ այն դառնում է բերքատու և մտնում շրջանառության մեջ, քանդում են հին, թմբային այգիները։

Հեկտարի լիարժեքության ապահովման մյուս, ոչ պակաս կարևոր ճանապարհը, ինչպես ասվեց, այգիների բաց տարածությունների լրացումն է անդալիսների և արմատակալների միջոցով։ Այդ ասպարեզում նույնպես մեզ մոտ զգալի գործ է տարվում։ Միայն վերջին երկու տարում տնտեսությունները կատարել են շուրջ 220 հազար հատ անդալիս և տնկել 190 հազար հատ արմատակալ։ Այսինքն, երկու տարում շրջանի այգիներում վազերի ընդհանուր քանակն ավելացել է 410 հազար հատով։ Իսկ դա նշանակում է, առանց շրջանառության մեջ դնելու նոր հողեր, լրացուցիչ ստեղծել մոտ 154 հեկտար այգի։ Սա, անշուշտ, թաքնված ռեզերվները գործադրելու, հողը ռացիոնալ օգտագործելու լավագույն օրինակ է։ Եվ այդ ռեզերվից խելամտորեն են օգտվում Թայթանի, Վեդու, Փ. Վեդու, Արարատի, Ավշարի, Այգավանի կոլտնտեսությունների, «Դվին» սովխոզի խաղողագործները։

Բերքատվության բարձրացման ուղիներից մեկն էլ, ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի XXVI համագումարում, ագրոտեխնիկական միջոցառումների կոմպլեքսի ժամանակին ու ճիշտ կիրառումն է։ Մասնագիտական ուսումնասիրությունները պարզել են, որ այս ասպարեզում ևս կան բազմաթիվ չօգտագործված հնարավորություններ ու ռեզերվներ։ Այդ է վկայում վազի միջին բերքատվության պատկերի խայտաբղետությունը։ Այսպես, շրջանի խաղողագործական առաջավոր տնտեսություններում՝ Թայթանում, Ավշարում, Խալիսայում այն հասնում է 8—11 կիլոգրամի, մինչդեռ Գոռավանում, Շիրազլուում, Սպանդարյանի անվան և Արմաշի սովխոզներում չի անցնում 4 կիլոգրամից։

Նման վիճակը, բնականաբար, գոհացուցիչ չէ, և կուսշրջկոմը լրջորեն մտահոգվում է այն արմատապես բարելավելու հարցով։ Ամենից առաջ շեշտը դրվում է վազերի էտի և ձևավորման ճիշտ կազմակերպման վրա։

Այգիների խնամքի ու մշակության գործում հանդես է բերվում նախօրոք պլանավորված, շերտավորված մոտեցում։ Սկսած վաղ գարնանից, մինչև բերքահավաքի ավարտը կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները հետամուտ են լինում, որ ամենուրեք ճշտորեն իրականացվեն պահանջվող բոլոր ագրոմիջոցառումները։ Այդ նպատակով կազմակերպում ենք ստուգայցեր, ուսումնասիրություններ։

Գործին մեծապես նպաստում են հաճախակի կազմակերպվող ստուգայցերը, խաղողագործական տնտեսություններ ղանազան հանձնաժողովներ գործուղելը։ Այսպես, անցյալ տարի ամռանը ահազանգ ստացվեց, որ Սպանդարյանի անվան սովխոզում անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում խաղողի այգիների մշակությանը, առանձին հողակտորներ ծածկված են խոտով և գայլուկով։ Կազմվեց հատուկ հանձնաժողով՝ շրջսովետի գործկոմի գյուղվարչության պետ Վ. Հովհաննիսյանի գլխավորությամբ։ Հանձնաժողովն ստուգեց այգիների մշակության վիճակը և պարզեց, որ ստացված ահազանգը տեղին է։ Հարցը քննարկվեց կուսշրջկոմի բյուրոյում։ Սովխոզի դիրեկտոր Ս. Ղազարյանը և կուսկազմակեպության քարտուղար Գ. Հակոբյանը կուսակցական խիստ տույժի ենթարկվեցին, իսկ գլխավոր գյուղատնտես Հ. Սաղաթելյանը, բրիգադավարներ Գ. Մխիթարյանը և Ա. Աղազարյանը ազատվեցին աշխատանքից։ Բյուրոն միջոցառումներ մշակեց Սպանդարյանի անվան սովխոզում այգիների մշակության աշխատանքները բարելավելու համար։ Կարճ ժամանակ անց, գործերի վիճակը սովխոզում շտկվեց։ Եվ այս տարի տնտեսությունը, նախատեսված 2.500-ի փոխարեն, արտադրեց 2.908 տոննա խաղող կամ մեկ հեկտարի բերքատվությունը բարձրացավ 26 ցենտներով։ Այդ քննարկումը օգտակար եղավ նաև մյուս տնտեսությունների համար։

Մենք որոշակի հաջողությունների ենք հասել խաղողագործության աշխատատար շատ պրոցեսներ մեքենայացման ասպարեզում։ Մեքենայացված են այնպիսի դժվարին պրոցեսներ, ինչպիսիք են այգիների բուժումը, միջշարային վարը, միջվազային տարածությունների մշակությունը ։ Անցյալ տարի Նոր կյանք կոլտնտեսությունում առաջին անգամ կատարվեց նաև մեքենայական այգեթաղ և այգեբաց, իսկ Ավշարի և Այգավանի կոլտնտեսություններում՝ մեքենայական այգետունկ։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն իրենց առաջնահերթ խնդիրներից մեկը համարում են սոցիալիստական մրցության կազմակերպումը խաղողագործների շրջանում։ Ամեն ինչ արվում է մրցությանն իսկական գործնական բնույթ հաղորդելու, այն աշխատավորների առջև ծառացած խնդիրների լուծմանն ուղղելու համար։

Մրցության առաջավորները խրախուսվում են նաև բարոյապես։ Վերջին հինգ տարում 70 խաղողագործներ պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով, ընդ որում, Կիրովի անվան սովխոզի բրիգադավար Հ. Հովհաննիսյանը, Թայթանի կոլտնտեսության խաղողագործ Պ. Պողոսյանը արժանացել են սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։ Գյուղատնտեսության աշխատողների մեջ հանրապետությունում առաջինը ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկրի կոչում շնորհվեց Թայթանի առաջավոր բրիգադավար Ա. Գրիգորյանին։

Մեր խաղողագործների սոցիալիստական մրցությունն առանձնապես լավ

արդյունքներ տվեց հոբելյանական այս տարում։ Անշուշտ, դրան մեծ չափով նպաստեց այն ընդհանուր ոգևորությունը, որ առաջ էին բերել ՍՍՀՄ նոր Սահմանադրության նախագծի քննարկումն ու ընդունումը։ Մրցության յուրաքանչյուր օրը նոր հաջողություններ էր բերում մեր խաղողագործներին։ Նրանք պատվով կատարեցին խաղողի արտադրության ու վաճառքի ո՛չ միայն պլանները, այլև սոցիալիստական պարտավորությունները։

Մրցության ընթացքում լայն տեղ ենք տալիս առաջավոր փորձի տարածմանն ու արմատավորմանը, գիտության ու արտադրության կապի ամրապնդմանը։ Անցած տարվա իր նիստերից մեկում շրջկոմի բյուրոն քննարկեց ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր Ա. Գրիգորյանի ղեկավարած բրիգադի փորձը շրջանում տարածելու հարցը՝ կապված ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի 1976 թ. հունիսի 1-ի որոշման կենսագործման հետ։ Բանն այն է, որ այս բրիգադի փորձը քննարկվել էր ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում և արժանացել նրա հավանությանը։

Լուրջ ուշադրություն է նվիրվում կադրերի որակավորմանը։ Ամեն տարի տնտեսություններում կազմակերպվում են մեխանիզատորների ուսուցման, որակավորման բարձրացման դասընթացներ և սեմինարներ, գիտագործնական կոնֆերանսներ, որտեղ դասախոսություններով ու մեթոդական զրույցներով հանդես են գալիս գիտնականներն ու մասնագետները, հարուստ փորձ ունեցող պրակտիկ խաղողագործները։

Մեր աշխատանքներում դեռևս կան չլուծված հարցեր, լուրջ դժվարություններ։ Այսպես. ոռոգման ջուրը տակավին չի բավարարում շրջանի տնտեսությունների պահանջը։ Եվ մենք ստիպված հիմնականում ջրով ապահովում ենք խաղողի այգիները, բանջարանոցները, բոստանը, իսկ կերային կուլտուրաները, օրինակ, խիստ տուժում են։

Անբավարար է ոռոգման ներքին ցանցի վիճակը. առուները երեսպատված չեն, իսկ դա ջրի զգալի կորստի պատճառ է դառնում։ Ջրի օգտագործման գործակիցը շատ տեղերում կազմում է ընդամենը 50—52 տոկոս։ Հետևաբար, գտնում ենք, որ ժամանակն է ստեղծել շինարարական հատուկ կազմակերպություն (նույնիսկ տնտեսությունների հաշվին), որն ի վիճակի լիներ առաջիկա մեկ-երկու տարում կարգավորել ոռոգման ներքին ցանցը, երեսպատել առուները և իսպառ կանխել ջրի կորուստները։ Ջրի կորստի կանխման մյուս արդյունավետ միջոցը ջրման առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրումն է։ Այս ասպարեզում գրեթե ոչինչ չի արվում։ Հանրապետության գյուղատնտեսության և ջրային տնտեսության մինիստրությունները և «Հայգյուղտեխնիկա» միավորումը պետք է այս հարցում նախանձախնդիր լինեն և օգնեն խաղողագործական տնտեսություններին՝ լուծելու այդ պրոբլեմը։

Այգիների վերակառուցման հաջողությունը և բարձր արդյունավետությունը հիմնականում պայմանավորված են հենասյուների բավարար քանակի առկայությամբ և բարձր որակով։ Մինչդեռ զգացվում է հենասյուների խիստ պահանջ, իսկ եղածը ցածրորակ է, երբեմն դրանք դառնում են ոչ պիտանի հենց փոխադրման ընթացքում։ Հաճախ հենասյուները բերքի ծանրության տակ ջարդվում են կամ ծռվում, որի հետևանքով բերքի զգալի կորուստ է լինում։ Շատ ցանկալի և անհրաժեշտ է, որ հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունն զբաղվի այս հարցով, ներազդի «Շինանյութ» կոմբինատի ղեկավարության վրա՝ տնտեսություններին անհրաժեշտ քանակի և բարձրորակ հենասյուներ մատակարարելու համար։

Մեկ ուրիշ կարևոր պրոբլեմ՝ զտասորտության հարցը։ Հաճախ տնկարանային տնտեսություններից ստացվում են խառը սորտեր, և, այգին հիմնելուց հետո, հայտնվում են ոչ բերքատու վազեր, որոնք երբեմն կազմում են տնկիների 15—20 տոկոսը։ Եվ ինչ է ստացվում. այդ տնկիների մշակության ու բուժման վրա բավական աշխատանք է ծախսվում, իսկ դրանք, բերք չտալու պատճառով, աճում են փարթամորեն և ճնշում բերքատու վազերին։

Ի՞նչ ենք անում այդ չարիքը կանխելու համար։ Կուսշրջկոմը շրջանի խաղողագործ մասնագետներին առաջադրանք է տվել բոլոր տնտեսությունների այգիներում կատարել ապրոբացիա՝ ամուլ վազերը խոտանելու և ոչնչացնելու համար։ Այստեղ մտաբերենք Թայթանի կոլտնտեսության հաջողությունը։



Բանն այն է, որ թայթանցիները տարիներ շարունակ այգիները ենթարկել են ապրոբացիայի, հեռացրել ոչ բերքատու, ամուլ վազերը, դրանք փոխարինել բերքունակ վազերով։ Այսպիսով, այս առաջավոր կոլտնտեսությունում ստեղծվել է լիակատար լիարժեքություն, մինչդեռ Տիրաշլուի, Այգավանի, Ենգիջայի և այլ տնտեսություններում բերքատվության ցածր մակարդակի հիմնական պատճառը ոչ-զտասորտությունն է և ամուլ վազերի զգալի քանակը։

Այստեղից էլ՝ տնկարանային տնտեսության կարգավորման պրոբլեմը։ Հանրապետության տնկարանային տնտեսության ներկա վիճակը հույս չի ներշնչում, որ առաջիկա տարիներին կլուծվի զտասորտ տնկանյութի արտադրության հարցը։ Հարկ է, որ գյուղատնտեսության մինիստրությունն արմատապես բարելավի տնկարանային տնտեսության վիճակը և լուծի հուսալի և երաշխավորված զտասորտ տնկանյութի արտադրության հարցը, այն դնելով գիտական հիմքերի վրա։ Հետագա հոգսերից խուսափելու համար ավելի լավ է նոր այգիները հիմնվեն ուշացումով, քան ոչ-զտասորտ վազերով։

Չնայած որ վերը նշեցինք, թե խաղողագործությունը շրջանի առաջատար և եկամտաբեր ճյուղն է, բայց այս բնագավառում կա լուծման կարոտ այնպիսի մի լուրջ պրոբլեմ, որով պայմանավորված է այդ ճյուղի հետագա բուռն վերելքը։ Դա վերաբերում է խաղողագործության և մյուս ճյուղերի համեմատական արդյունավետությանը։ Ասածս պարզաբանելու և հիմնավորելու համար բերեմ նույն Թայթանի օրինակը։ Այս կոլտնտեսությունն ունի 100 հեկտար խաղողի բերքատու այգի և, ինչպես արդեն ասվեց, հեկտարից ստանում է հանրապետությունում ամենաբարձր բերքը։ Վաճառքի գների ներկա պայմաններում խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 7.000 ռուբլու դրամական եկամուտ, իսկ, օրինակ, սոխի մեկ հեկտարից՝ կրկնակի անգամ ավելի շատ՝ 15 հազար ռուբլու։ Մինչդեռ սոխի ցանքադաշտերի համեմատությամբ խաղողի այգու մեկ հեկտարի վրա կատարվում են մեկուկես անգամ ավելի շատ արտադրական ու նյութական ծախսեր։ Այդ պատճառով էլ շատ տնտեսություններ խաղողի այգիների ընդարձակման հարցում առանձնակի շահագրգռություն հանդես չեն բերում։

Հետևաբար, խաղողագործության զարգացման շահերը պահանջում են իրականացնել գնման գների այնպիսի քաղաքականություն, որպեսզի դրա եկամտաբերությունը գերազանցի մյուս բոլոր ճյուղերի ներկա մակարդակը։ Միայն այս պայմաններում հնարավոր կլինի ապահովել խաղողագործության աննախադեպ վերելքը։

Այս ամենը վկայում է, որ, իրոք, մեր շրջանում շատ-շատ են չօգտագործված ռեզերվները, որոնք պետք է անպայման գործադրել։ Մենք բոլոր հնարավորություններն ունենք պետությանը տարեկան վաճառելու 50 հազար տոննայից ավելի խաղող։ Կուսակցությունը մեզնից պահանջում է երբեք չբավարարվել ձեռք բերածով, ձգտել միշտ նորանոր բարձունքների։

Կուսշրջկոմի բյուրոյի այս տարվա հուլիսի 7-ի նիստում քննարկեցինք խաղողի այգիների մշակության բարելավման հարցը և միջոցառումներ մշակեցինք՝ արդեն հնգամյակի երկրորդ տարում նվաճելու 1980 թ. համար սահմանված բնագիծը՝ պետությանը վաճառել 50 հազար տոննա խաղող։ Այս որոշումը ևս լայնորեն քննարկվեց բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում, կոլեկտիվների ժողովներում և տնտեսություններում լայն շարժում ծավալվեց 50 հազար տոննայի համար։ Ամենուրեք կոլեկտիվները վերանայեցին իրենց հնարավորությունները, ստանձնեցին լրացուցիչ պարտավորություններ և պայքարեցին դրանք անթերի կատարելու համար։

Մեր խաղողագործների խոհերն ու ձգտումները արտահայտված են հանրապետության բոլոր խաղողագործներին ուղղված կոչում։ «Այգեկութը՝ հարվածային ճակատ» նշանաբանով այդ կոչում մասնավորապես ասվում էր, որ Արարատի շրջանի խաղողագործները հուսալի նախադրյալներ են ստեղծել բարձր բերք ստանալու և պետությանը 50 հազար տոննա խաղող վաճառելու համար։ Այդ նպատակով նրանք խոստանում էին նախորդ տարիների 20—30 օրվա փոխարեն, այս տարի այգեկութն ավարտել 15 օրում, լավագույն ցուցանիշներով նշանավորել մեծ Հոկտեմբերի 60-ամյա պանծալի հոբելյանի,

ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման տարին։ Եվ մեր խաղողագործներն իրենց խոսքի տերը եղան. շրջանը (տնտեսություններն ու այլ սեկտորը) պետությանը վաճառեց 54 հազար տոննա խաղող։

Մեծ են խաղողագործության զարգացման հեռանկարները։ Մեր անհետաձգելի խնդիրն է՝ առաջիկա մի քանի տարում լիովին ավարտել հին, թմբային այգիների վերակառուցումը, ապահովել բոլոր հեկտարների լիարժեքությունը, ավելի արդյունավետ ու բարձր որակով կատարել բոլոր ագրոմիջոցառումները, զգալի բարձրացնել աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը։ Հետևողականորեն կշարունակվի նոր ղտասորտ այգիների տնկումը։ Մինչև հնգամյակի վերջը շրջանում խաղողի այգիների ընդհանուր տարածությունը կկազմի 4.000 հեկտար, նկատելիորեն կբարձրանա հեկտարի միջին բերքատվությունը։ Այսպիսով, խաղողագործության զարգացումը մեր շրջանում կընթանա երկու ուղիով՝ այգիների ինտենսիվացման և ընդարձակման։

Հեռանկարային առումով շատ կարևոր է շուտափույթ լուծել մի կարևոր պրոբլեմ, դա Արագածյանի նոր յուրացվող հողերի նպատակահարմար օգտագործումն է։ Նախատեսված է ընթացիկ հնգամյակում և հետագա տարիներին մեր շրջանի տարածքում գտնվող Արագածյանի կիսաանապատային և քարքարոտ հողերում հիմնել խաղողի նոր, լիարժեք այգիներ։ Դա, ինչ խոսք, լավ մտահղացում և ցանկություն է, սակայն, կարծում եմ, մասնագիտորեն և գիտականորեն չի հիմնավորված, որովհետև այդ տարածությունում չկան անհրաժեշտ պայմաններ խաղողի այգիներն արդի տեխնոլոգիայով մշակելու և պահպանելու համար։ Այստեղ բարձր արդյունավետություն հնարավոր չէ սպասել։

Համակողմանի ուսումնասիրությունից հետո մենք հանգեցինք այն ճիշտ եզրակացության, որ ավելի նպատակահարմար է նոր յուրացվող հողատարածությունում հիմնել պտղատու այգիներ և կատարել խոտացանություն՝ կերի արտադրության հարցը լուծելու համար։ Դրանց բերքատու հասակի հասնելուց հետո կարելի է կուլտուր-ոռոգելի հողերի արտադրական կարողությունը կորցրած հին պտղատու այգիները քանդել և այդ ազատված տարածությունում հիմնել խաղողի նոր այգիներ։ Ըստ էության, սա ավելի հեռանկարային և արդյունավետ կլինի։

Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, սովետական և տնտեսական մարմինները խաղողագործության հետագա զարգացումը համարում են իրենց առաջնահերթ գործը և դրա համար սահղծում են հուսալի նախադրյալներ։ Արարատի աշխատավորությունը, ոգևորված ձեռք բերած աննախադեպ հաջողություններով, նոր եռանդով կպայքարի խաղողագործության բուռն վերելքի ապահովման, կուսակցության առաջադրած խնդիրների անթերի կատարման համար։



# ՄԱՐԴՈՒ ԷԿՈԼՈԳԻԱՆ ԵՎ ԲՆԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԻ ՎԵՐԱՓՈԽՄԱՆ ՈՐՈՇ ԱՍՊԵԿՏՆԵՐ

**Ս. Հ. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԴԵՌԵՎՍ ՆԱԽՆԱԴԱՐՅԱՆ ՄԱՐԴԸ որոշակի տեղեկություններ ուներ շրջակա միջավայրի՝ բույսերի ու կենդանիների և անօրգանական տարրերի վերաբերյալ։ Քաղաքակրթության զարգացման զուգընթաց ավելացան մարդու գիտելիքները բնական շրջապատի մասին։ Այդ պատկերացումների հիման վրա, XIX դարի վերջերում ձևավորվեց էկոլոգիան՝ որպես կենսաբանական գիտություն կենդանի օրգանիզմների և միջավայրի միջև գոյություն ունեցող փոխհարաբերության օրինաչափությունների մասին։ Հետագայում, մեր դարի 60—70-ական թվականներին, ընդհանուր էկոլոգիայից անջատվեց մարդու էկոլոգիան՝ որպես ինքնուրույն գիտություն. այդ արդյունք է այն բանի, որ, ի տարբերություն օրգանական մյուս ձևերի, մարդը, որպես բանական էակ, բնության մեջ զբաղեցնում է ուրույն տեղ։ Մարդն առաջին հերթին սոցիալական երևույթ է։

Մարդկային հասարակության էկոլոգիայի հարցերի քննումն ընդհանուր էկոլոգիայի շրջանակներում, երբ հավասարության նշան է դրվում մարդու և կենդանու միջև՝ որպես էկոլոգիական համակարգի համահավասար տարրերի, հանգեցնում է մեթոդոլոգիական ու սոցիալական խոշոր սխալների։

Նման կոնցեպցիան, ինչպես իրավամբ նշում է Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր Ն. Նաումովը, սոցիալ-դարվինիզմի արձագանք է, այն փորձում է ցույց տալ, որ սկզբունքային (որակային) տարբերություններ չկան կենդանու և մարդու համակեցությունների միջև։ Մարդկային հասարակությունը շրջակա միջավայրն օգտագործում է ոչ թե պասիվ ձևով, ինչպես մոլորակի մյուս բոլոր բնակիչները, այլ այն ծառայեցնում է իր նպատակներին։ Ֆ. Էնգելսը գրում է. «...կենդանին միայն օգտվում է արտաքին բնությունից և նրա մեջ փոփոխություններ է առաջացնում պարզապես միայն իր ներկայությամբ. իսկ մարդն իր մտցրած փոփոխություններով նրան ստիպում է ծառայել իր նպատակներին, իշխում է նրա վրա...» (Ֆ. Էնգելս, Աշխատանքի դերը կապկի մարդացման պրոցեսում, Ե., 1953, էջ 17)։

Մարդու էկոլոգիան ապրում է իր ձևավորման շրջանը։ Նույնիսկ դեռևս սահմանված չէ դրա հստակ բնորոշումը, չնայած այն դարձել է գիտության հանրահայտ ճյուղերից մեկը։ Տարբեր հեղինակներ տարբեր պատկերացումներ ունեն այդ հասկացության մասին։ Սակայն մարդու էկոլոգիային առնչվող գիտական աշխատությունների մեծ մասում հատուկ ուշադրություն է նվիրվում շրջակա միջավայրի վիճակին, որը ենթակա է ուրբանիզացիայի և ինդուստրիալիզացիայի ազդեցությանը։ Մասնավորապես արծարծվում են մարդկային հասարակության առողջության ապահովման և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հարցերը։ Ակնհայտ է այն ճշմարտությունը, որ մարդու էկոլոգիան, առաջանալով ընդհանուր էկոլոգիայի սահմաններում, այժմ դուրս

է գալիս այդ շրջանակներից և սոցիալական հնչեղություն ստանում. դրան մեծապես նպաստում է գիտատեխնիկական հեղափոխությունը:

Մարդու էկոլոգիան վերածվել է գիտությունների ասոցիացիայի (փիլիսոփայություն, հոգեբանություն, աշխարհագրություն, տնտեսագիտություն, բժշկություն, կենսաբանություն), որի նպատակն է կարգավորել մարդու (հասարակության) փոխկախվածությունը շրջակա միջավայրից, այսինքն՝ վեր հանել բնական ու վերափոխված (կուլտուրական) կոմպլեքսների զարգացման օրինաչափություններն ու առանձնահատկությունները, դրա հիման վրա կազմակերպել մոլորակի ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և պահպանել առողջ միջավայրը:

Հասարակության զարգացման տարբեր դարաշրջաններում տարբեր է եղել շրջակա միջավայրի վրա մարդու ազդեցությունը, այն հիմնականում պայմանավորված է եղել հասարակության արտադրա-տնտեսական պայմաններով ու սոցիալական հարաբերությունների բնույթով: Պատմական անցյալում մարդն իր գործունեությամբ հաճախ բացասաբար է ազդել բնության առանձին կառուցվածքային տարրերի վրա (անտառահատում, հողերի էրոզիա, կենդանիների ու բույսերի ոչնչացում): Սակայն անցյալում, բնակչության սակավաթվության պայմաններում, մարդու բացասական ազդեցությունը բնության վրա հիմնականում տեղային, մասնակի բնույթ է կրել: Արտադրամիջոցների զարգացման ու կատարելագործման, ազգաբնակչության նկատելի ավելացման պատճառով արդի պայմաններում այնքան է ուժեղացել մարդու ազդեցությունը կենսոլորտի կառուցվածքի ու ռեսուրսների վրա, որ այն համեմատվում է նույնիսկ երկրաբանական գործոնների ազդեցության հետ: Այսպես, օրինակ, ներկայումս տարեկան արդյունահանվում են 5—7 միլիարդ տոննա մետաղ, ածուխ, նավթ և այլն, որոնց հետ միասին երկրագնդի ընդերքից արդյունահանվում են 50—70 միլիարդ տոննա ապարատեսակներ: Մինչդեռ հրաբուխները տարեկան արտավիժում են ընդամենը երեք միլիարդ տոննա ապար (տե՛ս Гирусов Э., Лепо С., «Природа», 1974, № 12):

Ակադեմիկոս Ա. Բերգի հաշվարկներով XIX դարի կեսերին երկրի վրա գործածված էներգիայի 94 տոկոսը գոյանում էր ընտանի կենդանիների և մարդու մկանային ուժի միջոցով, 6-ը՝ քամու և շոգեմեքենաների: Ներկայումս միայն մեկ տոկոսն է առաջանում մարդու մկանային էներգիայի հաշվին:

Մարդու շրջակա միջավայրի արդի վիճակը (ո՛չ միայն արդյունաբերական կենտրոններում ու մեծ քաղաքներում) բնորոշվում է օդային ու ջրային ավազանների աղտոտմամբ, հողերի ապականմամբ, բուսածածկույթի և կենդանական աշխարհի կրճատմամբ, անցանկալի այլ երևույթներով:

Մեր օրերում խիստ ուժեղացել են կյանքի ռիթմն ու լարվածությունը, մարդու ցանկությունից անկախ ստեղծվում է «նոր միջավայր»: Արհեստականորեն տարբերվող այդ միջավայրը պարունակում է (թերևս փոքր խտությամբ) մարդու համար վնասակար քիմիական նյութեր, որոնց մեծ մասը դեռևս հայտնաբերված չէ, ուսումնասիրված չէ դրանց ազդեցությունը կենդանի օրգանիզմների վրա:

Ամենազգայուն օղակը, որն առաջին հերթին արձագանքում է շրջապատի փոփոխմանը, մարդու կենտրոնական նյարդային համակարգն է: Անգլիացի գիտնական Ա. Դրիզանի հաղորդմամբ (1974), որոշ հոգեբույժների տվյալներով, նրանց այցելուների 80 տոկոսը տառապում է, այսպես կոչված՝ «մեծ քաղաքի հիվանդությամբ», որի հիմնական հատկանիշներն են՝ ընկճված տրամադրությունը, հոգեկան անհավասարակշռությունը, ագրեսիվությունը և անցանկալի այլ երևույթներ: Ամերիկայի Միացյալ Նահանգներում հատուկ ուսումնասիրություններ են կատարվել՝ պարզելու հիվանդությունների պատճառները խոշոր քաղաքներում: Հետազոտության արդյունքից պարզվել է, որ հիվանդությունների քառորդ մասը հետևանք է ավտոտրանսպորտից արտանետված գազերի: Սան-Ֆրանցիսկոյում, ուր ավտոմեքենաների թիվը հասնում է մոտ 3,7 միլիոնի, բավականին բարձր է մարդկանց մահացությունը թոքային և սրտանոթային հիվանդություններից: Էներգետիկական ճգնաժամի ժամա-



նակ, երբ բենզինի վաճառքը կրճատվեց 10 տոկոսով, ասթմայի, բրոնխիտի, թոքերի էմֆիզեմայի հիվանդություններից մահացությունը նվազեց 33, սրտանոթային հիվանդություններից՝ 17 տոկոսով: Իսկ երբ նորից սկսեցին բենզին վաճառել առանց սահմանափակումների, մահացության դեպքերը հասան նախկին մակարդակին:

Մեծ քաղաքների օդային ավազանի աղտոտման հիմնական աղբյուրը ավտոտրանսպորտն է: ԱՄՆ-ի, Ճապոնիայի և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության քաղաքների օդային ավազանի աղտոտման 60—90 տոկոսը հետևանք է ավտոտրանսպորտի արտանետած գազերի և միայն 10—40 տոկոսը՝ գործարանների, էլեկտրակայանների և ջեռուցման կաթսաների արտանետվածքի:

Շրջակա միջավայրի փոփոխությունները մարդու օրգանիզմում հարուցում են կենսաբանական այնպիսի շեղումներ, որոնց հետևանքները հասարակության համար դժվար է այսօր կանխագուշակել: Զարգացած արդյունաբերական երկրներում, մասնավորապես խոշոր քաղաքներում, մարդկանց մոտ նկատվում է մարմնի չափերի խոշորացում (աքսելերացիա) և սեռական հասունության արագացում: Մարդկանց մարմնում նկատվում է որոշ օրգանների քիմիական բաղադրության փոփոխություն: Վերջին 70 տարում փոխվել է նույնիսկ հիվանդությունների բնույթը: Եթե նախկինում մահահարույց հիվանդությունները պայմանավորված էին հիմնականում կենսաբանական ազդակներով, ապա ներկայումս հիվանդությունների մեծ մասը ֆիզիկական և քիմիական ներգործության արդյունք է: Լայնորեն տարածվել են, այսպես կոչված, «դարի հիվանդությունները»՝ չարորակ ուռուցքներ, շաքարախտ, նյարդային և սրտանոթային հիվանդություններ: Նկատվում է վերջիններիս «երիտասարդացում». այդ հիվանդությունները խոցում են հասարակության ջահել, հետևապես և առավել ակտիվ անդամներին:

Ուրբանիզացիան, դրա հետ կապված տրանսպորտային մայրուղիների ընդարձակումը, հզոր գործարանների, ռեակտիվ ինքնաթիռների առկայությունը, ռադիոն ու հեռուստատեսությունը, բազմապիսի տեխնիկական հարմարանքների օգտագործումը կենցաղում հարուցել են «ձայնային ճնշման» նոր որակ: Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում աղմուկն անհանգստացնում է ամեն մի երրորդ բնակչի: Աղմուկը հարուցում է ո՛չ միայն լսողական օրգանի հիվանդություններ՝ լսողության ծանրացում ու խլացում, այլև սրտանոթային օրգանների և շնչառական ուղիների ֆիզիոլոգիական մի շարք փոփոխություններ:

Չպետք է մոռանալ, որ մարդկային օրգանիզմի դիմացկունության հնարավորություններն անսահման չեն: Ինքնըստինքյան հասկանալի է, որ անհրաժեշտ է գերաղտոտությունից զերծ պահել մարդու շրջակա միջավայրը՝ օդը, ջուրը, հողը և կենսոլորտի կառուցվածքային մյուս տարրերը, որոնց մի մասնիկն էլ ինքը՝ մարդն է: Շրջակա միջավայրը պետք է նպաստավոր լինի մարդու ֆիզիոլոգիական բնականոն գործունեության և լավագույն աշխատունակության համար, ինչպես և գեղագիտական ու հոգեկան բավականության պատճառ:

Կենսոլորտը պատմականորեն գոյություն ունի և հարատևում է մարդու կամքից անկախ, օբյեկտիվորեն գործող օրենքների հիման վրա, որոնց իմացությունը և մարդու ու բնության միջև տեղի ունեցող նյութափոխանակության կարգավորումն ու վերահսկումը կարող են ապահովել մարդկային հասարակության և շրջակա միջավայրի ներդաշնակ զարգացումը:

Մարքսիստական փիլիսոփայությունը բացահայտում է մարդու՝ բնության հանդեպ ունեցած վերաբերմունքի բուն էությունը, որն արտահայտվում է մարդու և բնության միասնության մեջ: Աշխատանքը, գրում է Կ. Մարքսը, ամենից առաջ մարդու և բնության միջև կատարվող մի պրոցես է, որի մեջ մարդըն իր սեփական գործունեությամբ միջնորդավորում, կարգավորում և վերահսկում է իր և բնության միջև կատարվող նյութափոխանակությունը (տե՛ս Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, գիրք 1, Ե., 1954, էջ 188): Նույն միտքն է արտահայ-

տում նաև Ֆ. Էնգելսը. «...յուրաքանչյուր քայլափոխում փաստերը հիշեցնում են մեզ, որ մենք ամենևին էլ բնության վրա չենք իշխում այնպես, ինչպես նվաճողն է իշխում օտար ժողովրդի վրա, չենք իշխում բնության վրա այնպես, ինչպես բնությունից դուրս գտնվող որևէ մեկը,— այլ որ մենք, ընդհակառակը, մեր մարմնով, արյունով և ուղեղով պատկանում ենք նրան ու գտնվում ենք նրա ներսում, որ մեր ամբողջ տիրապետությունը նրա նկատմամբ այն է, որ մենք, ի տարբերություն մյուս բոլոր էակների, կարողանում ենք ճանաչել նրա օրենքները և ճշտորեն կիրառել դրանք» (Ֆ. Էնգելս, Աշխատանքի դերը կապկի մարդացման պրոցեսում, Ե., 1953, էջ 18):

Մարդու և հասարակության վերաբերմունքը բնության հանդեպ, նրա միջոցների ռացիոնալ օգտագործումը, բնական օրենքների իմացության անհրաժեշտությունը խորապես մտահոգել են Վ. Ի. Լենինին: Նրա նախաձեռնությամբ ընդունվել են մի շարք կարևոր որոշումներ— «Հիմնական օրենք անտառների վերաբերյալ», «Հյուսիսային սառուցյալ օվկիանոսի և Սպիտակ ծովի ձկների ձկնորսարանների ու գազանների որսահանդակների պահպանման մասին», «Բնական հուշարձանների, այգիների և պուրակների պահպանման վերաբերյալ» և այլն: Ժողկոմխորհի նախագահի պաշտոնը վարելիս Վ. Ի. Լենինն ստորագրել է բնության պահպանման և օգտագործման հարցերին նվիրված 24 դեկրետ ու որոշում: Որքա՛ն արդիական են հնչում նրա խոսքերը. «...քանի դեռ մենք չգիտենք բնության օրենքը, նա, գոյություն ունենալով և ներգործելով մեր իմացությունից անկախ և դուրս, մեզ դարձնում է «կույր անհրաժեշտության» ստրուկներ: Հենց որ մենք իմացանք այդ օրենքը, որ ներգործում է (ինչպես հազարավոր անգամներ կրկնում էր Կ. Մարքսը)... մեր գիտակցությունից անկախ,— մենք բնության տիրակալներ ենք» (Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Ե., 1969, էջ 234):

Մեր կուսակցությունն ու կառավարությունը, ղեկավարվելով մարքս-լենինյան գաղափարներով, հսկայական աշխատանք են ծավալում հանուն բնության ռացիոնալ օգտագործման ու պահպանման: Անհերքելի է, որ սոցիալիստական սիստեմի՝ պլանային տնտեսության պայմաններում բնության պահպանման պրոբլեմն ավելի դյուրավ է լուծվում, քան կապիտալիստական տնտեսավարման պայմաններում: Տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում գիտության ու տեխնիկայի առաջընթացը հնարավորություն է ընձեռում առավել արդյունավետ օգտագործելու բնության հարստություններն ու ուժերը՝ ժողովրդի շահերի օգտին:

Դրանով է բացատրվում, որ Սովետական Միությունում և սոցիալիստական մյուս երկրներում շրջակա միջավայրի վիճակը, համեմատած Ամերիկայի Միացյալ Նահանգների, Ճապոնիայի, ԳՖՀ-ի և տնտեսապես զարգացած կապիտալիստական այլ երկրների հետ, շատ ավելի բարվոք է: Զարգացած կապիտալիստական երկրներն աղտոտում են շրջակա միջավայրի 63 տոկոսը, տալով համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ծավալի 53 տոկոսը, Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրները, համապատասխանաբար՝ 15 և 33 տոկոսը:

Հասարակության և նրա շրջակա միջավայրի ներդաշնակ զարգացումը հնարավոր է ապահովել տարբեր միջոցներով: Ստորև կկամենայինք անդրադառնալ շրջակա միջավայրի աղտոտման նվազեցման ու վերացման հնարավորության ու բնական կոմպլեքսների վերափոխման հարցերին: Կենսոլորտի հարաբերական կայունությունն ու դինամիկ հավասարակշռությունը պահպանվում են բնական կենսաքիմիական ու ֆիզիկական պրոցեսների միջոցով: Այսպես, բուսական զանգվածի ասիմիլյացիայի պրոցեսում առաջացած թթվածինը և ազատ ազոտն ու ածխաթթու գազն ապահովում են օդի հարաբերականկայուն բաղադրությունը: Ջրավազանների մաքուր վիճակը պահպանվում է մանրէների ու ցածրակարգ կենդանիների գործունեությամբ և ջրում ընթացող ֆիզիկա-մեխանիկական պրոցեսների միջոցով: Սակայն բնական այդ մեխանիզմները գործում են որոշ սահմաններում, այդ շրջանակներից դուրս դրանց բնականոն գործողությունը դադարում է, այսինքն՝ կորցնում են կանոնավոր-



ման և, հատկապես, ինքնամաքրման հատկությունները: Նման դեպքերում անհրաժեշտ է նպաստել բնական մեխանիզմների անխափան աշխատանքին: Այլ կերպ ասած, արտաքին շրջապատի հանդեպ մարդու գործունեության ինտենսիվության աստիճանը պետք է համապատասխանի բնական համակշռող ռեակցիաների հնարավորությանը: Այդ նպատակով անհրաժեշտ է մշակել ու տնտեսության մեջ արմատավորել արտադրության այնպիսի տեխնոլոգիաներ, որոնք բացառեն կամ նվազեցնեն մթնոլորտի և ջրավազանների աղտոտումը, այնպես կազմակերպել արտադրությունը, որ անօգտագործելի թափոններ չլինեն: Արդյունաբերության որոշ ճյուղերում արդեն կան նման ինքնապարփակ՝ անծուխ և անհոսք արտադրություններ: Կարելի է համաձայնել այն կանխատեսությունների հետ, որ այսօր մարդկությունը կանգնած է արտադրության ինքնապարփակ պրոցեսների անցման նախօրեին: Արտադրության ինքնապարփակ տեխնոլոգիաների մշակման ու արմատավորման համար պահանջվում է ժամանակ. դրանք սերտորեն կապված են գիտության հետագա զարգացման հետ: Սակայն մինչև մնացորդազերծող տեխնոլոգիային անցնելը պետք է գործադրել կազմակերպչական ու տեխնիկական բոլոր միջոցները, որոնք այս կամ այն չափով կնպաստեն շրջակա միջավայրի աղտոտման նվազեցմանն ու չեզոքացմանը: Այս առումով կարևոր նշանակություն ունեն կեղտաջրերի մաքրման սարքերի և փոշեկլանիչ ու գազամաքրման կայանքների տեղադրումը, դրանց անխափան աշխատանքի ապահովումը:

Ժողովրդական տնտեսության տասներորդ հնգամյա պլանում նախատեսված են շրջակա միջավայրի պահպանության հատուկ միջոցառումներ: Բավական է ասել, որ այդ նպատակներին հատկացված է մոտավորապես 11 միլիարդ ռուբլի: Կգործադրվեն մթնոլորտն արտազատվող վնասակար նյութերի դեմ պայքարելու նոր մեթոդներ ու միջոցներ: Միջոցառումներ են նախատեսված ջրային ռեսուրսների կոմպլեքսային և ռացիոնալ օգտագործման ու պահպանման նպատակով: Արդյունաբերության բոլոր ճյուղերում ծրագրվում է ներդնել ջրերի շրջանառու օգտագործման համակարգեր: Ժողովրդական տնտեսության պետական պլանում կոնկրետ հանձնարարականներ կան անբերրի հողերի վերակուլտիվացման վերաբերյալ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Բնության պահպանման ուժեղացման և բնական ռեսուրսների օգտագործման բարելավման» վերաբերյալ 1972 թ. որոշմամբ արգելվում է արդյունաբերական ձեռնարկությունների գործարկումը առանց մաքրման սարքավորումների տեղադրման:

Գիտատեխնիկական հեղափոխությունն անմիջականորեն առնչվում է քաղաքների աճի, արդյունաբերության ու տրանսպորտի հետագա զարգացման հետ: Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացումը (որով պայմանավորված է ազգաբնակչության բարեկեցության մակարդակի բարձրացումը) պահանջում է ինչպես կուլտուրական, նույնպես և բնական էկոլոգիական համակարգերի արդյունավետության բարձրացում. խոսքն ամենից առաջ օգտակար հանածոների կամ շինարարական նյութերի արտահանումից հետո անբերրի կամ ամայի մնացած, այսպես կոչված, «ինդուստրիալ անապատների», ցածրարդյունավետ տարածությունների, աղակալած ու քարքարոտ հողամասերի, ցածրորակ արոտների ու խոտհարքների մասին է:

Բնական կոմպլեքսների ձևափոխումն ու վերակառուցումը, ըստ էության, անխուսափելի են: Ի դեպ, հարկ է հիշեցնել, որ երկրագնդի ցամաքային տարածությունների կեսից ավելին արդեն ձևափոխված է մարդու կողմից, օրինակ, վիթխարի աշխատանքներ են կատարվում հատկապես մեր երկրում: Միջին Ասիայի ու Ղազախստանի ամայի հողազանգվածները սովետական իշխանության տարիներին վերածվել են բամբակի ու բրնձի պլանտացիաների, պտղատու և խաղողի այգիների: Ուշագրավ է որոշ երկրներում ծովահատակի տարածությունների օգտագործումը այգիների, բանջարաբոստանային կուլտուրաների մշակության, ծաղկի տնտեսությունների կազմակերպման նպատակով:

Մեր հանրապետությունում ևս տարվում են բնատարածքների վերափոխ-

*ման զգալի աշխատանքներ— աղուտներում ու ղռերում հիմնվում են խաղողի և պտղատու այգիներ, զգալի գործ է արվում 50-ական թվականներին գյուղատնտեսական օգտագործումից դուրս մնացած, էրոզիայի ենթարկված հողերի արդյունավետ օգտագործման նպատակով:*

*Գիտական շրջաններում լայն ճանաչում է գտել բնական կոմպլեքսների անտրոպոգեն փոփոխության անհրաժեշտության գաղափարը: Սովետական էկոլոգ, ակադեմիկոս Ս. Շվարցն իր հոդվածներից մեկում* (Մարդու էկոլոգիայի հարցերը, «Вопросы философии», 1974, № 9) *այն միտքն է զարգացնում, որ բնական միջավայրի պահպանման ռեալ քաղաքականությունը հանգում է բնական կոմպլեքսների անտրոպոգեն փոփոխությունների անհրաժեշտության ըմբռնման: Բնության պահպանման այս մոտեցումը, նշում է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Ա. Նիչիպորովիչը, ոչ թե դրա նախնական, բնական վիճակի պահպանումն է, այլև բնության ռացիոնալ ձևափոխումը՝ մարդու հարաճուն պահանջների բավարարման նպատակով* («Правда», 1973, № 346):

*Այդ տակավին չի նշանակում պուրակների, արգելավայրերի, արգելոցների և այլ վայրերի վերացում: Ընդհակառակն, կուսական տեսքով այդ կարգի լանդշաֆտների պահպանումը, որպես բնության անձեռնմխելի նմուշների, կարևոր նշանակություն ունի ներկա և ապագա սերունդների համար:*

*Բնական կոմպլեքսների ռացիոնալ վերափոխման, այսինքն՝ բնական լանդշաֆտների փոխարեն անտրոպոգեն կամ կուլտուրական լանդշաֆտների ստեղծման նպատակով անհրաժեշտ են գիտականորեն հիմնավորված հանձնարարականներ: Հակառակ դեպքում այն կարող է հարուցել բացասական, անուղղելի փոփոխություններ: Այսպես, Հայաստանի լեռնային շրջաններում 1950-ական թվականներին վարելահողերի ընդարձակման նպատակով հերկվեց սարալանջերի բնական արոտավայրերի ու խոտհարքների որոշ մասը: Դրա հետևանքը եղավ այդ տարածությունների հողմահարումը, որի պատճառով զգալի հողատարածություններ դարձան գյուղատնտեսության համար անօգտագործելի:*

*Ինչպես նշում է ակադեմիկոս Ս. Շվարցը, անտրոպոգեն լանդշաֆտների ստեղծման գործում շատ կարևոր է այնպիսի համակարգի մշակումը, որը կնպաստի «լավ էկոլոգիական համակարգերի» զարգացմանը: Ըստ հեղինակի, վերջիններս պետք է բավարարեն կերաշղթայի հիմնական օղակների բարձր արդյունավետությունը և նյութաէներգետիկական փոխանակման մեծ արագությունը:*

*Այսպիսով, շատ կարևոր է մարդու էկոլոգիայի նշանակությունը բնական միջավայրի բարելավման, դրա ռեսուրսների խելամիտ օգտագործման ասպարեզում: Սակայն ավելի լայն են այդ երիտասարդ գիտության զարգացման հեռանկարները: Մարդկային հասարակությունը ռեալ հնարավորություն ունի ռացիոնալ կազմակերպելու բնական ռեսուրսների օգտագործումը և գիտականորեն վարելու կենսաոլորտի զարգացումը:*

*Մեր կուսակցությունը շրջակա միջավայրի պահպանումը և դրա բանիմաց վերափոխումը համարում է նյութական արտադրության բարձրացման կարևոր օղակներից մեկը: Ինչպես նշեց Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարին տված ՍՄԿԿ ԿԿ հաշվետու զեկուցման մեջ, «...բնությունը կարելի է օգտագործել տարբեր կերպ: Կարելի է, և մարդկության պատմությունը դրա քիչ օրինակներ չգիտե, իր հետևից թողնել անպտուղ, ամայի, մարդու համար անօգուտ տարածություններ: Բայց կարելի է և պետք է վեհացնել բնությունը, բնությանն օգնել առավել լրիվ բացահայտելու իր կենսական ուժերը: Կա մի այսպիսի հասարակ, բոլորիս հայտնի արտահայտություն՝ «ծաղկող երկիր»: Այդպես են անվանում այն հողերը, որտեղ մարդկանց գիտելիքները, փորձը, նրանց կապվածությունը, սերը բնության հանդեպ, հիրավի, հրաշքներ են գործում: Դա մեր սոցիալիստական ուղին է»:*

---

# ԸՆԴԼԱՅՆԵՆՔ ԱՐԳԱՍԱԲԵՐ ԿՅԱՆՔԻ ՇԱՌԱՎԻՂԸ

Ա. Պ. ՀԱՅՐԻՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ՄԻԱԿ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՆ Է, որտեղ ստեղծված են անհրաժեշտ բոլոր պայմանները մարդու սոցիալական ակտիվության բարձրացման, հարատևման համար: Այս ասպարեզում մեծ խնդիրներ են ծառացել առողջապահության մարմինների և բժշկագիտության առջև: Այդ կենսաբուխ խնդիրներից է հերոնթոլոգիան, որը, դուրս գալով բժշկության շրջանակներից, դարձել է մեր օրերի կարևորագույն պրոբլեմներից մեկը: Այս հանգամանքը բացատրվում է նրանով, որ մեր զարգացած հասարակության մեջ, ծննդի նվազման, բնակչության պրոֆիլակտիկ ծառայությունների բարելավման պայմաններում, զգալիորեն մեծացել է տարեցների թիվը: Վերջին տարիներս բազում հետազոտություններ են նվիրվել հերոնթոլոգիային, սակայն դեռևս անբավարար են ուսումնասիրված դրա սոցիալական պրոբլեմները:

Ձեռնարկելով այս գործին՝ մեր նպատակն է եղել ուսումնասիրել և ցույց տալ մեծահասակների ապրելակերպը, վերհանել նրանց բնակկենցաղային պահանջներն ու հոգեկան-սոցիալական բավարարվածության աստիճանը, ներկայացնել առաջարկություններ՝ նրանց ցույց տրվող անհրաժեշտ օգնության բարելավման միտումով:

Նման ուսումնասիրության համար մշակել ենք վիճակագրական հատուկ ձև— 65 և ավելի տարիք ունեցողների սոցիոլոգիական ուսումնասիրության հարցաթերթիկ, որը պարունակում է 37 հիմնական և բազում երկրորդական հարցեր: Դրա միջոցով ժողովել ենք հետազոտվող պրոբլեմը լուսաբանող փաստական նյութ: Լրացվել է 7.780 հարցաթերթիկ: Ընդհանրացումների համար օգտագործել ենք ինչպես գյուղում, նույնպես և քաղաքում ժողոված նյութերը: Ուսումնասիրության օբյեկտը և սոցիալական ինֆորմացիայի աղբյուրը եղել է քաղաքի կամ գյուղի 65 և ավելի տարիք ունեցող բնակիչը, որը հարցաթերթիկը լրացնելիս չի աշխատում, թոշակառու է: Ստացված նյութը հաշվարկվել է էլեկտրոնային հաշվիչ մեքենայով:

Անկետայի առաջին հարցերի միջոցով պարզվում է հարցվողի բնակության վայրը, տարիքը, սեռը, ազգությունը, սոցիալական վիճակը, կրթությունը:

Հարցերի հաջորդ խումբը վերաբերում է ընտանեկան վիճակին, երեխաների թվին, ընտանիքի կազմին, ո՛ւմ հետ է ապրում, ապրուստի միջոցներին: Ապա պարզվում է, թե թոշակառուն երբվանի՛ց է սկսել իր աշխատանքային գործունեությունը և ե՛րբ է դադարեցրել, աշխատանքային ինչպիսի՛ պարգևներ ունի, ընտրական ինչպիսի՛ օրգաններում է ընտրվել, ո՛ր հասարակական խմբին է պատկանել իր վերջին աշխատավայրում: Մի շարք հարցերի պատասխանները ցույց են տալիս թոշակառուի հոգեվիճակը աշխատանքային ակտիվ գործունեությունը դադարեցնելուց հետո. ինչպե՞ս է անցկացնում իր ազատ ժամանակը, կկամենա՞ր վերստին աշխատել՝ դարձյալ նույն կոլեկտիվում: Հաջորդող հարցերի միջոցով պարզվում են ընտանիքի բյուջեն, բնակ-կենցաղային պայմանները, ստացվող լրագրերի, ամսագրերի թիվը և այն, թե հարցվողն ինքը ինչպե՛ս է գնահատում ընտանիքի կենսապայմաններն ու փոխհարաբերությունները: Հարցաթերթիկի այդ բաժնում կան հարցեր, որոնց միջոցով երևան է հանվում ընտանիքի մյուս անդամների վերաբերմունքը մեծահասակի նկատմամբ, պարզվում է, թե ինչպե՛ս է նա զգում իրեն հասարակության մեջ, ամենից ավելի ո՛ւմ հետ կուզենար հաղորդակցվել այդ տարիքում և ինչպե՛ս են վերաբերվում իր հետ երբեմնի ընկերները:

Հարցում է արվում նաև այն մասին, թե ինչպե՛ս է գնահատում իր հոգևոր կյանքը տարեց մարդը. ամենից շատ ինչի՞ կարիք ունի, ի՞նչ կարող է նա տալ իր ընտանիքին և հասարակությանը, ինչպիսի՞ հասարակական օգտակար աշխատանք կարող է կատարել այժմ: Եզրափակիչ մասում հարցվողը պատասխանում է, թե ի՛նչ կարծիք ունի մեր երկրի թոշակառուների և հասակավոր մարդկանց վիճակի մասին, նշում իր պահանջներն ու ցանկությունները դրա բարելավման վերաբերյալ:

Ուսումնասիրված ողջ համակազմը, ամփոփիչ թվերով հանդերձ, վիճակագրական աղյուսակներում ներկայացված է ըստ գյուղի և քաղաքի բնակչության առանձին-առանձին, ինչպես և տարբերակված է ըստ սոցիալական խմբերի (կոլտնտեսականներ, բանվորներ, ծառայողներ և այլն):

Հանրագումարի բերված աղյուսակային նյութը դասակարգված է ըստ հասակի ու սեռի, ազգության, կրթության, ընտանեկան վիճակի, ընտանիքի կազմի և այլն: Մշակված փաստական նյութն ամփոփված է 15 ընդհանուր և 50 թեմատիկ աղյուսակներում, ինչպես և 53 դիագրամներում, որոնց տվյալները համակողմանի արտացոլում և բնութագրում են ուսումնասիրվող հարցի տարբեր կողմերն ու առանձնահատկությունները:

Հանգամանորէն ուսումնասիրված են թոշակների բարձրացման գործող կարգը, խնայողությունների չափը և այլն:

Ըստ աշխատանքային ստաժի— 5 տոկոսն ունի մինչև 20 տարվա ստաժ, 8,7-ը՝ 21—30, 31,8-ը՝ 31—40, 54,4-ը՝ 41 և ավելի տարվա ստաժ:

Ինչպես ցույց են տալիս մեր հետազոտության արդյունքները, հարցվողների ողջ համակազմի յուրաքանչյուր չորրորդ մարդը (26,9 տոկոսը) երկարամյա բարեխիղճ հանրային աշխատանքի համար արժանացել է աշխատանքային պարգևների, 4,7 տոկոսն ընտրվել է տեղական, քաղաքային, ինչպես և ՍՍՀՄ և ՀՍՍՀ Գերագույն սովետներում:

Բավական հետաքրքրական են ինչպե՞ս եք հարմարվել աշխատանքային գործունեության ընհատման պայմաններին հարցի պատասխանները. 53,9 տոկոսը նշել է արագ (ընդ որում, գյուղում՝ 71,9, քաղաքում՝ 24,2 տոկոսը), 30,2 տոկոսը՝ դանդաղ (համապատասխանաբար՝ 14,7 և 55,8), 8,4 տոկոսը՝ դժվարությամբ (5,8 և 18,8), իսկ 7,5 տոկոսը պատասխանել է՝ ոչ մի կերպ չեմ հարմարվում (7,6 և 7,2):

Նրանց առողջական վիճակի մասին (թոշակի անցնելուց հետո) ստացվել են հետևյալ տվյալները. 60,9 տոկոսը նշել է բավարար (ընդ որում, գյուղի բնակչության 72,7, քաղաքայինի՝ 43,0 տոկոսը). 16,5 տոկոսը՝ ավելի լավ, քան մինչ այդ (23,6 և 4,8), 14,2-ը՝ ավելի վատ, քան մինչ այդ (1,3 և 35,5), 3,3 տոկոսը պատասխանել է՝ անփոփոխ (2,3 և 5,0), 1,5-ը՝ վատ (1,1 և 11,6):

Կցանկանայի՞ք կրկին աշխատել ձեր կոլեկտիվում հարցին դրական են պատասխանել հարցվողների 80,8 տոկոսը և միայն 19,2 տոկոսը՝ բացասական (գյուղի բնակիչների 84,4, քաղաքացիների՝ 74,9 տոկոսը): Դրական պատասխանողների 82,3 տոկոսը բանվորներ են, 65,1-ը՝ ծառայողներ, 93,3-ը՝ կոլտնտեսականներ, 68,1-ը՝ և ուրիշներ:

Հարցվող թոշակառուների 52,9 տոկոսը պատասխանել է, որ իր ժամանակը լավ է անցկացնում (գյուղաբնակների՝ 69,9, քաղաքաբնակների՝ 25,4 տոկոսը):

Ո՞ւմ հետ եք ամենից ավելի հաղորդակցվում հարցին մեր ուսումնասիրած համակազմի 86,1 տոկոսը պատասխանել է՝ ընտանիքի անդամների, 5,8-ը՝ հարազատների, 1,5-ը՝ հարևանների, 4,3-ը՝ հասակակից թոշակառուների, 1,4-ը՝ տարբեր անձանց, 0,9-ը՝ ոչ-ոքի:

Այժմ ո՞ւմ հետ կուզեիք ամենից շատ հանդիպել հարցին պատասխանել են. ընտանիքիս մերձավորների հետ՝ 89,4 տոկոսը, հարազատների՝ 4,5, նախկին աշխատանքային ընկերների՝ 5,0, ոչ-ոքի՝ 1,1 տոկոսը:

65 և ավելի տարիք ունեցողներին ուղղված ի՞նչ կարող եք անել ձեր ընտանիքի բարեկեցության ու կատարելացման համար հարցին պատասխանել են. 47,1 տոկոսը՝ օգնել ամենօրյա կենցաղային հարցերում, 5,3-ը՝ մասնակցել երեխաների դաստիարակությանը, խնամել նրանց, 5,3-ը՝ օգնել երիտասարդ ընտանիքի կայունացմանը, 4,4-ը՝ զերծ պահել ընտանիքի անդամներին վնասակար սովորություններից...

Ինչպիսի՞ հանրօգուտ աշխատանք կկամենայիք կատարել հարցին պատասխանել են. 22,3 տոկոսը կոնսուլտանտ՝ նախկին աշխատավայրում (գյուղում՝ 18,8, քաղաքում՝ 27,8 տոկոսը), 22,0-ը՝ մասնակցել հասարակական կազմակերպությունների գործունեությանը (2,9 և 51,5), 25,9-ը՝ կարող եմ և ցանկանում եմ, բայց չգիտեմ ինչպիսի (19,2 և 36,8), 18,3-ը՝ ոչինչ չեմ կարող և չեմ կամենում (համապատասխանաբար՝ 13,0 և 27,0):

Հարցաթերթիկի վերջին հարցն է ձեր պահանջներն ու ցանկությունները թոշակառուների վիճակի բարելավման վերաբերյալ. ծերության թոշակի չափերի բարձրացման մասին նշել է ուսումնասիրվող համակազմի 89,5 տոկոսը (գյուղական բնակչության՝ 95,5, քաղաքային բնակչության՝ 79,8 տոկոսը), 27,7-ը առաջարկում է ստեղծել թոշակառուների և աշխատանքի վետերանների ընկերություն (համապատասխանաբար՝ 10,1 և 43,4), 31,9-ը առաջարկում է թոշակառուներին լայնորեն ներգրավել հանրօգուտ աշխատանքում (16,4 և 57,5), 28,0-ը՝ առաջարկում է թոշակառուների և աշխատանքի վետերանների համար ստեղծել հատուկ ակումբներ (5,9 և 64,5), 29,8-ը՝ կազմակերպել այդ տարիքի անձանց կյանքն ու հետաքրքրասիրությունները արտացոլող պարբերականներ (7,0 և 65,8), 39,7-ը առաջարկում է ստեղծել «առողջության գոտիներ» (10,0 և 88,7): Ժողովրդական համալսարանների կազմակերպման



անհրաժեշտության մասին են նշել 12,7 տոկոսը, ընդ որում, քաղաքաբնակների՝ 26,5, գյուղաբնակների՝ 4,3 տոկոսը:

Ծանոթանալով բերված տվյալներին՝ հանգում ենք այն եզրակացության, որ դրանք հետաքրքրական են ո՛չ միայն բժշկական և առողջապահական մարմինների համար. դրանք ընդգրկում են մարդկանց կենսապայմաններին, ապրելաձևին վերաբերող հարցերի առավել լայն շրջանակ: Այդ հարցերի մեծ մասը վերաբերում է բժշկության բնագավառին:

Անկետային հարցմամբ, սոցիոլոգիական ուսումնասիրության միջոցով, համակողմանի վերհանելով ու ներկայացնելով բնակչության այդ խմբի տարիքասեռային կազմը, ընտանեկան վիճակը, հոգեկան աշխարհը և ֆիզիկական վիճակը, նյութական և բնակ-կենցաղային պայմանները, կապը շրջապատի հետ՝ կարելի է ցույց տալ մեր երկրում հասակավոր մարդկանց համար ստեղծված սոցիալ-տնտեսական բարեկեցիկ կյանքը: Եվ, ինչպես հայտնի է, մարդկանց առողջության պահպանության, երկարակեցության համար ամենից առաջ անհրաժեշտ են մեր սոցիալիստական կարգի էությունից բխող սոցիալական բարեկեցության՝ պետականորեն կազմակերպված սոցիալ-տնտեսական համապատասխան միջոցներ:

Հաշվի առնելով ժամանակակից դեմոգրաֆիական վիճակը, հասակավորների ավելի ու ավելի աճող թիվը՝ անհրաժեշտ է հերիատրիան դարձնել առողջապահության մասսայական ծառայություններից մեկը:

Ուսումնասիրությամբ ստացված տվյալները ցույց են տալիս, որ մեծահասակների գերակշիռ մասը ցանկանում է լիաբուռն ապրել, ավելի շատ հաղորդակցվել ընտանիքի մերձավորների հետ. ուստի, հասարակությունը պետք է հոգա, որ նրանք մենակ չմնան, չապրեն մենության զգացումը: Հնարավորության սահմաններում ցանկալի է, որ հայրերն ու որդիները համատեղ ապրեն, որը, անտարակույս, բարեբար ազդեցություն կգործի տարեց մարդկանց հոգեկան աշխարհի վրա և կնպաստի ողջ ընտանիքի բարեկեցությանը: Միանգամայն ճիշտ կլինի կառուցվելիք շենքերի բնակարաններում նախատեսել առանձին սենյակներ ծերերի համար:

Ուսումնասիրությունները վկայում են, որ աշխատանքային գործունեությունը դադարեցնելուց հետո կյանքի նոր պայմաններին դժվարությամբ են հարմարվում մեծ քաղաքների առավել ակտիվ աշխատողները: Նման պարագաներում բժիշկները պետք է նախազգուշացնեն մարդկանց ստրեսային երևույթներից, որպիսիք կարող են պատճառ դառնալ լարվածության, նյարդային հավասարակշռության խախտման, իսկ հետագայում նաև՝ սոմատիկ (մարմնական) հիվանդությունների, որոնք բնորոշ են այդ տարիքի մարդկանց և հանգեցնում են նրանց ընդհանուր վիճակի ծանրացման՝ դրանից բխող բոլոր հետևանքներով:

Նկատի ունենալով այն մեծ չարիքը, որ մարդու օրգանիզմին կարող են պատճառել վնասակար սովորույթները— ծերության հասակում ծխելը, սպիրտային խմիչքների օգտագործումը (որը մեր տվյալներով հաճախ է նկատվում տարեցների մոտ), բուժաշխատողները պետք է առավել ծավալեն սանիտարալուսավորական պրոպագանդան՝ հասակավորների շրջանում նման վնասակար կենցաղային սովորույթները նվազագույնի հասցնելու նպատակով:

Կարևորելով տարեց մարդկանց համար «առողջության գոտիների» նշանակությունը և այն փաստը, որ ուսումնասիրված համակազմի մեծ մասը (հատկապես քաղաքաբնակների՝ 88,7 տոկոսը) առաջարկում է ստեղծել նման գոտիներ, առողջապահական մարմինները պետք է պատշաճ ուշադրություն նվիրեն այս պահանջին:

Հաշվի առնելով ծերունական պաթոլոգիայի հոգեբանությունը և կազմակերպական, կանխարգելիչ ու բուժիչ հատուկ միջոցառումների անհրաժեշտությունը, ինչպես և նկատի ունենալով բնակչության շրջանում այդ տարիքի անձանց այժմյան մեծ թիվն ու հետագա ավելացումը, առողջապահության մինիստրությունում հարկ է նրանց համար կազմակերպել հատուկ բաժին, ինչպես և կոնսուլտացիաներ՝ տեղերում: Այդ կյանքի թելադրանքն է, արդի զարգացող հասարակության դեմոգրաֆիական պրոցեսների արգասիքը, որը և հնարավոր է իրագործել մեր առողջապահության նյութատեխնիկական հզոր բազայի շնորհիվ:

Ժամանակակից հասարակության մեջ կազմավորվում է թոշակառուների սոցիալ-դեմոգրաֆիական մի առանձին բազմամարդ խումբ, որն ունի իրեն հատուկ նյութական ու հոգևոր պահանջմունքները, որոնց բավարարումը սոցիալիստական հասարակության օրինաչափություններից է, հասարակություն, ուր մեր երկրի քաղաքացիները վայելում են ՍՍՀՄ Սահմանադրությամբ և սովետական օրենքներով հռչակված ու երաշխավորվող սոցիալ-տնտեսական, քաղաքական և անձնական բոլոր իրավունքներն ու ազատությունները:

Վերը շարադրվածից հետևում է, որ կան դեռևս կենսական նշանակություն ունեցող շատ հարցեր, որոնք աստիճանաբար լուծվում են մեր երկրում: Մասնավորապես այդ են վկայում ժողովրդի բարեկեցության բարձրացման՝ տասներորդ հնգամյա պլանով նախատեսված խնդիրները:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ԶՈՐԱՎԱՐԸ

(Ի. Ք. ԲԱՂՐԱՄՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Պ. Ա. ՌՈՏՄԻՍՏՐՈՎ**
Զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ

ԵՐԲ ԽՈՐՀՈՒՄ ԵՍ անցած պատերազմում մեր զորքերի տարած հաղթանակի խոր ակունքների մասին, հայացքիդ առջև հառնում է լենինյան կուսակցությունը՝ իր պատմական հեռատեսությամբ: Այս համառոտ ակնարկում վերոհիշյալ անսպառ թեմայից ես կշոշափեմ, բնականաբար, լոկ մի բնորոշ հանգամանք, որն առանձնապես մոտ է ինձ՝ որպես ո՛չ միայն մարտական պրակտիկայի , այլև ռազմական գիտությանը նվիրված մարդու:



Խոսքն այն մասին է, որ Լենինն ու նրա զինակիցները լիովին ըմբռնում էին բանվորագյուղացիական բարձրորակ զինվորական կադրերի աճեցման անհրաժեշտությունը, հիշելով, որ սովետական զորապետները միայն ռազմագիտության գագաթների նվաճմամբ կկարողանան զորքերի մարտական ղեկավարման արվեստի հարցերում գերազանցել իմպերիալիստական բանակի ամենաճկուն զորահրամանատարներին:

Այս մտքի ամենավառ ու համոզիչ հաստատումն են Ի. Ք. Բաղրամյանի կյանքն ու մարտական ուղին: Խորամուխ լինելով նրա նախապատերազմյան կենսագրության էջերում՝ ակնբախորեն տեսնում ես, թե որքա՜ն շատ ու ինչպիսի՜ համառությամբ էր սովորում նա՝ ձգտելով ըմբռնել ռազմական արվեստի բոլոր գաղտնիքները:

...1925 թվական. Լենինգրադի բարձրագույն հեծելազորային դասընթացներում նա սովորում է Սովետական Միության ապագա մարշալներ Գ. Կ. Ժուկովի, Կ. Կ. Ռոկոսովսկու և Ա. Ի. Երյոմենկոյի հետ:



...1931 թվական. սովորում է կարմիր բանակի բարձր հրամկազմի կատարելագործման դասընթացներում:

...1931—1934 թվականներ. սովորում է Մ. Վ. Ֆրունզեի անվան ակադեմիայում՝ Բ. Մ. Շապոշնիկովի և Դ. Մ. Կարբիշևի մոտ: Իվան Քրիստափորովիչը Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիա եկավ այն թվականին, երբ ես բախտ ունեցա ավարտելու այն:

1936—1940 թվականներ. գլխավոր շտաբի ակադեմիայում սովորում և դասավանդում է Ա. Մ. Վասիլևսկու, Ա. Ի. Անտոնովի, Ն. Ֆ. Վատուտինի, Ա. Ա. Գովորովի, Մ. Վ. Զախարովի և ապագա այլ պանծալի զորավարների հետ միասին: Հենց ուսումնառության տարիներին էլ դրսևորվեց Ի. Ք. Բաղրամյանի ռազմական փայլուն տաղանդը: Նա ձեռք բերեց տեսական այնպիսի պաշար և օպերատիվ մտքի այնպիսի հասունություն, որոնք նրան հնարավորություն ընձեռեցին իր անկրկնելի էջը գրելու ֆաշիզմի դեմ մեր բանակի տարած հաղթանակի պատմության մեջ:

Ուսման տենչն էլ կանխորոշեց Իվան Քրիստափորովիչի ձգտումը՝ առավել բոլորանվեր ծառայել սոցիալիստական հայրենիքին, մի հանգամանք, որը, իր հերթին, պայմանավորված էր ամենավաղ տարիների նրա կենսագրության շատ հանգամանքներով ու իրադարձություններով:

Ադրբեջանի Շամխորի գավառի Զարդախլու գյուղի աղքատ գյուղացու ընտանիքից է ապագա զորավարի հայրը՝ Խաչատուր Բաղրամյանը: Կարիքը նրան ստիպել է դեռ երիտասարդ հասակում հեռանալ գյուղից: Նա եղել է սևագործ բանվոր Քերբեքի պղնձահանքերում, ապա աշխատել Անդրկովկասյան երկաթուղում: Այստեղ նա գրագիտություն է ստացել բանվորական խմբում, դարձել արտելի ավագ, այնուհետև՝ ճանապարհային ծառայության տասնապետ: Այստեղ Վանյա Բաղրամյանն իր ամբողջ մանկությունն ու պատանեկան տարիներն անց է կացրել բանվորների երեխաների շրջապատում, որոնց ընտանիքներն իրենցի պես մշտական կարիքի մեջ էին: Այս ամենը պատանու հոգում առաջացնում էր հարազատության զգացում բանվորների, հասարակ մարդկանց նկատմամբ. այդ զգացումը տարեցտարի մեծանում էր:

Վաղ հասակում ունեցած բազմակողմանի փայլուն ընդունակությունները և կամքի ուժն էին միայն, որ պրոլետարական միջավայրից ելած և այն էլ՝ «այլազգի» երիտասարդին հնարավորություն ընձեռեցին միջնակարգ կրթություն ստանալու ցարական Ռուսաստանի պայմաններում:

Երբ նա ավարտեց Թիֆլիսի երկաթուղային տեխնիկական ուսումնարանը, արդեն 1915 թվականն էր, առաջին համաշխարհային պատերազմի բուռն շրջանը: Կովկասյան ռազմաճակատում ռուսական բանակը մարտնչում էր սուլթանական Թուրքիայի դեմ: Հիշարժան 1915 թվականին էր հենց, որ թուրքական ռեակցիան իրականացրեց հրեշավոր ակտը՝ գենոցիդը, բնաջնջեց Արևմտյան Հայաստանի տերիտորիայում ապրող մեկուկես միլիոն հայ, նաև՝ կանանց, ծերերի ու երեխաների: 18-ամյա պատանին, դաժանների հանդեպ ատելությամբ լի և ձգտելով իր ուժերը ներածին չափ ծառայել հարազատ ժողովրդին գազազած ջարդարարներից պաշտպանելու գործին, կամավոր մտավ ռուսական բանակի շարքերը: Քերմանշահի և Քասրիշիրինի մոտ սուլթանական զորքերի դեմ մղված մարտերում շարքային Իվան Բաղրամյանը ցուցաբերեց քաջություն, արիություն և մարտական այլ հիանալի հատկություններ: Այդ ամենի համար նա գործուղվեց Թիֆլիսի պրապորշչիկների դպրոցը, որն ավարտելուց հետո, 1917 թվականի սեպտեմբերին, ուղարկվեց կովկասյան ռազմաճակատ, գործող բանակի հայկական 3-րդ հրաձգային գունդ (Պարսկաստան, Ուրմիա լճի շրջանը): Այստեղ էր նա, երբ հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Նա ընտրվել էր վաշտային ու գումարտակային զինվորական կոմիտեներում և ակտիվ աշխատում էր: Շուտով 3-րդ գունդը փոխադրվեց Հայաստան, ուր ներխուժել էին թուրքական զորքերը: 1917 թվականի դեկտեմբերին Իվան Քրիստափորովիչը նոր կազմավորված հայկական 1-ին հեծյալ գնդի դասակի հրամանատարն է, որի կազմում նա մարտնչում է թուրքերի դեմ մինչև 1918 թվականի հուլիսը:

Այդ ժամանակ, ի դժբախտություն Անդրկովկասի աշխատավորության,

նացիոնալիստական կուսակցությունները, ԱՄՆ-ի և Անտանտի երկրների իմպերիալիստների դրդմամբ, կազմավորեցին, այսպես կոչված՝ Անդրկովկասյան կոմիսարիատը: Զավթելով իշխանությունը՝ վրաց մենշևիկները, ադրբեջանցի մուսավաթականները և հայ դաշնակները ծավալեցին հակահեղափոխական կատաղի գործունեություն: Ի նշան բողոքի ընդդեմ իմպերիալիզմի այդ դրածոների պրովոկացիոն գործողությունների, սկսվեց ռուսական զորքերի տարերային նահանջը Կովկասյան ռազմաճակատից: Դրան հետևեց թուրքական հրոսակների ուխտադրուժ ներխուժումը Անդրկովկաս: Հայ ժողովրդի գլխին կախվեց համազգային աղետի՝ ամբողջական բնաջնջման, մահացու սպառնալիքը: Այն գունդը, որտեղ ծառայում էր Բաղրամյանը, մեխանիկորեն ներառվեց բուրժուական Հայաստանի բանակի կազմի մեջ: Շուտով Ի. Ք. Բաղրամյանը մասնակցեց Սարդարապատի նշանավոր ճակատամարտին, որի շնորհիվ թուրքական օկուպանտները դուրս շպրտվեցին Արարատյան դաշտից:

1920 թվականի մայիսին, լինելով սուսերակիրների էսկադրոնի հրամանատար, Ի. Ք. Բաղրամյանն ակտիվ մասնակցում է Ալեքսանդրապոլի աշխատավորների ապստամբությանը՝ ընդդեմ դաշնակցական կառավարության: Ապստամբության արյունահեղ ճնշումից հետո նա հեռացավ Ալեքսանդրապոլից, բայց ճանապարհին ձերբակալվեց ու նետվեց Ալեքսանդրապոլի ամրոցը: Այստեղ նա ծանր ամիսներ անցկացրեց, գտնվելով դաշնակների կառավարության՝ բոլշևիզմի դեմ պայքարելու նպատակով կազմված արտակարգ դատարանի հետաքննության տակ: Հետագայում, ծառայակից ընկերների ջանքերով, նա ազատվում է կալանքից, բայց հեռացվում էսկադրոնի հրամանատարի պաշտոնից և հարկադրաբար նշանակվում տնտեսական աշխատանքի: Նա բանակ վերադարձավ միայն այն ժամանակ, երբ 1920 թվականի աշնանը թուրքերը նորից ներխուժեցին Հայաստանի սահմանները: 1920 թվականի սեպտեմբեր-հոկտեմբերին նա կրկին, իբրև դասակի հրամանատար, մասնակցում է թուրքական զորքերի դեմ մղվող մարտերին:

1920 թվականի նոյեմբերին, երբ հայ ժողովուրդը կանգնած էր ֆիզիկական լիակատար բնաջնջման եզրին, կարմիր բանակի զորամասերի աջակցությամբ Հայաստանի բանվորներն ու գյուղացիները տապալեցին դաշնակներին և հաստատեցին սովետական իշխանություն: Հայկական 1-ին հեծյալ գունդը, որտեղ Իվան Քրիստափորովիչը շարունակում էր իր ծառայությունը, որպես դասակի հրամանատար, մտավ հայկական կարմիր բանակի կազմի մեջ: Այդ գնդի կազմում Բաղրամյանը քաջաբար մարտնչում էր Վրաստանի մենշևիկների և Զանգեզուրի լեռներում բույն դրած դաշնակցական մնացուկների դեմ:

1924 թվականին (ի հավերժացումն այն բանի, որ 1920 թվականի մայիսին գունդը մասնակցել էր դաշնակների դեմ Ալեքսանդրապոլում (Լենինականում) կազմակերպված ապստամբությանը) հայկական 1-ին հեծյալ գունդը վերանվանվեց Լենինականի հեծելազորային գունդ:

1923 թվականի աշնանից մինչև 1931 թվականի մայիսը, ուսման նպատակով եղած ոչ մեծ ընդհատումներով, գրեթե յոթ տարի, այդ փառապանծ զորամասի հրամանատարն է եղել Իվան Քրիստափորովիչը: Գնդի հրամանատար լինելը միշտ էլ համարվել է կարևորագույն աստիճան ռազմական արվեստի տիրապետման ճանապարհին: Գ. Կ. Ժուկովը գրել է. «Զորամասի այն հրամանատարը, որը լավ է յուրացրել գնդի կառավարման սիստեմը և ի վիճակի է ապահովելու դրա մշտական մարտական պատրաստությունը, միշտ էլ առաջավոր զորապետ կլինի հրամանատարական հետագա բոլոր աստիճաններում ինչպես խաղաղ, նույնպես և պատերազմական ժամանակ»[1]:

Ես արդեն համառոտակի հիշատակել եմ զինվորական այն բազմաթիվ համալսարանները, որ անցել է Ի. Ք. Բաղրամյանը. միայն ավելացնեմ, որ Ֆրունզեի անվան ակադեմիան ավարտելուց հետո նա հաջողությամբ վարում է Բլինովի անվան 5-րդ հեծելազորային դիվիզիայի շտաբի պետի պաշտոնը:

[1] Г. К. Жуков. Воспоминания и размышления. т. I, издательство АПН, М., 1974, стр. 85.



Պաշտպանության ժողկոմի որոշմամբ այստեղից էլ նա գործուղվում է նոր բացված գլխավոր շտաբի ակադեմիան:

1940 թվականի սեպտեմբերին, իր իսկ խնդրանքով, Բաղրամյանն ազատվում է Գլխավոր շտաբի ակադեմիայի ավագ դասախոսի պաշտոնից և նշանակվում Կիևյան հատուկ զինվորական օկրուգի 12-րդ բանակի օպերատիվ բաժնի պետ, իսկ նույն թվականի դեկտեմբերին՝ այդ օկրուգի օպերատիվ բաժնի պետ: Այս պաշտոնում եղած ժամանակ նա մասնակցել է հրամանատարական-շտաբային մի շարք օպերատիվ զորախաղերի ու զինավարժությունների մշակմանն ու անցկացմանը, ինչպես նաև օկրուգի զորքերով ՍՍՀՄ պետական սահմանը պաշտպանելու պլանի մշակմանը:

Հայրենական մեծ պատերազմի սկզբում Ի. Ք. Բաղրամյանն ստանձնեց Հարավ-արևմտյան ռազմաճակատի օպերատիվ բաժնի պետի— շտաբի պետի տեղակալի պաշտոնը: Հենց այն ժամանակ, երբ մեր հայրենիքի երկնակամարում խտանում էին մահացու վտանգի ամպերը, 1941 թվականի օգոստոսին Հարավ-արևմտյան ռազմաճակատի շտաբի կուսկազմակերպությունը Բաղրամյանին ընդունեց ՀամԿ(բ)Կ անդամ, իսկ ՍՍՀՄ Ժողկոմխորհի որոշմամբ այդ նույն ամսին նրան շնորհվեց գեներալ-մայորի զինվորական կոչում:

Երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, Ի. Ք. Բաղրամյանն արդեն պատրաստված զորապետ էր: Չէ՛ որ գիտելիքներով կատարելապես զինված և լենինյան գործի ճշմարտացիության՝ բոլշևիկյան կրքոտ համոզվածությամբ միայն կարելի էր հաղթանակի հույս ունենալ:

Վերլուծական խոր մտքով աչքի ընկնող իր բազմաթիվ գիտական հոդվածներից մեկում Իվան Քրիստափորովիչն իրավամբ ընդգծել է. «Մարդկության պատմության մեջ ոչ մի նվաճող դեռ երբեք չի ստեղծել իր քանակով այնպիսի վիթխարի, տեխնիկական զինվածությամբ այնպիսի բարձր պրոֆեսիոնալ բանակներ, ինչպիսին է գերմանաֆաշիստական վերմախտը՝ գերմանական մոնոպոլիստական կապիտալի այդ զավակը, որին նրանք սնել են ԱՄՆ-ի ու եվրոպական միլիոնատերերի անմիջական ու շռայլ օգնությամբ ու աջակցությամբ»:

Պատերազմի առաջին իսկ անհավատալիորեն ծանր շաբաթներին Իվան Քրիստափորովիչի մարտական փորձը, բազմակողմանի գիտելիքները, հրամանատարական ու շտաբային աշխատանքում հմտացած զորապետի նրա տաղանդը համակողմանի դրսևորվեցին Հարավ-արևմտյան ռազմաճակատում: Կիևի մոտ մղված մարտերում ավելի քան երկու ամսով կասեցվեց թշնամու «Հարավ» բանակախմբի՝ մի քանի անգամ գերազանցող ուժերի հարձակումը, ուժեր, որոնք մեծ օժանդակություն էին ստանում հարևաններից, այդ թվում՝ Գուդերիանի տանկային արմադայից. Գուդերիանը Գերմանիայում ճանաչված էր որպես տանկային սեպաձև խոր հարված հասցնելու տեսաբան ու պրակտիկ: Այսպիսով, Իվան Քրիստափորովիչը մեծ ավանդ ներդրեց հերոս քաղաք Կիևի պաշտպանության գործում:

Բայց Բաղրամյանի կոչումը, այնուամենայնիվ, ոչ թե պաշտպանությունն էր, այլ հարձակումը: Հարավ-արևմտյան ռազմաճակատն առաջին խոշոր հարձակողական օպերացիան կատարեց նրա նախաձեռնությամբ, քառասունմեկի նոյեմբերի սկզբին Ռոստովի մոտ, Կլեյստի տանկային բանակի դեմ:

«Իրադրության մանրակրկիտ վերլուծությունն ինձ ավելի ու ավելի էր համոզում, որ պասիվ պաշտպանությունը մեր վիճակում հավասարազոր էր դատապարտվածների՝ մահվան սպասելուն,— գրել է Բաղրամյանն իր Այսպես է սկսվել պատերազմը գրքում:— Մոտավորապես հաշվելով հարձակողական օպերացիայի մեր հնարավորությունները, ռազմաճակատի շտաբի պետ գեներալ-լեյտենանտ Պ. Ի. Բոդինին ես խնդրեցի այդպիսի առաջարկության մասին հայտնել Հարավ-արևմտյան ուղղության զորքերի գլխավոր հրամանատարին»:

Իվան Քրիստափորովիչը Կլեյստի 1-ին տանկային բանակին հասու հարված հասցնելու պլանի մշակման ու իրականացման գործում ներդրել է լարված աշխատանք ու հնարամտություն, սթափ հաշվարկ ու խելացի հանդգնություն,

անցկացրել անքուն գիշերներ։ Դրա արդյունքը գերազանցեց բոլոր սպասելիքները. Կլեյստը ծանր պարտություն կրեց։ Նրա շատ միավորումներից, այդ թվում և ՍՍ-ի գովաբանված «Վիկինգ» դիվիզիայից մնացին լոկ համարներն ու անունները։ Իրադարձությունների այդպիսի շրջադարձից կատաղած՝ «ֆյուրերը» պաշտոնանկ արեց «Հարավ» բանակախմբի հրամանատար գեներալ-ֆելդմարշալ Ռունդշտեդտին և նրա փոխարեն նշանակեց 6-րդ բանակի հրամանատար ֆոն Ռեյխենաուին... Իսկ սովետական զորքերն այդ օպերացիայի շնորհիվ ազատագրեցին Դոնի մարգարիտը՝ Ռոստովը և թշնամու խմբավորմանն ստիպեցին զգալի նահանջ կատարել։

Այդ ժամանակ ինձ վիճակված էր 8-րդ տանկային բրիգադով չափազանց ծանր մարտեր մղել մայրաքաղաք խցկվող հակառակորդի դեմ։ Ռոստովի գրավումը մեզ համար եղավ ոգեշնչող օրինակ, գրավական այն բանի, որ Մոսկվայի մոտ ևս հիտլերականները շուտով կջախջախվեն։

Ռոստովի մոտ կրած պարտության համեմատությամբ իր նշանակությամբ փոքր չէր նաև հիտլերականների պարտությունը Ելեցի հարձակողական օպերացիայի շնորհիվ, որտեղ Ի. Ք. Բաղրամյանը շարժական խմբի շտաբի պետ էր. այդ խումբը ղեկավարում էր ռազմաճակատի հրամանատարի տեղակալ գեներալ Ֆ. Յա. Կոստենկոն։ Այս երկու օպերացիաների իրականացմանը մատուցած ծառայությունների համար Ի. Ք. Բաղրամյանը 1941 թվականի դեկտեմբերին արժանացավ գեներալ-լեյտենանտի կոչման։

Քառասուներկուսի հուլիսին գեներալ-լեյտենանտ Բաղրամյանը նշանակվեց 16-րդ բանակի հրամանատար։ Այդ բանակը Ժիզդրայի շրջանում մարտական հարձակողական հաջող գործողությունների համար շուտով վերանվանվեց 11-րդ գվարդիական բանակ, իսկ հրամանատարն ստացավ զորավարական իր անդրանիկ շքանշանը՝ Կուտուզովի 1-ին աստիճանի շքանշանը։

Այնուհետև չեմ կարող չհիշատակել այն սքանչելի օրը, երբ երկուսս էլ՝ ես ու Իվան Քրիստափորովիչը, դարձանք, ինչպես ասում են՝ օրվա հերոս։ Ես նկատի ունեմ Կուրսկի մեծ ճակատամարտի գագաթնակետը, 1943 թվականի հուլիսի 12-ը։ Այն ժամանակ Բաղրամյանի 11-րդ գվարդիական բանակը հատու սրի նման մահացու և հանկարծակի հարված հասցրեց Օռյոլի աղեղի հյուսիսային ճակատամասում, որով, փոխգործողության մեջ մտնելով հարևանների հետ, ձախողվեց ֆելդմարշալ ֆոն Կլյուգեի «Կենտրոն» բանակախմբի հարձակումը Կ. Կ. Ռոկոսովսկու Կենտրոնական ռազմաճակատի զորքերի դեմ։ Թշնամու բանակում շատ աններկբայելի գնահատվեց այդ հարվածը։ «Կենտրոն» բանակախմբի հաստիքային պատմագիր Գակենհոլցը գրել է. «Օռյոլի աղեղի հյուսիսային ու արևելյան տեղամասերում հուլիսի 12-ին սկսված ռուսական հակահարձակման ուժը և, ամենից առաջ, հարվածի հզորությունը մեզ համար դաժան անակնկալ էր... Ըստ էության անըմբռնելի էր, որ ռուսներն ի վիճակի են հարձակվել ամռանը և այն էլ՝ այդպիսի հաջողությամբ։ Ֆելդմարշալ ֆոն Կլյուգեի հրամանատարական կետում, այդ իրադարձության ականատեսներիս համար միանգամայն պարզ դարձավ, որ ...1943 թվականի հուլիսի 12-ի ռուսական հարձակմամբ գերմանառուսական պատերազմում սկսվել է շրջադարձ և վերջնական օպերատիվ բեկում հօգուտ թշնամու»[1]։

Այդ օրն իսկ, 1943 թվականի հուլիսի 12-ին, 5-րդ գվարդիական տանկային բանակը, որի հրամանատարն այն ժամանակ ես էի, հարված հասցրեց Պրոխորովկայի շրջանում։ Սովետական տանկիստներն այն ժամանակ անօրինակ սխրանք գործեցին. տանկային կատաղի մարտում նրանք արյունաքամ արեցին գերմանաֆաշիստական զորքերի հարվածային խմբավորումը և հարկադրեցին անցնել պաշտպանության։ Պրոխորովկայի մատույցներում, որտեղ շիկացած պողպատից տնքում էր հողը, թշնամին թողեց 10 հազար սպանված զինվոր ու սպա, ավելի քան 400 ջարդուփշուր եղած ու այրված տանկ։ Հուլիսի

[1]. Wehrwissenschaftliche Rundschau, 1965, № 10, s. 599.



12-ը դարձավ նաև հարավից Կուրսկի վրա գերմանական հարձակման ջախջախման օրը։

Կամենում եմ ասել, որ Ի. Ք. Բաղրամյանն ակտիվ մասնակցել է ո՛չ միայն Օռյոլի շրջանում հասցված հարվածի գործնական իրականացմանը, այլև պլանավորմանը, ընդ որում, նա գնացել է, ինչպես ասում են՝ հոսանքին հակառակ և ռազմակայանում գերագույն գլխավոր հրամանատարին զեկուցելիս պաշտպանել է իր տեսակետը, չնայած դրան համամիտ չէին այն երկու ռազմաճակատների հրամանատարները, որոնց կից թևերում էլ նախատեսվում էր հասցնել այդ հարվածը։

Պետք է ասել, որ, զարգացնելով սկզբնական հաջողությունը, 11-րդ գվարդիական բանակը թշնամուն հուժկու հարված հասցրեց Բրյանսկի պլացդարմում, որն ավարտվեց հակառակորդի զգալի ուժերի ոչնչացմամբ ու մեր զորքերի Դոն գետի անցումով։ Օգոստոսի 27-ին, Կուրսկի ճակատամարտն ավարտվելուց հետո, Ի. Ք. Բաղրամյանին շնորհվում է գեներալ-գնդապետի զինվորական կոչում, իսկ նրա կուրծքը զարդարում է Սուվորովի 1-ին աստիճանի շքանշանը՝ այն տարիների զորավարական բարձրագույն պարգևը։

Հարևան ճակատամասերում ինձ բախտ է վիճակվել Իվան Քրիստափորովիչի հետ գործել նաև «Բագրատիոն» նշանավոր օպերացիայի ընթացքում, երբ 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը (որի հրամանատարությունը նա ստանձնել էր 1944 թվականի նոյեմբերին)[1], հմուտ և հուժկու հարվածով ջլատելով գերմանաֆաշիստական «Կենտրոն» և «Հյուսիս» բանակախմբերը, ձախողեցին հիտլերյան հրամանատարության ամեն մի փորձ՝ օգնելու իր 100-հազարանոց կենտրոնական խմբավորմանը, որը Բելոռուսիայի անտառներում ու ճահիճներում սեղմվել էր հուժկու աքցանի մեջ։ Ես, որ այն ժամանակ 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի կազմում գործող 5-րդ գվարդիական տանկային բանակի հրամանատարն էի, լիովին գնահատում էի այդ բանը, քանի որ, եթե թշնամին հնարավորություն ունենար բելոռուսական անտառների ու ճահիճների պայմաններում իր ամրությունների, հատկապես տանկային ամրությունների օգնությամբ հաստատուն կերպով գրավել կայանները, ապա դա մեզ առավել մեծ գլխացավանք կպատճառեր։

Հարկ է ասել, որ «Բագրատիոն» օպերացիայի պլանում նույնպես ուղղում է եղել Ի. Ք. Բաղրամյանի նախաձեռնությամբ, որն արժանացել է ռազմակայանի հավանությանը։ Այդ ճշգրտման էությունն այն էր, որ 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը, Վիտեբսկի գրավումից հետո, իրենց բոլոր ջանքերը կենտրոնացնեին՝ ջլատելու գերմանաֆաշիստական երկու բանակախմբերը։ Բելոռուսիայի համար մղված ճակատամարտի ելքն ակնբախորեն ցույց տվեց, թե որքան նպատակահարմար էր նախնական պլանում եղած այդ ուղղումը։

«Բագրատիոն» օպերացիայում 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերի հաջողության և ցուցաբերած արիության համար Ի. Ք. Բաղրամյանն արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման։

Շարունակելով հարձակումը՝ Բաղրամյանի զորքերը մտան մերձբալթյան հանրապետությունների տերիտորիան, գրոհով գրավեցին թշնամու կարևորագույն հենակետ Շյաուլյայ քաղաքը, իսկ ռազմաճակատի աջ թևի միավորումները ճեղքեցին-անցան Ռիգայի ծոցափերը։

Հետագայում, դառնալով կարմիր բանակի զրահատանկային ու մեքենայացված զորքերի գլխավոր հրամանատարի տեղակալ, ես շարունակում էի

[1] Այս պաշտոնում Ի. Ք. Բաղրամյանն իր գործունեությունն սկսեց ռազմաճակատի աջ թևում գործող հակառակորդի՝ գորոդոկյան խմբավորումը (վերմախտի 3-րդ տանկային բանակի ուժերի մի մասը) շրջապատելու և ոչնչացնելու օպերացիայից։ Օպերացիան ավարտվեց թշնամու՝ կատարելապես զինված մի քանի դիվիզիաների լիակատար ջախջախմամբ։ 1944 թվականի նոյեմբերի 17-ին Ի. Ք. Բաղրամյանին շնորհվեց բանակի գեներալի կոչում։

լարված ուշադրությամբ հետևել իմ երախայրիքի՝ 5-րդ գվարդիական տանկային բանակի գործողություններին, որը բավական ժամանակ մարտնչում էր Ի. Ք. Բաղրամյանի 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի շարքերում։ Հիշողության մեջ մնացել է այդ ռազմաճակատի զորքերի չափազանց հնարամիտ մի տեղաշարժ, երբ վեց գիշերվա ընթացքում Ռիգայի շրջակայքից Կլայպեդայի (Մեմելի) ուղղությամբ փոխադրվեցին կես միլիոն մարդ, մոտ 10 հազար թնդանոթ ու ականանետ, ավելի քան 1.300 տանկ ու հրետանային ինքնագնաց հարմարանք[1]։

Երբ այդպիսի հսկայական քանակությամբ զորքերն ու տեխնիկան տեղ հասան թշնամուց գաղտնի (այնպես որ ֆաշիստական հրամանատարությունն այդ գնահատեց որպես համարյա հրաշք) և ճակատային հարված հասցրին Կլայպեդային, գերմանական զորքերը (ավելի քան 30 դիվիզիա) Մերձբալթիկայում կտրվեցին Արևելյան Պրուսիայից և փակված մնացին Կուռլանդյան պարկում։

Իվան Քրիստափորովիչը հետո ինձ պատմում էր, թե ի՜նչ գրավիչ տեսարան էր ներկայացնում իրենից 5-րդ գվարդիական բանակի տանկերի հեղեղը, որ երկու ուղղությամբ թափով սլանում էր դեպի ճեղքվածքը։ Դա 1944 թվականի հոկտեմբերի 5-ին և 6-ին էական դեր խաղաց 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերի և դրա հրամանատար Ի. Ք. Բաղրամյանի փայլուն հաջողության գործում։

Իվան Քրիստափորովիչն աչքի ընկնող դեր է խաղացել նաև արևելապրուսական օպերացիայի (1945 թվականի հունվար—ապրիլ) անցկացման ժամանակ. այդ օպերացիային նա մասնակցել է սկզբում որպես 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի զորքերի հրամանատար, իսկ այնուհետև՝ որպես Զեմլանդյան զորախմբի հրամանատար— 3-րդ բելոռուսական ռազմաճակատի[2] զորքերի հրամանատարի տեղակալ։ (1945 թվականի փետրվարի 24-ին 1-ին Մերձբալթյան ռազմաճակատը վերակազմվել էր 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի մեջ մտնող Զեմլանդյան խմբի)։ 1945 թվականի ապրիլի 19-ին Ի. Ք. Բաղրամյանը նշանակվեց 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի զորքերի հրամանատար։

Արևելյան Պրուսիայում թշնամին ֆանատիզմի հասնող կատաղի դիմադրություն էր ցույց տալիս, ընդ որում, այդ դիմադրությունը խարսխվում էր պաշտպանական հզորագույն, դարավոր կառույցների վրա։ Հենց դրանով էլ նշանակալի է դառնում այստեղ մարտնչած մեր զորքերի ու զորավարների (ես նկատի ունեմ Ա. Մ. Վասիլևսկուն և Ի. Ք. Բաղրամյանին) ծառայությունը։

Չի կարելի չհիշատակել մի քանի թիվ, որոնք բնութագրում են 3-րդ Բելոռուսական ռազմաճակատի զորքերի հաջողության մասշտաբները պրուսական միլիտարիզմի միջնաբերդը գրոհելիս։ Այնպիսի մի առաջնակարգ ամրոց, ինչպիսին էր, անշուշտ, Քյոնիգսբերգը, խորտակվեց ընդամենը 4 օրում, ընդ որում, ոչնչացվեցին թշնամու 42 հազար զինվոր ու սպա, գրեթե 1.800 թնդանոթ ու ականանետ, խփվեց 120 ինքնաթիռ, քարուքանդ արվեց 7 բերդամաս ու 143 դոտ[3]։

Ի նշանավորումն այդ պանծալի հաղթանակի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը սահմանեց «Քյոնիգսբերգի գրավման համար» մեդալ, որով պարգևատրվել են այդ մարտերի բոլոր մասնակիցները։

Քյոնիգսբերգի ամրոցի պարետ գեներալ Օտտո Լաշը, որը գերի էր վերցվել, իր ցուցմունքում ասաց. «Ռուսները կարողացան գաղտնի կենտրոնացնել այնպիսի քանակությամբ հրետանի ու ավիացիա, որոնց մասսայական օգտագործումն ավերեց ամրոցի ամրությունները և բարոյալքեց մեր զինվորներին ու սպաներին։ Մենք ամբողջովին կորցրինք զորքերի կառավարումը... Ոչ մի

[1] Տե՛ս «К берегам Янтарного моря» (Сборник воспоминаний), 1969, стр. 125.

[2] Հրամանատարն էր Սովետական Միության մարշալ Ա. Մ. Վասիլևսկին։

[3] Центральный Архив МО СССР, ф. 241, оп. 854, л. 102.



կերպ հնարավոր չէր պատկերացնել, որ Քյոնիգսբերգի պես ամրոցը կընկնի այդքան արագ։ Ռուսական հրամանատարությունը լավ էր մշակել և հիանալի անցկացրեց այդ օպերացիան... Քյոնիգսբերգի կորուստը խոշորագույն ամրոցի և Արևելքում գերմանական պատվարի կորուստ է»[1]։

Քյոնիգսբերգի գրավումից հետո մարշալ Վասիլևսկուն ետ կանչեցին Մոսկվա, սակայն Զեմլանդյան 68-հազարանոց զորախմբավորման ջախջախումն ու գերեվարումը Ի. Ք. Բաղրամյանն անցկացրեց այնպիսի դինամիկ տեմպով, ինչպես Քյոնիգսբերգի օպերացիան։

Այդ օպերացիայի բոլոր մասնակիցների համար անմոռանալի կմնա հաղթանակի շքերթը։ Ես պարզորոշ հիշում եմ 1945 թվականի հունիսի 24-ի մառախլապատ օրը։ Վ. Ի. Լենինի դամբարանի մոտով առաջինն անցավ Կարելական ու Լենինգրադյան ռազմաճակատների համահավաք գունդը, իսկ հետո բանակի գեներալ Ի. Ք. Բաղրամյանի գլխավորությամբ շարժվում էր 1-ին Մերձբալթյան ռազմաճակատի գունդը։ Հաստ քայլերով և սուրը վեր պահած՝ Իվան Քրիստափորովիչն առաջնորդում էր իր հերոս ռազմիկներին։

Հետպատերազմյան տարիներին Ի. Ք. Բաղրամյանը լայնորեն ու բազմակողմանի էր օգտագործում հրամանատարական ու շտաբային աշխատանքի իր փորձը. ինը տարի նա եղել է Մերձբալթյան զինվորական օկրուգի զորքերի հրամանատար (1945 թվականի հուլիս—1954-ի մայիս), ապա եղել է ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության գլխավոր տեսուչ (1954 թվականի մայիս—1955-ի մայիս), ՍՍՀՄ պաշտպանության մինիստրի տեղակալ (1955 թվականի մայիս—1956-ի հունիս), գլխավոր շտաբի ռազմական ակադեմիայի պետ (1956-ի հունիս—1958-ի հունիս)։ Դրանից հետո տասը տարի վարել է պաշտպանության մինիստրի տեղակալի— ՍՍՀՄ զինված ուժերի թիկունքի պետի պատասխանատու պաշտոնը (1958 թվականի հունիս—1968-ի ապրիլ)։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության՝ 1955 թվականի մարտի 11-ի հրամանագրով նրան շնորհվել է սովետական տերության զինվորական ամենաբարձր կոչումը՝ Սովետական Միության մարշալի կոչումը։

1968 թվականի ապրիլից Իվան Քրիստափորովիչը ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության գլխավոր տեսուչն է։ Նա ռազմագիտական ծավալուն աշխատանք է տանում, գրել է մի շարք գրքեր։ Դրանցից վերջինը՝ Այսպես էինք գնում դեպի հաղթանակ, լույս է տեսել հենց վերջերս։ 1952 թվականից Ի. Ք. Բաղրամյանը ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու էր, իսկ 1961 թվականից՝ ՍՄԿԿ Կենտկոմի անդամ։ Նա ՍՍՀՄ Գերագույն սովետի բոլոր գումարումների դեպուտատ է՝ սկսած երկրորդից։ Պարգևատրվել է Լենինի յոթ շքանշանով, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով, Սուվորովի 1-ին աստիճանի երկու շքանշանով, Կուտուզովի 1-ին աստիճանի շքանշանով, «ՍՍՀՄ զինված ուժերում հայրենիքի ծառայության համար» շքանշանով, շատ մեդալներով, անվանական պատվավոր զենքով, ինչպես նաև օտարերկրյա մի շարք շքանշաններով ու մեդալներով։

Առանց չափազանցության կարելի է ասել, որ որակական այն վիթխարի թռիչքի մեջ, որն այնքա՜ն բնորոշ է մեր հայրենիքի հետպատերազմյան ժամանակաշրջանի պաշտպանական հզորության աճի համար, Իվան Քրիստափորովիչը ներդրել է իր անձնական ծանրակշիռ ավանդը, որը, պատերազմյան տարիների նրա զորավարական մեծագործությունների հետ մեկտեղ, երբեք չի մոռանա սովետական ժողովուրդը։

Մարշալ Բաղրամյանի զորավարական տաղանդի միլիոնավոր երկրպագուները խորին գոհունակությամբ ընդունեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության վերջերս հրապարակված հրամանագիրը՝ երկրի զինված ուժերին մատուցած ծառայությունների, Հայրենական մեծ պատերազմի տարիներին գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղված պայքարում ցուցաբերած

[1] Մեջբերումն ըստ А. М. Василевский. «Дело всей жизни», стр. 496.

արիության ու հերոսության և ծննդյան ութսունամյակի կապակցությամբ նրան Լենինի շքանշանով ու «Ոսկե աստղ» երկրորդ մեդալով պարգևատրելու մասին։

Ոչ հնարավորություն, ոչ էլ անհրաժեշտություն կա թվարկելու Իվան Քրիստափորովիչի բոլոր ծառայությունները հայրենիքի հանդեպ։ Զորավարի տաղանդը, նրա ռազմական գիտելիքների մասշտաբայնությունն ու բազմակողմանիությունը, մարտական վիթխարի փորձը, նրա անձնական հմայքը դարձել են պատերազմի վետերանների առօրյա կյանքի բաղկացուցիչ մասը։ Նրա ենթականերից ոչ ոք չի հիշում, որ նա երբևիցե բարձրացրած լինի ձայնը, բորբոքվի։ Եվ, միաժամանակ, նրա հրամանները, որ երբեմն նմանում են խորհրդի ու խրատի, ընկալվում են որպես անառարկելի օրենք։ Սպաներն ու գեներալները դրանց կատարումը համարում են պատիվ, իմանալով հանդերձ, թե մարշալը որքան բարձր է գնահատում խելացի նախաձեռնությամբ բազմապատկված անբասիր հնազանդությունը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում ինձ բախտ է վիճակվել Ի. Ք. Բաղրամյանի հետ աշխատել գլխավոր շտաբի ակադեմիայում, բազմիցս առընչվել Իվան Քրիստափորովիչի հետ, երբ պաշտպանության մինիստրի տեղակալ էր թիկունքի գծով։ Կարող եմ ասել, որ այդ շփումը միշտ էլ առաջացրել է ստեղծագործական վերելք, հաճելի զգացում այն բանի, որ դու կողք-կողքի աշխատում ես խորապես հարգված մարդու հետ։ Իվան Քրիստափորովիչն այժմ էլ, ութսուն տարեկան հասակում, լի է ռազմական արվեստին վերաբերող ստեղծագործական մտահղացումներով, բարյացակամությամբ զինակիցների ու բարեկամների հանդեպ, անխոնջ[illegible] հավատով իր ժողովրդի պայծառ ապագայի նկատմամբ։

# ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

## ԴԺՎԱՐԻՆ ԵՐՋԱՆԿՈՒԹՅՈՒՆ



ՄԱՐԴԸ Ե՞ՐԲ Է հռչակավոր դառնում: Ինչպե՞ս է պատահում, որ հանկարծ, մի օր բոլորի շուրթերից նույն անունն ես լսում, այն էլ հիացմունքով ու հարգանքով: Հատկապես ո՞ր դեպք-դիպվածից հետո... Դժվար է ասել: Սակայն ստույգ է մի բան. քանի դեռ լսում ես նրա անունը միայն, բայց անձնապես ծանոթ չես, դա մնում է սոսկ անուն՝ պարուրված խորհրդավորության ու հեռակա վստահության լույսով, ինչ-որ արտասովոր-արտակարգի ակնկալիքով...

...Ես գնում էի ակնաբույժ Սերգեյ Մալայանի մոտ (ոմանք նրան նաև Մալաև են կոչում) և մտորում հենց այդ մասին: Նրան գիտեի, ինչպես ասում են, հեռվից-հեռու: Ավելի ճիշտ՝ լսել էի համբավը, սակայն երբեք չէի տեսել: Եվ, ահա, Երևանի ակնաբուժական հիվանդանոցի մի փոքրիկ առանձնասենյակ, պատերի տակ՝ ամենաբազմազան գործիքներով լեցուն պահարաններ, պատերին՝ նկարներ, երեք աթոռ այցելուների համար (ավելին դնելու տեղ չկա), գրասեղան և դրա առջև ինքը՝ Սերգեյ Վարդանի Մալայանը: Միջահասակ, կանոնավոր դիմագծերով, ակնոցի ապակիներից նայող ուշադիր, բարյացակամ աչքերով մի մարդ. եթե նրան տեսնես փողոցում՝ անցորդների մեջ, ոչնչով չես տարբերի մյուսներից: Անբաժան ծխախոտի ծխի միջից ժպտում է՝ մանկականորեն-հուսադրող ժպիտով: Ճգնում էի որևէ արտակարգ բան գտնել նրա դեմքին, աչքերում, ժպիտների մեջ... Ոչի՜նչ: Իսկ հռչա՞կը: Որտեղի՞ց է ծնվել այն: Եվ դիմում եմ նրան.

— Մարդ ե՞րբ է դառնում հռչակավոր...

Ակնոցի տակից նա մի պահ զարմացած նայում է ինձ, ապա ժպտում: Այդ ժպիտը նրա դեմքին հմայք է տալիս:

— Հռչա՞կը, բայց նախ ի՞նչ է հռչակը: Չէ՛ որ դա նույնն է, ինչ գործը և ուրիշ ոչինչ: «Ի սկզբանե եղել է գործը». սա հավերժակա՞ն իմաստություն է:

— Բայց չէ՛ որ լինում են նաև անարժան փառքեր...

— Լինո՜ւմ են:— Ցավակցաբար թե ընկրճված պատասխանում է նա:— Գիտե՞ք, երբ մասնագետը միակն է, թեկուզ ոչ կատարյալ, նա դառնում է անփոխարինելի: Նրան ոչ մեկի հետ համեմատել չես կարող, ոչ մեկի կողքին դնել չես կարող, վատի կողքին պետք է լինի նաև լավը... Հետո՝ կան նաև ճարպիկներ, որոնք սին փառք են ստեղծում իրենց համար: Դա հռչակավորության ամենավտանգավոր տեսակն է...

Դե, ի՛նչ, կարծում եմ՝ Մալայանն իրավացի է: Այո՛, մարդիկ երբեմն հավատ և հարգանք են տածում (երբեմն նաև խոնարհվում) այն մարդկանց նկատմամբ, որոնք խոսում են բարդ ու անհասկանալի, շաղակրատում այնպես, որ խեղդվում ես բառերի հեղեղի մեջ: Նրանք ամեն ինչ կարող են խճճել, բարդացնել, ցույց տալով, որ այդ լաբիրինթոսի ելքը միայն իրենց

է հայտնի: Սակայն հենց որ մի իսկական պայծառամիտ անտրտունջ, դյուրավ կատարում է իր գործը, նրան համարում են մակերեսային ու հասարակ: Եվ չեն հասկանում, որ այդ հասարակ թվացող մարդը իր գործն անելու համար հազար ու մի տառապանք է կրել:

Եթե հետևելու լինենք Սերգեյ Մալայանի կյանքի ընթացքին, ապա կտեսնենք, որ նա ամենուրեք ձգտել է մի բանի— օգտակար լինել մարդկանց: Բազմիցս նա ճաշակել է անհաջողության դառնությունը և ավելի շատ՝ հաջողության քաղցրությունը: Չէ՛ որ հենց անհաջողության դառնությունն է սովորեցնում մարդուն զգալ հաջողության հմայքը:

Սերգեյ Մալայանը ծնվել է Թիֆլիսում: Նրա հայրը եղել է Ներսիսյան դպրոցի սան, կռվել Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման համար, ապա ծառայել է պետական անվտանգության օրգաններում: Եվ, չնայած դրան, ինքը՝ Սերգեյը, տոհմիկ ակնաբույժ է: Նա գիտակցական կյանք մտավ այն ժամանակ, երբ հորեղբայրը՝ պրոֆեսոր Արտաշես Մալայանը, հրաշքներ էր գործում: Կույր և այդ իսկ պատճառով կյանքից դառնացած մարդիկ գալիս էին նրա մոտ՝ հուսահատության ու հույսի անորոշ զգացումով և հեռանում երջանկացած: Նրանք տեսնո՜ւմ էին: Թերևս հենց այդ ժամանակվանից պատանու հոգում արթնացավ սերը բժշկության նկատմամբ, մարդկանց օգտակար լինելու անդրդվելի տենչը: Եվ դպրոցն ավարտելուց հետո Սերգեյն ընդունվեց տեղի բժշկական ինստիտուտը, որն ավարտեց 1948 թվականին:

Ավարտել ինստիտուտը դեռ չի նշանակում մասնագետ դառնալ: Մասնագիտության ընտրությունն սկսվում է գործնական աշխատանքում: Աշխատանքի գործուղվելով Հյուսիսային Կովկաս, Գրոզնի քաղաքի մոտակայքում գտնըվող Նադտերեչնայա ստանիցան՝ նա կանգնեց մի շարք անլուծելի հարցերի առջև: Ի՞նչ անել, ինչի՞ց սկսել:

Նա դեռևս ակնաբույժ չէր, բայց ամեն ինչ էր, որովհետև մենակ էր: Վիրահատում էր, ծնունդ ընդունում, թերապևտ էր, ակնաբույժ... Երկու անգամ էլ մահ տեսավ, թեև ոչ իր մեղքով: Բայց այդ ի՞նչ կարևոր է, մահը՝ մահ է: Մարդը ժամանակից շուտ չպետք է մեռնի:

— Նորավարտ բժշկի համար,— հիշելով անցյալը, ասում է նա,— ամենասարսափելին հիվանդի հետ հանդիպելն է: Քեզ մոտ բերում են մահամերձ մարդուն: Դու պետք է ախտորոշես, մի քանի րոպեում վճռես անելիքդ:

Նա մի պահ մտորում է, ապա.

— Դուք ինչպե՞ս կվարվեիք, կվիրահատեի՞ք, թե՞...

Անփորձությունն ամենամեծ փորձությունն է: Եվ անփորձ բժիշկը նետվում է դեպի հեռախոսը, զանգահարում շրջկենտրոն, օգնություն խնդրում և հաճախ չի ստանում: Ի՞նչ անել: Հո չի՞ կարելի թողնել, որ մարդը մեռնի բժշկի աչքի առջև:

Այսպես է, երբ զգում ես, որ քո թիկունքում ոչ ոք չկա, նոր ուժ ես առնում: Դու միայնակ ես հիվանդի հետ, որի հայացքը կյանք է աղերսում:

— Ինքնուրույն աշխատանքիս առաջին տարին դաժան փորձություն էր ինձ համար: Անվստահություն սեփական ուժերի նկատմամբ, ամենաարտառոց դեպքեր (գոնե այն ժամանակ ինձ այդպես էր թվում), որոնց մասին դասախոսներից ոչինչ չէի լսել: Հիշում եմ, երբ հարկ եղավ առաջին վիրահատությունը կատարել, շվարեցի: Փորձեցի օգնություն խնդրել, բայց ումի՞ց: Ստիպված վիրահատեցի և, ի՞նչ եք կարծում, հաջո՜ղ անցավ:

Մեկ տարի անց նա վերադառնում է Թբիլիսի և աշխատանքի ընդունվում ֆիզիկական կուլտուրայի ինստիտուտի անատոմիայի ամբիոնում: Այստեղ նա մանրակրկիտ մեծ վարպետությամբ պատրաստում է ձեռքի, ոտքի մկանային հյուսվածքների մոդելները, որոնք մինչև օրս գտնվում են Թբիլիսիի անատոմիական թանգարանում: Դրանց միջոցով կարելի է ուսումնասիրել այդ մկանների շերտավոր դասավորությունը:

Երիտասարդական տարիներին առհասարակ խիստ լայն է եղել Սերգեյ Մալայանի հետաքրքրասիրությունների շրջանակը: Նա զբաղվում էր երաժշտությամբ, նկարում, պատրաստում էր ամենաբազմապիսի մոդելներ ու գործիքներ: Խառատ, հյուսն, ծեփագործ, ներկարար և... բժիշկ: Սակայն մարդը չի կարող իր ուժերը ցրել բազմաբնույթ գործերում: Անհրաժեշտաբար նա պետք է ընտրի բազմաթիվ մասնագիտություններից մեկը:

Ընտրությունը կատարված էր, սակայն մընում էր ամրապնդել ներքին համոզումը՝ դառնալ վիրաբույժ, միայն վիրաբույժ, և այն էլ՝ ակնաբույժ— նուրբ դիտողականություն, ճարտար ձեռք, անսահման համառություն պահանջող մասնագիտություն:

Եվ այսպես սկսվեց նրա ակնաբույժ-վիրաբույժի գործունեությունը Թբիլիսիի աչքի հանրապետական կլինիկայում, ուր նա ձևավորվեց որպես արտահաստիքային օրդինատոր: Պետք է ասել, որ Մալայանի բախտը բերեց: Նա կատարելագործվեց այնպիսի մասնագետների մոտ, ինչպիսիք էին՝ Բերաձեն, Սիխարուլիձեն, Շատիլովան և ուրիշներ: Այսօր էլ նա երախտագիտությամբ է հիշում իր առաջին ուսուցիչներին: Այնուհետև տեղափոխվում է երկաթուղայինների պոլիկլինիկա, այնտեղ կահավորում վիրաբուժական առանձնասենյակ, ուր, ճիշտ է, բարդ վիրահատություն չէր կատարում, բայց առաջին օգնություն ցույց էր տալիս:

Սակայն Սերգեյ Մալայանի վիրաբուժական իսկական գործունեությունն սկսվեց միայն այն ժամանակ, երբ տեղափոխվեց Երևան և դարձավ հանրապետական հիվանդանոցի աչքի բաժանմունքի օրդինատոր: Այստե՛ղ կատարեց իր վիրահատությունները, այստե՛ղ նա լայն ճանաչում գտավ, այստե՛ղ նա լսեց մասնագետի համար անչափ շոյիչ ու բաղձալի խոսքը՝ «Ես ուզում եմ բուժվել Մալայանի մոտ»: Եվ նրա առանձնասենյակի դռանն սկսեցին հերթեր գոյանալ: Ստեղծվում, ծավալվում էր նրա համբավը. բայց ի՞նչ իմանաս՝ ե՞րբ, հատկապես ո՞ր դեպք-դիպվածից սկսած... մարդը հայտնի է դառնում, սակայն շարունակվում է ինքնակատարելագործումը, նա չի կարող գոհանալ ձեռք բերածով: 1958 թվականին, իր բազմամյա փորձի հիման վրա, նա պաշտպանեց թեկնածուական դիսերտացիա, որն արժանացավ մասնագետների բարձր գնահատականին:

***

Տարիներ առաջ, մեր փողոցով ամեն առավոտ քայլում էր մի ծեր մարդ: Նա գլուխն անբնականորեն վեր էր բարձրացնում, հայացքը հառում երկնքին ու քայլում դանդաղ, ձեռնափայտով շոշափելով ճանապարհը: Կույր էր: Բողոք կար նրա՝ երկնքին հառած հայացքի ըմբոստության խաղաղության մեջ: Կար նաև լարված մտասևեռություն: Կարծես լարում էր միտքը՝ հիշողությամբ գտնելու այն ճանապարհը, որ հազար անգամ անցել էր տարիներ շարունակ:

Ամեն անգամ նրան տեսնելիս հիշում էի բանաստեղծ Արշալույս Սարոյանին, որ պատմում էր իր հոր մասին.

— Հորս աչքերը հիվանդ էին. օր-օրի պակասում էր աչքի լույսը, մեզ էլ հազիվ էր նշմարում: Տարա Երևանի առաջին կլինիկական հիվանդանոցի ակնաբուժական բաժանմունքը: Փորձված ակնաբույժ, բժշկական գիտությունների թեկնածու Սեդա Մուրադյանը ուշադրությամբ զննեց, և ասաց. «Կատարակտ է: Շուտով տեսողությունը լրիվ կկորցնի: Այն ժամանակ էլ հնարավոր կլինի վիրահատել»: Իսկապես, շուտով հայրս կուրացավ: Կուրությունը նա շատ ծանր էր տանում:

Հուսադրում էի, խոստանում, որ շուտով կտանեմ վիրահատության, համոզում, որ կրկին կըտեսնի աշխարհն էլ, թոռներին էլ... Չէր համոզվում: Ակնաբույժ Սերգեյ Մալայանը խոսքի փոխարեն գործի անցավ. նրա հմուտ ձեռքերի ու հարուստ գիտելիքների շնորհիվ հորս տեսողությունը վերականգնվեց:

Ամեն անգամ, այդ ծերունուն տեսնելիս և հիշելով Արշալույսի պատմածը հոր մասին (հետագայում նա մի գեղեցիկ ակնարկ նվիրեց Սերգեյ Մալայանին և ակնաբուժարանին), զարմանում էի, թե ինչո՞ւ նրա որդիները կամ հարազատները վիրահատության չեն տանում: Ու մի օր էլ ծերունուն չտեսա փողոցում: Երկու թե երեք ամիս անց հանդիպեցի նրան՝ կերպարանափոխված, առույգ, ժպտադեմ: Ճիշտ է, ձեռնափայտով էր քայլում և կրում էր ակնոց, բայց... տեսնում էր: Մոտեցա ծերունուն, բարևեցի: Զարմացած ինձ նայեց ու թոթվեց ուսերը:

— Մի՛ զարմանաք,— ասացի,— հարկավ դուք ինձ չեք ճանաչում, բայց ես Ձեզ գիտեմ:

— Ա՜,— նրա դեմքին ու աչքերի մեջ բարեհոգի ժպիտ խաղաց,— ինչպե՞ս կարող էի Ձեզ ճանաչել... Չգիտեմ ինչպես շնորհակալություն հայտնել ինձ բուժող բժիշկներին, մի՞թե աչքի լույսը կարելի է փոխել որևէ բանով: Երբ վիրահատությունից մի քանի օր անց աչքերս բացեցի ու տեսա բժիշկներին, քիչ էր մնում ուրախությունից խենթանայի: Որոնում էի ինձ վիրահատողին. միայն ձայնից կարող էի ճանաչել նրան, բայց բոլորը լուռ էին: Այնժամ բժշկուհիներից մեկը գլխով ցույց տվեց Մալայանին: Չէի ուզում հավատալ: Այդ փոքրիկ մարմնի մեջ, ակնոցի տակից չարաճճի-խորամանկ հայացքով ինձ նայող այդ մարդու մեջ ինչպիսի՜ գերբնական ուժ կա, լո՜ւյս պարգևող ուժ...

Ծերունին խոսում էր ոգևորությամբ, ամեն ինչ մոռացած, վերացած:

— Գիտե՞ք, երբ մարդ կորցնում է տեսողությունը, կորցնում է ամեն ինչ: Ճիշտ է, հոգու աչքերը նրան կապում են կյանքին, աշխարհին ու բնությանը, սակայն աշխարհի կույր, միայն երևակայությամբ լրացվող ընկալումը բոլորովին այլ բան է: Ապրել ու չտեսնել այն ամենը, ինչ հիմա տեսնում եմ, սարսափելի է...

Քանի՜-քանիսին է Սերգեյ Մալայանը պարգևել աշխարհը, հարազատներին տեսնելու գերագույն երջանկությունը... Ո՞ր մեկին հիշես:

— Սերգեյ Վարդանիչը մոռացկոտ է,— կատակեց բժշկուհի Օլգա Շաղգամյանը, ապա, դառնալով բժշկին՝ խնդրեց,— պատմեք այն հայրենադարձ ընկերոջ մասին, որին բուժեցիք մի քանի տարի առաջ:

— Զվարճալի պատմություն է,— աշխուժացավ բժիշկը.— Դա մի տարեց, բայց շատ աշխույժ ու կատակասեր մարդ էր: Դեռ վիրահատությունից առաջ անընդհատ խոսում էր իր գեղեցիկ կնոջ մասին, այրվում նրա դեմքը տեսնելու ցանկությունից: Իսկ կինը, ճիշտն ասած, ամենևին էլ գեղեցիկ չէր: Գուցե երիտասարդ ժամանակ հաճելի արտաքին էր ունեցել, բայց ծերացել էր արդեն, խորշոմել: Վիրահատությու-

նից մի քանի օր անց, երբ վիրակապը բացեցինք, և հիվանդը լույսին ընտելացավ, կնոջը հրավիրեցինք ներս: Հիվանդը մի քանի րոպե լուռ նայեց նրան, ասես չէր ճանաչում: Ապա ասաց. «Բժիշկ, խնդրում եմ ինձ նորից կուրացրեք»: Հիվանդասենյակում այնպիսի՜ անզուսպ քրքիջ բարձրացավ, որ պատուհանների ապակիները զնգզնգացին: Ամենից բարձր և սրտանց ծիծաղում էր կինը: Դա երջանկության ծիծաղ էր:

Պատկերացնում եմ, թե ներքին ի՜նչ բավականություն է զգացել այդ պահին Մալայանը՝ լույս արարող այդ մարդը: Ինչպիսի՜ երջանկություն է՝ վերադարձնել մարդուն աշխարհի գույները, պարգևել նրան երկրորդ կյանք: Եվ ո՞վ կարող է չափել՝ դրա համար որքա՞ն ջանք, ինքնայրում, հուզմունք է պահանջվել բժշկից: Ակնաբույժի մասնագիտությունն ազատություն ու թռիչք է տալիս մտքին, բայց ծանրաբեռնում է հոգին: Դրանից շահում են նրա ներքին ազատությունը, անմիջականությունը, մարդկանց նկատմամբ հոգատարության ու պարտքի անհատնում զգացումը: Չէ՛ որ մարդու կյանքը, բնության այդ շռայլ պարգևը, տրված է հենց այն բանի համար, որ կաթիլ-կաթիլ, հյուլե-հյուլե կրկին վերադարձվի բնությանը՝ նվիրաբերվելով մարդկանց՝ բնության այդ հրաշք արարածներին: Ինքնանվիրումը մարդու առաքելությունն է. բարիք սերմանել ու քաղել, նվիրվել, նվիրումով սպառվել:

...Թիթեռնիկի պես քնքույշ ու փխրուն էր աղջնակը: Վախից նա դողում էր, լալիս, չէր թողնում աչքերը զննեն: Երկու-երեք տարի էր տեսել արևի լույսը, ու հետո անողոք հիվանդությունը կուրացրել էր աչքերը: Այնպե՞ս գեղեցիկ էին այդ աչքերը. երկար, սև թարթիչներն ասես ձուլվում էին թուխ հոնքերի աղեղներին, երբ բացում էր կոպերը, և երևում էր ակնաբիբերի շագանակագույնը, որը մի առանձին հմայք էր տալիս նրա գունատ դեմքին: Իր չտեսնող աչքերը ժամերով հառում էր ինչ-որ անորոշ մի կետի ու սուզվում մտքերի մեջ: Ի՞նչ էր մտորում դեռ կյանք չտեսած այդ աղջնակը, որը, սակայն, բնության հրամանով լցվում էր կյանքի ավիշներով, կրծքի տակ արդեն խլրտալ էր սկսում անորոշ, անծանոթ զգացումների թրթիռը: Ցերեկվա լույսը գիշերվա խավարից նա զանազանում էր միայն աշխատանքային մեղմացող աղմուկներից, մարդկանց ճանաչում էր ձայնից, բնության գույներն ընկալում էր արդեն մարող հիշողությամբ: Ի՞նչ էր մտածում արդյոք աշխարհի ու մարդկանց, իր կյանքի ու ապագայի մասին: Ինչպիսի՞ երազներ էին օրորում նրան գիշերային անդորրում, միայնության, տառապանքների ու հուսահատության հորձանուտում: Ո՞վ կարող է այդ ամենը կարդալ հասունացող, բայց կույր աղջկա աչքերի խավար խորխորատում:

Սակայն բժիշկը կարդում էր: Նա տառապում էր այդ անմեղ հոգու տառապանքով և աշխատում էր սփոփել, հուսադրել, համոզել... Իսկ աղջնակը վախենում էր. տեսնելու հույսի՞ց էր վախենում, թե՞ չտեսնելու հուսահատությունից: Չէ՛ որ նա ապրում էր միայն տեսնելու հույսով և, եթե մարեր այդ հույսը, այլևս ինչպե՞ս ապրեր: Բժիշկը հենց այդպես էլ ընկալում էր նրա վախը և ջանում մեկնել նրա հոգին, հույսի մարող կրակը բորբոքել բարի խոսքով, վաղվա լուսավոր երազանքով: Եվ բժիշկն այդ աղջկան պատմեց կույր արքայադստեր ու գեղեցիկ տղայի պատմությունը:

— Եվ նա համաձայնե՞ց,— անհամբերությամբ հարցրի ես.— ու այժմ տեսնո՞ւմ է:

Մալայանը գոհունակությամբ մի նոր գլանակ վառեց:

— Տեսնո՞ւմ է... Իհարկե՛: Նա ամուսնացավ իմ պատմության գեղեցիկ տղայի հետ և այժմ երեք երեխաների երջանիկ մայր է:

***

Տարիները պարգևում են փորձ, իմացություն... Եվ կուտակվում է իմաստությունը:

Տարիները, փորձը, հմտությունների կատարելագործումը նրան համբավ բերին, համբավի հետ՝ ինքնավստահություն իր նկատմամբ, նաև՝ մարդկանց խորին հարգանք:

Այդ բազմաշնորհ մարդուն լավ ճանաչելու համար պետք է մտերմանալ հետը, տեսնել վիրահատության ժամին, նստել նրա մեքենան և շրջել Երևանի փողոցներով, կամ մեկնել որևէ շրջան, նախկին հիվանդներից մեկի մոտ, մի խոսքով՝ փորձել ճանաչել այդ շատ զարգացած, բազմակողմանի գիտելիքների ու կարողությունների տեր մարդուն:

Բժշկության, հատկապես վիրաբուժության մեջ որքան կարևոր է տեսական պատրաստականությունը, նույնքան, գուցե և ավելի, կարևոր է գործնական աշխատանքը, պրակտիկ փորձը: Իսկ բժշկի պրակտիկան կապված է միայն մարդկանց հետ, որոնցից յուրաքանչյուրը պահանջում է յուրովի մոտեցում ու վերաբերմունք:

Ոչ մի վիրահատություն նման չէ մյուսին, թեև տեխնիկան սկզբունքորեն մշակված է: Որքան մարդ, այնքան զգացում, այնքան անհատականություն: Հիվանդությունը, ինչպիսին էլ այն լինի, «ես»-ի հիվանդություն է, միայն տվյալ անհատինը, արտահայտվում է յուրօրինակ, պայմանավորված այդ անհատի ինքնատիպ կառուցվածքով ու հոգեբանությամբ: Եվ միշտ էլ անչափ կարևոր են հուսադրող ժպիտը, քաղցր խոսքը, հոգատարությունը հիվանդի նկատմամբ:

Հազարավոր մարդիկ դիմելով Մալայանի օգնությանն ու խորհրդին, ամենից առաջ հանդիպում են նրա մարդկային, սիրալիր վերաբերմունքին: Եվ այդ պահին բժիշկը ամենահարազատ ու մտերիմ մարդն է, միայն նա կարող է հասկանալ հիվանդին:

Մալայանի տեսադաշտում մարդն է. ...ամեն մարդ իր տեղն ու դերն ունի կյանքում, հասարակության մեջ, և բժիշկը կոչված է նրան վերադարձնելու հասարակությանը, վերադարձնելու նրան բնության շնորհած, ապա կորսված բարիքը, դառնալու կորսվածի արարիչ: Եվ վիրահատության պատրաստվելիս նա խորհում է միայն այդ մասին. մարդը պետք է տեսնի բնության ողջ հրաշալիքները, ծառն ու ծաղիկը, ջրվեժների խելահեղ թռիչքը, թռչունների ճախրանքը, արևն ու աստղերը և՝ ինքը իրեն, կյանքի ողջ գեղեցկությունը... Եվ վիրահատում է ինքնամոռացությամբ: Իսկ վիրահատությունից հետո դադրած ու հոգնած, ծխախոտի ծխի քուլաներին է հանձնում իր հուզումներն ու խռովքը, լույսի արարչի տագնապալի սարսուռները...

Սակայն Սերգեյ Մալայանը սոսկ վիրահատ ակնաբույժ չէ: Նա ստեղծագործող է: Այս ակնարկի սկզբում ասվեց արդեն, որ նա ժամանակին զբաղվել է երաժշտությամբ, նկարչությամբ, որ նա և՛ խառատ է, և՛ հյուսն, և՛ ծեփագործ, և որ իր առանձնասենյակում գտնվող գրեթե բոլոր իրերը պատրաստված են իր ձեռքով: Չնայած խիստ ծանրաբեռնվածությանը (ամենօրյա համայց հիվանդներին, ընդունելության օրեր, նախատեսված և չնախատեսված վիրահատություններ, դասախոսի հոգաշատ աշխատանք բժշկական ինստիտուտում և կոնսուլտացիոն շրջագայություններ ողջ հանրապետությունում. այս դեռ լրիվ թվարկումը չէ այն բոլոր պարտադիր ու ոչ պարտադիր գործերի, որ նա կատարում է ամեն օր), նա միշտ էլ ժամանակ է գտնում զբաղվելու մեխանիկայով, ապարատների վերանորոգմամբ, նորերի ստեղծմամբ:

Դասախոսությունների ժամանակ Մալայանն զգաց, որ ասիգմատիկ կամ զանազան փոփոխությունների ենթարկված աչքի ցուցադրումը՝ բնագրերով կամ պարզապես բացատրություններով, ուսանողներն ընկալում են դժվարությամբ: Այնժամ նա ստեղծեց մի մոդել, որի օգնությամբ ցուցադրվում է լուսային ճառագայթների ընթացքն աչքի բեկող միջավայրում: Այժմ արդեն ուսանողները կարող են գործնականում տեսնել, թե տարբեր կառուցվածք ունեցող աչքերում ինչպես է բեկվում լույսի ճառագայթը: Մալայանը հեղինակն է նաև պրոեկցիոն կոմպիմետրի, որով տեսադաշտի կենտրոնական մասի ստուգման հնարավորությունները բազմապատկվում են (օբյեկտի չափը, գույնը, լուսային թարթումները և այլն): Ստացված տվյալները սարքն անմիջապես գրանցում է համապատասխան ժապավենի վրա:

Նա է պատրաստել այն նրբունելին (պինցետը), որը հնարավորություն է ընձեռում հեշտությամբ կապեր դնելու վիրահատական դաշտի խորքում՝ արտասվապարկից դեպի քթի խոռոչը ծորան անցկացնելիս: Վիրահատությունը կատարվում է արտասվապարկի թարախային բորբոքումների դեպքում, որի հիմնական սուբյեկտիվ ախտանիշը արտասվածորումն է: Մալայանն է կազմել նաև տեսողության ստուգման հայատառ աղյուսակները:

Նա այսպիսի բազմաթիվ սարքեր ու գործիքներ է պատրաստել և նվիրաբերել հիվանդանոցին, որպեսզի բոլորն օգտվեն դրանցից:

Անշահախնդիր նվիրատվություն: Ի դեպ, այն նույնպես ժառանգական առաքինություն է:

Սովետական Միության անատոմներին լայնորեն հայտնի է հանգուցյալ պրոֆեսոր Արտաշես Մալայանի անունը: 1917 թվականին ավարտելով Խարկովի համալսարանի բժշկական մասնաճյուղը, նա գիտական ակտիվ գործունեություն է ծավալել բժշկագիտության, հատկապես աչքի հիվանդությունների բնագավառում: Այնուհետև որպես հիմնական մասնագիտություն ընտրել է անատոմիան: 1958 թվականի սեպտեմբերի 18-ին Արտաշես Գրիգորիչը մահացավ: Մահվանից մի քանի օր առաջ նա իր մոտ է կանչում եղբոր որդուն՝ Սերգեյին, հանձնում մի ծրար և խնդրում բացել այն երկու տարի հետո: 1960 թվականի սեպտեմբերին ծրարը բացվում է: Հայրենասեր բժշկապետը գրել էր.

«Անցյալում դժվար էր պատկերացնել, որ Երևանում կստեղծվի բժշկական գիտական հաստատություն: Այժմ Երևանի բժշկական ինստիտուտը և գիտահետազոտական մյուս ինստիտուտները մեծ համբավ են վայելում Սովետական Միության բժշկական շրջաններում: Հիանում եմ՝ իմանալով Հայաստանի բժիշկ-գիտնականների՝ վիրաբուժության, թերապիայի, ակնաբուժության և այլ բնագավառներում ունեցած հաջողությունների մասին:

Առողջությունս հավանաբար թույլ չտա ապրել մինչև Սովետական Հայաստանի 40-ամյակը: Խնդրում եմ այդ առթիվ Երևանի բժշկական ինստիտուտին հանձնել իմ համեստ նվերը՝ բժշկական ամբողջ գրադարանս, իմ սեփական բժշկական սարքավորումը և գործիքները: Ինձ անչափ վարձատրված կզգամ, եթե իմ կտակով մի փոքր օգնած լինեմ իմ սիրելի Հայաստա-

նի երիտասարդ բժշկական կադրերի պատրաստմանը...»:

Հանգուցյալի եղբորորդին՝ բժշկական գիտությունների թեկնածու Սերգեյ Մալայանը, կատարեց հորեղբոր ցանկությունը և Երևանի բժշկական ինստիտուտին հանձնեց նրա հարուստ գրադարանը, բաղկացած բժշկության տարբեր բնագավառներին վերաբերող 2.500 մեծարժեք հատորներից: Այդ բացառիկ մատենաշարում կան XVIII—XIX դարերի գրքեր, ռուսերեն և այլ լեզուներով հրատարակություններ, բժշկական ատլասներ: Ինստիտուտի կլինիկային են հանձնվել նաև ավելի քան 500 բժշկական թանկարժեք սարքեր ու գործիքներ, աչքի վիրաբուժության սեղան, գալվանիզացման, դիաթերմիայի, էլեկտրաբուժության այլ ապարատներ:

...Սերգեյ Մալայանը շարունակում է տոհմական այդ գեղեցիկ ավանդույթը:

Մալայանի նորարարական ստեղծագործությունների պատկերը ամբողջական չի լինի, եթե չհիշատակենք, որ Երևանի պետական համալսարանի ֆիզիկոսների հետ մեկտեղ նա ուսումնասիրել է լազերի օպտիկական քվանտային գեներատորի ներգործությունը աչքի մեկուսացված հյուսվածքի վրա: Նրա առաջարկությամբ նոր մեթոդով վիրահատվում է խոռոչից դուրս ընկած ակնաբյուրեղը: Այդ վիրահատությունն ընդհանրապես դժվարին է, սակայն պետք է անպայման կատարել, որովհետև այն առաջացնում է լուրջ բարդություններ, որոնք անդրադառնում են աչքի ֆունկցիաների վրա: Նոր մեթոդը հիմնականում դյուրացնում է ակնաբյուրեղի հեռացումը:

Վերջին ժամանակներս ինժեներ-օպտիկ Կ. Հարությունյանի և մանրանկարիչ Է. Ղազարյանի հետ նա որոնումներ է կատարում արհեստական ակնաբյուրեղ-ոսպնյակ պատրաստելու նպատակով, որը պղտորված բնական ակնաբյուրեղի հեռացումից հետո հնարավոր կլինի տեղադրել աչքի մեջ: Կլինիկայում ներդրվում են վիրահատության նոր եղանակներ, մասնավորապես լուրջ հիվանդություններից մեկի՝ աչքի ցանցաթաղանթի շերտազատման դեպքում:

Սերգեյ Մալայանը նաև մի շարք տպագիր աշխատությունների հեղինակ է. նրա «Աչքի անատոմիան և ֆիզիոլոգիական օպտիկա» գիրքը, որպես այդպիսին, միակն է հայ բժշկական մասնագիտական գրականության մեջ: Գրքում նկարագրված է տեսողական օրգանի ֆիզիոլոգիան իր օպտիկական կառուցվածքով, ինչպես և ակնագնդի անատոմիան՝ հարցի կլինիկական պարզաբանմամբ:

Սույն մենագրության առաջաբանում ակադեմիկոս Ա. Ալեքսանյանը ծանուցում է. «Գրքում զետեղված բոլոր նկարներն ու սխեմաները կատարված են հեղինակի ձեռքով, որն ավելի է բարձրացնում աշխատության մասնագիտական որակը»:

Այս անակնկալ է, քանզի գրքում ուրիշ ոչ մի տեղ չի նշված, թե այդ նկարները հեղինակինն են: Անակնկալ են նաև այն առումով, որ մինչև այժմ որպես նկարիչ-բժիշկ ճանաչում էինք միայն պրոֆ. Ճաղարյանին: Եվ, ահա, պարզվում է, որ Մալայանը նույնպես հմուտ նկարիչ, գծագրող է: Վերջերս լույս տեսավ նաև Մալայանի (Ս. Մուրադյանի և Ե. Մեսրոպյանի աշխատակցությամբ) «Ակնաբուժական համառոտ տեղեկագիրք» աշխատությունը, որը նույնպես մեծարժեք ուղեցույց է բժիշկների և ուսանողության համար:

Իր առանձնասենյակում, խնամքով պատրաստված շրջանակների մեջ, նա պահում է հիվանդների աչքից կամ ակնախոռոչից վիրահատությամբ հանված օտար մարմիններ, որոնք վթարի ու վնասվածքի ենթարկված մարդկանց հիվանդության պատմության կամ հենց այդ վթարների ձևերի և տեսակների հանրագիտարան են, որը հնարավորություն է ընձեռում ուսումնասիրելու վթարների էությունը, հասկանալու դրանց պատճառները, ծանոթանալու ժամանակակից այն բոլոր մասնագիտություններին, որոնք կարող են վթարի աղբյուր դառնալ: Այն, միաժամանակ, մեղադրանք է այն մարդկանց հասցեին, որոնք ինչ-ինչ պատճառներով դեռևս լիովին չեն ապահովում կամ չեն պահպանում աշխատանքի անվտանգության կանոնները:

***

Սերգեյ Մալայանի համար մեծ և անվիճելի հեղինակություն է պրոֆեսոր Մելիք-Մուսյանը: Տասնյակ տարիներ նա է ղեկավարել Հայաստանի ակնաբուժությունը: Հեռանալով կյանքից, թողել է բարի ու անանց հիշատակ, թողել է իր դաստիարակած հմուտ մասնագետների արդեն ոչ այնքան երիտասարդ մի սերունդ, որն այսօր իր ուսերին է տանում ակնաբուժության, հիրավի, ծանր, հոգսաշատ, բայց խորապես մարդկային ու շնորհակալ գործը: Այսօր հանրապետության ակնաբուժությունն ունի այնպիսի վառ անհատականություններ, որոնցից է Եկատերինա Դմիտրիևնա Բլավատսկայան՝ հեղինակը հազարավոր վիրահատությունների, հիվանդների սրտամոտ բարեկամն ու խորհրդատուն: Չընայած պատկառելի վաստակին ու տարիքին, այսօր էլ նա վիրահատում է և մեծ ավանդ ներդնում նոր մասնագետների պատրաստման գործում:

Հիվանդանոցի լավագույն բժիշկներից են դոցենտ Սեդա Մուրադյանը, բժշկական գիտությունների թեկնածու Ռուբեն Օտյանը, բաժնի վարիչ Օկտա Շաղզամյանը, ակնաբույժ Նինա Վիրենկովան և ուրիշներ:

Հանրապետական հիվանդանոցի ակնաբուժական բաժանմունքը ո՛չ միայն հազարավոր մարդկանց վերստին լույս ու երջանկություն է պարգևում, այլև նոր կադրերի պատրաստման դարբնոց է: Բժշկական ինստիտուտի հարյուրավոր ուսանողներ ամեն տարի այստեղ խոր ու կայուն գիտելիքներ են ձեռք բերում, հետագայում ակնաբուժության լուսավոր ջահը բարձր պահելու համար: Այս ասպարեզում ևս Մալայանն իր ծանրակշիռ վաստակն ունի:

Շատ մարդկանց է պիտանի Սերգեյ Մալայանը, շատ-շատերը նրա կարիքն ունեն. այդ գիտակցությունն էլ նրան դարձնում է արտակարգ գործունյա, եռանդուն, մղում նոր սխրանքների... Մալայանն ապրում է մաքուր, գեղեցիկ, ուրախություն բերող կյանքով:

Մի՞թե դրա ապացույցը չեն այն բազմաթիվ շնորհակալական նամակները, որ նա ստանում է հանրապետության զանազան ծայրերից: Բանաստեղծություններ, սրտաբուխ երախտագիտության խոսքեր: Մեկի դստեր կամ որդու համար է նա պատռել անթափանց խավարի քողը, մյուսի մորը, քրոջը, կամ հենց իրեն պարգևել աչք՝ լույսի ու հույսի աղբյուր: Բազում մեջբերումներ կարելի է կատարել անձամբ Մալայանին, հիվանդանոցին, թերթերի խմբագրություններին հասցեագրված շնորհակալության ու երախտագիտության ջերմ տողերից: Բավական է ասել, որ դրանք գրված են ոչ թե խարխափող, շոշափող ձեռքերով, այլ աչքի լույսով սրտի դուռը բացած մարդկանց՝ ուրախության հուզմունքից դողացող մատներով...

Բարի, լավ գործն ազնվացնում է մարդուն, մշտապես արթուն պահում նրա զգայուն, անհանգիստ խիղճը:

Այդ մշտարթուն խղճի համընդհանուր ճանաչումն էլ հենց բերում է հոչակ ու համբավ, բժշկի դժվարին, բայց լուսավոր, անընդգրկելի երջանկություն...

ՌԱՖԱՅԵԼ ԱԲԱԼՅԱՆ

# Մեծ Հոկտեմբերի ազատարար դրոշի ներքո

ԱՎՐՈՐԱՅԻ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ համազարկի արձագանքը հասավ նաև հայկական լեռնաշխարհ: 1920 թվականի նոյեմբերին Հայաստանի աշխատավորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ազատարար կարմիր բանակի օգնությամբ, խորտակեցին կեղեքիչների տիրապետությունը և երկրում հաստատեցին սովետական իշխանություն: Մեր հինավուրց անդաստանում վերջապես ծագեց նոր կյանքի արևը:

Սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրվանից կոմունիստական կուսակցությունը ձեռնամուխ եղավ վերականգնելու քայքայված երկրի տնտեսությունը, փրկելու աշխատավորներին սովի ու համաճարակի ճիրաններից, իսկ որբերին՝ մահվան մագիլներից:

Նորաստեղծ սովետական պետությունը, հավատալով դաշնակցության մի շարք պարագլուխների խոստումներին, թե իրենք օրինապահ կլինեն նոր կարգերի հանդեպ, չդիմեց բռնությունների, նույնիսկ հնարավորություն ընձեռեց նրանց աշխատելու սովետական հիմնարկություններում ու ձեռնարկություններում:

Սակայն, ինչպես ցույց տվին հետագա իրադարձությունները, դաշնակ արկածախնդիրները չարաշահեցին իրենց նկատմամբ ցուցաբերած լոյալությունը, դիմեցին խռովության, հակասովետական պրովոկացիայի: Նրանք սկսեցին խախտել պետական օրենքները, կատարել ինքնագլուխ խուզարկություններ, բռնագրավել քաղաքացիների ունեցվածքը, բնակչության շրջանում դժգոհություն առաջացնել սովետական կարգերի հանդեպ:

Այդ օրերին, երբ բոլշևիկյան կազմակերպություններն ու տեղերում ստեղծված հեղկոմները ձեռնարկել էին կառուցողական գործերի, դարանամուտ դաշնակ ավանտյուրիստները դավեր էին նյութում սովետական իշխանության դեմ: Նրանք չէին հրաժարվել իրենց ազգադավ նպատակից՝ խորտակել բանվորագյուղացիական պետությունը, վերականգնել շահագործողների տիրապետությունը: Խտրություն չդնելով միջոցների մեջ, նրանք դիմում էին իմպերիալիստական պետությունների օգնությանը, նույնիսկ գաղտնի կապեր հաստատում Հայաստան ներխուժած քեմալական բանակի շտաբի սպաների հետ:

Քսանմեկ թվականի փետրվարի կեսերին ըսկըսվում է դաշնակ մաուզերիստների խռովությունը: Ահա այդ ժամանակաշրջանի Էջմիածնում տեղի ունեցած դեպքերի լուսաբանմանն է նվիրված Վ. Զաքարյանի Նոր կյանքի արշալույսին գրքույկը[1]:

Հեղինակի հիմնական նպատակն է ընթերցողին ծանոթացնել, թե փետրվարյան ավանտյուրան ինչպես է նախապատրաստվել Էջմիածնում, դաշնակ մաուզերիստներն ինչպես են արյունալի դատաստան տեսել կոմունարների, կարմիր բանակայինների, տեղի կուսակցական գործիչների ու հեղկոմի անդամների հետ. ապա ներկայացվում են գոտեմարտերը աշխատավորական լայն մասսաների, որոնք համախմբվելով բոլշևիկների շուրջը, վերականգնեցին սովետական իշխանությունը:

Մեր կարծիքով, հեղինակը ճիշտ է վարվել Էջմիածնում ծավալված դեպքերից բացի անդրադառնալով նաև այդ ժամանակաշրջանում Հայաստանում տեղի ունեցած որոշ իրադարձությունների:

Դաշնակցական մամուլն ինչպես անցյալում, այնպես էլ այժմ ճգնում է ապացուցել, թե իբր փետրվարյան ավանտյուրան մասսաների «ինքնաբուխ» ընդվզումն էր բոլշևիկյան տիրապետության դեմ: Այս վերսիան հերքելու նպատակով Վ. Զաքարյանը բաղվածքներ է բերում դաշնակցության՝ Էջմիածնի նախկին գավառային կոմիտեի անդամ— քարտուղար Հայկ Աճեմյանի և բաշգյառնեցի խմբապետ Մարտիրոսի տպագիր հուշերից: Վերոհիշյալ անձնավորությունների վկայությամբ, դեռևս 1920 թվականի դեկտեմբերին Ս. Վրացյանի և այլոց գլխավորությամբ Երևանում ստեղծվում է դավադրություն կազմակերպող մի գաղտնի կենտրոնական մարմին, որը հետագայում կոչվում է «Հայաստանի փրկության կոմիտե»: Այդ կենտրոնը կապ է պահպանում տեղական հակահեղափոխական ուժերի հետ, հրահանգավորում նրանց՝ կազմակերպելու զինված խմբեր:

Նույն Աճեմյանի վկայությամբ դաշնակցական գործակալը հաճախ կենտրոնից գնացել է Էջմիածին, խռովություն կազմակերպելու մասին հրահանգներ տվել տեղի հակահեղափոխական խմբին: Կենտրոնը նույնիսկ կարգադրել է մի շարք շրջանների հակահեղափոխական խմբերին՝ միաժամանակ սկսել դավադրությունը (էջ 31—33):

Արխիվային փաստաթղթերի և դեպքերին մասնակից մարդկանց հուշերի հիման վրա հեղինակը գրում է, որ Էջմիածնի խռովարարները զենքի են դիմում փետրվարի 17-ին:

Էջմիածնում տեղի ունեցած փողոցային կռիվներում իր խիզախությամբ աչքի է ընկնում բոցաշունչ բոլշևիկ, քաղբյուրոյի (չեկայի) նախագահ Լևոն Նալբանդյանը: Նա ծնվել է Կարսում: Դեռևս Դոնի-Ռոստովի համալսարանում սովորելիս երիտասարդ Լևոնը 1916 թ. հարում է տիրող կարգերի դեմ ըմբոստացած երիտասարդների խմբին: 1920 թվականին սպա Նալբանդյանը, Լիպարիտ Մխչյանի և Հակոբ Հակոբյանի հետ, Սարիղամիշում գտնվող չորրորդ հետևակային գնդում ստեղծում է ընդհատակյա կոմունիստական կազմակերպություն: Նա ակտիվ մասնակցում է 1920 թվականի Մայիսյան ապստամբությանը, որի պարտությունից հետո ձերբակալվում է: Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո Լ. Նալբանդյանն ազատվում է բանտից և աշխատանքի անցնում չեկայի օրգաններում: Էջմիածնի պաշտպանական ծանր կռվից հետո, երբ կոմունարները թողնում են քաղաքը, նահանջի ճանապարհին դաշնակ մաուզերիստները նրան գերի են վերցնում ու գնդակահարում:

Վ. Ի. Լենինը 1918 թվականին, բնութագրելով Ռուսաստանի երիտասարդ սովետական հանրապետության դեմ կազմակերպված խռովությունները, գրում է. մենշևիկյան բանդաների մնացորդները մեր դեմ գալիս էին ոչ թե բացահայտ պայքարի՝ զենքը ձեռքին, այլ կեղծիքի, գրպարտության և անլուր դավաճանության կեղտոտ զենքով (տե՛ս Երկեր, հ. 27, էջ 274):

Լենինյան այս բնորոշումն ամբողջությամբ վերաբերում է դաշնակ դավադիրներին, որոնք ավանտյուրայի օրերին դիմում են ամենակեղտոտ պրովոկացիայի՝ կոմունիստներին զըրպարտելու համար: Նրանք նույնիսկ փորձում են իրենց կատարած մարդասպանություններն ու թալանը վերագրել չեկայի գործակալներին: Ստի ու կեղծիքի միջոցով դաշնակ խմբապետները կարողանում են իրենց կողմը գրավել մոլորված մարդկանց, նրանց ստիպել զենք վերցընել ընդդեմ սովետական իշխանության: Բայց ճանապարհից շեղվածները շուտով հիասթափվում են և երես դարձնում խռովարարներից:

Բանվորներն ու գյուղացիներն ավելի սերտորեն են համախմբվում հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը: Կարմիր բանակի զորամասերի կողքին խռովարարների դեմ կռվում են գյուղերում կազմակերպված պարտիզանական ջոկատները:

Հայ ժողովրդի համար այդ ճակատագրական օրերին քաղաքներում ու գյուղերում տեղի են ունենում աշխատավորական միտինգներ ու ժողովներ: Բանվորներն ու գյուղացիները զայրույթով են դատապարտում դաշնակ խմբապետների դավաճանական, նողկալի վարքագիծն ու իրենց պատրաստակամությունը հայտնում պաշտպանելու սովետական իշխանությունը: Այս կապակցությամբ հեղինակը մեջբերումներ է կատարել Իջևանի շրջանի Թալայի գյուղացիների ժողովի որոշումից. մենք, ասված է այնտեղ, Թալայի գյուղացիներս... վճռեցինք միացյալ ուժերով կռվել դաշնակ բանդաների դեմ, թույլ չտալ, որ վերականգնվի նրանց իշխանությունը, որովհետև մեզ համար միակ ցանկալին խորհրդային իշխանությունն է: Թող կորչե՛ն աշխատավոր ժողովրդի թշնամիները (էջ 55): Թիֆլիսում կայացած արևմտահայ աշխատավորների ժողովի մասնակիցները նշավակում են դաշնակցականներին և իրենց համերաշխությունը հայտնում սովետական իշխանությանը (էջ 56):

Դաշնակցականների փետրվարյան ավանտյուրայի դեմ իրենց զայրույթն են հայտնել բազմաթիվ հայ մտավորականներ: Հեղինակը ճիշտ է վարվել, որ այս առիթով վկայակոչել է հայ ժողովրդի սիրելի բանաստեղծներ Հովհաննես Թումանյանին ու Հովհաննես Հովհաննիսյանին: Այդ օրերին Հ. Թումանյանը գրել է. «Սրտի խորին կսկիծով հաստատ աղբյուրից տեղեկանում ենք, որ Երևանի «հեղաշրջում» կոչված ավանտյուրան կատարողները կույր գործիք են հանդիսացել մի սոսկալի դավադրության, նույնիսկ հայ ժողովրդի և նրա դատի դեմ,

[1] Վ. Ա. Զաքարյան, Նոր կյանքի արշալույսին, «Հայաստան» Հրատարակչություն, Երևան, 1977 թ.։

և որ հեղաշրջումը կատարվել է արյունալի ոճիրներով» (էջ 61):

Սովետական իշխանության ստեղծման առաջին օրերից Հովհաննես Հովհաննիսյանը նշանակվում է Էջմիածնի գավհեղկոմի լուսավորության բաժնի վարիչ: Մատաղ սերնդի դաստիարակությունն իր սուրբ գործը համարելով, նա ցրտաշունչ ձմռանը ոտքով գյուղից գյուղ է շրջում, օգնում տեղի ուսուցիչներին՝ աշակերտների ուսման ու դաստիարակության գործը լավ կազմակերպելու: Հեղաշրջման առաջին իսկ օրը դաշնակ մաուզերիստները ժողովրդական բանաստեղծին ենթարկում են տնային կալանքի, իսկ երկու որդիներին բանտարկում: Հետագայում իր հուշերում, անդրադառնալով այդ ծանր իրադարձություններին՝ նա գրում է. Այդ կոշմար էր, սև օրեր: Չեք կարող երևակայել, թե ինչ դժոխք էր այստեղ: Մենք կարծում էինք, թե անդունդի ափին ենք (տե՛ս էջ 67):

Այո՛, հայ ժողովուրդը նորից անդունդի եզրին էր:

Փետրվարյան ավանտյուրան ո՛չ միայն նոր ավերածություններ պատճառեց առանց այն էլ քայքայված Հայաստանի տնտեսությանը, այլև հնարավորություն ընձեռեց թուրքական բանակին՝ երկար ժամանակ օկուպացված վիճակում պահելու Ալեքսանդրապոլի (Լենինական) գավառը, թալանելու բնակչության ունեցվածքը:

Մի առիթով Ալ. Մյասնիկյանը, անդրադառնալով դաշնակ խմբապետների դավադրությանը, ասել է. «Տաճիկների հետ ավելի հաջող պայմանագիր կարող էինք կապել: Բայց չարագործները խանգարեցին: Եթե չլիներ դաշնակների վերջին ավանտյուրան, մենք այժմ ավելի լայն սահմաններ կունենայինք» (Ընտիր երկեր, էջ 336):

Չնայած դավադիրների գործադրած ջանքերին՝ նրանց չի հաջողվում հենարան գտնել աշխատավորական լայն մասսաների շրջանում: Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, շատ մտավորականներ, սերտորեն համախմբված կոմունիստական կուսակցության շուրջը, ճնշում են փետրվարյան ավանտյուրան, վերականգնում և ամրապնդում սովետական իշխանությունը: Էջմիածնի վրա կրկին ծածանվում է Հոկտեմբերի ազատարար դրոշը:

ՀԿ(բ)Կ Էջմիածնի գավկոմը, գավառային հեղկոմը աշխատավորական լայն զանգվածների ուշադրությունը կենտրոնացնում են խաղաղ, ստեղծագործ աշխատանքի վրա:

Դաշնակների փետրվարյան ավանտյուրայի օրերին դավադիրներն Էջմիածնում շատ-շատերին խոշտանգեցին, առանց դատ ու դատաստանի գնդակահարեցին: Գրքույկում զետեղված են հեղինակի կողմից երկար որոնումներից հետո ձեռք բերված՝ նահատակվածներից մի քանիսի նկարները:

Ահա նրանք. Լևոն Լիսիցյան— նշանավոր գիտնական, հասարակական գործիչ, Էջմիածնի կուլտուր-կրթական հաստատությունների կոմիսար: Լևոն Թահիրյան, Ամասիա Հարությունյան, Գառնիկ Ղալաչյան, Վահան Մելիք-Դադյան, Համո Չիլինգարյան, Ստեփան Պապովյան, Գառնիկ Սադոյան, Հայրապետ Սադոյան, Սեթ Սարգսյան, Ղարախան Սարգսյան, Աբգար Վարդանյան... Նրանք մարտնչեցին մեծ Հոկտեմբերի ազատաբեր կարմիր դրոշի ներքո, իրենց կյանքը նվիրաբերեցին հայ ժողովրդի վերածնության գործին:

Փետրվարյան ավանտյուրայի տապալումից հետո երախտապարտ էջմիածնեցիները հայրենի հողին հանձնեցին նահատակված անշիրիմ կոմունարների դիակները: Մատենադարանի հին շենքի հյուսիսային կողմում, եղբայրական գերեզմանի վրա վեր է խոյանում վարդենիներով շրջապատված բազալտակերտ կոթող հուշարձան՝ ի հավերժացումն նրանց անմահ հիշատակի: Սովետական ազատ ու երջանիկ մարդկանց սրտերում միշտ վառ է նրանց հիշատակը, ովքեր զոհվեցին նոր կյանքի արշալույսին:

Խրախուսելի գործ է կատարել «Հայաստան» հրատարակչությունը՝ մեծ Հոկտեմբերի վաթսունամյակի տարում լույս ընծայելով այս ուշագրավ գրքույկը: Նման հրատարակումները դաստիարակչական մեծ նշանակություն ունեն նոր սերունդների համար, նրանց համակում են հեղափոխական անցյալի հերոսական սխրանքների ներշնչանքով:

**Ս. Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**

# Նորվեգացի հումանիստի բարոյական սխրանքը

(Նանսենը և հայ ժողովուրդը)

ԸՆԹԵՐՑՈՂ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹՅԱՆ կողմից գոհունակությամբ ընդունվեց Մակիչ Արզումանյանի Նանսենը և Հայաստանը գիրքը, որը կարդացվում է մեծ հետաքրքրությամբ: Տվյալ թեմային հեղինակն անդրադարձել է դեռևս իր հրապարակած նախորդ աշխատություններում— Հայաստան, 1914—1917, Արհավիրքներից վերածնունդ: Սակայն համակողմանի այն լուսաբանվել է միայն այստեղ: Մենագրությունը փաստագրական, մեմուարային, արխիվային նյութերի ու մամուլի, գիտական ստվար գրականության ուսումնասիրման արգասիք է:

Գրքում ողջ հասակով հառնում է ականավոր հումանիստի, ժողովուրդների բարեկամության, խաղաղության ամրապնդման ջատագովի անզուգական կերպարը: Աշխատության առաջին գլխում, որը կրում է «Ականավոր գիտնականը, հասարակական գործիչն ու հումանիստը, Ռուսաստանի և սովետական երկրի բարեկամը» խորագիրը, կենսագրական հետաքրքրական փաստերի ու տեղեկությունների միջոցով ներկայացված է Ֆրիտյոֆ Նանսենի հասարակական-քաղաքական ծավալուն գործունեությունը:

Նանսենը Ռուսաստանի, ռուս ժողովրդի անկեղծ բարեկամն էր, բարձր էր գնահատում ու սիրում ռուսական կուլտուրան, գրականությունը: Սովետական իշխանության արշալույսին, երբ կապիտալիստական աշխարհն ամեն կերպ փորձում էր խեղդամահ անել նոր կյանքի ծնունդը, նա մարդասիրական անխոնջ գործունեություն ծավալեց՝ օգնելու Ռուսաստանի աշխատավորներին, հաղթահարելու սովն ու ավերածությունները: Դրա վկայությունն են նաև Վ. Ի. Լենինին, Գ. Վ. Չիչերինին ուղղված նրա նամակներն ու պատասխանները (տե՛ս էջ 45—48):

Մոտ տասը տարի Նանսենն աշխատել է Ազգերի լիգայում, ո՛չ միայն որպես Նորվեգիայի ներկայացուցիչ, այլև Ազգերի լիգայի գլխավոր կոմիսար՝ ռազմագերիների, գաղթականների հայրենադարձման, սովյալներին օգնելու գործով: Տասնութամյա լարված մաքառումներով լի նրա գործունեությունը պսակվում է հաջողությամբ. հայրենիք են վերադառնում 27 ազգությունների մոտ 450 հազար ռազմագերիներ. «Ամբողջ եվրոպական մայրցամաքում չկար մի երկիր,— գրում է Նոել Բեյկերը,— որտեղ մայրերն ու կանայք արցունքն աչքերին շնորհակալությամբ չհիշեին Նանսենի այդ սխրագործությունը»:

Ծանր էր Նանսենի վիճակը Ազգերի լիգայում. նրա մարդկային, հումանիստական ամեն մի ձեռնարկում կատաղի դիմադրության էր հանդիպում: «Փորձանք-մարդ» էին համարում իմպերիալիստական պետություններն իրենց շահերին հակադրվող, ազրեսիվ դիտավորությունները մերկացնող այդ «սոսկալի երեխային», որը մարդկության խիղճն էր աշխարհի ժողովուրդների համար: Իսկ երբ նա պահանջեց, որ Սովետական Ռուսաստանը ևս իր ներկայացուցիչն ունենա այդտեղ, նրան համարեցին «կարմիր»:

Նանսենն սկսեց անձնական բանակցություններ վարել Մոսկվայի, անձամբ ՍՍՀՄ արտաքին գործերի կոմիսար Չիչերինի հետ: Սովետական Միությունում նա ընդունվում էր ոչ թե որպես Ազգերի լիգայի ներկայացուցիչ, այլ ինքնուրույն իրավական անձ, որի ջանքերով Ռուսաստան վերադարձան մոտ 160 հազար ռազմագերիներ: Ջերմ տողեր է նվիրել հեղինակը Մ. Գորկու և Նանսենի բարեկամությանը:

Քաղաքացիական պատերազմին հաջորդեց մի նոր աղետ, Սովետական Միությունում մոլեգնում էին երաշտը, սովը... Վ. Ի. Լենինը կոչով դիմեց ողջ աշխարհի պրոլետարներին՝ օգնության ձեռք մեկնելու սովետական հանրապետությանը: Ոչ թե ողորմության, այլ օգնության էր կարոտ նորաստեղծ երկիրը: Այդ լուրը խորապես ցնցում է Նանսենին: Ժնևում կայացած կարմիր խաչի միջազգային ու ազգային կազմակերպությունների ներկայացուցիչների կոնֆերանսում ստեղծվում է Ռուսաստանի սովյալ-

* *Մ. Արզումանյան. Նանսենը և Հայաստանը, Երևան, «Հայաստան» հրատ., 1977 թ.:*

ներին օգնող միջազգային հանձնաժողով, որի գլխավոր լիազորն էր Նանսենը: Նա կրկին Մոսկվայում է: Նկարագրելով նրա անդուլ ջանքերն այդ շրջանում՝ հեղինակը մեջբերում է սովետական գրող Ս. Դանգուլովի հիացական խոսքերը. «Այդ խստադեմ ու բարի մարդը մի տեսակ բարի ծառայությունների համաշխարհային գրասենյակ էր, յուրահատուկ միջնորդ, որի ազնվությանը երբեք չէին կասկածի»: Ելույթ ունենալով Ազգերի լիգայում, ջանալով կոտրել Ռուսաստանին վարկ կամ փոխառություն տալուց հրաժարվող բուրժուական կառավարությունների համառությունը, Նանսենն անարգանքի սյունին է գամում նրանց վարքագիծը. նա հրեշավոր է համարում այն նախագիծը, որով այդ պետություններն մտադիր էին «ձմռանը սովամահության դատապարտելու 20 միլիոն մարդկանց»: Եվ, երբ ոչ մի կերպ հնարավոր չի լինում Ազգերի լիգայի միջոցով օգնել Պովոլժյեի սովյալներին, Նանսենը դիմում է մասնավոր բարեգործության:

Ոչ բոլշևիկ, ոչ էլ հակաբոլշևիկ էր Նանսենը: Նա միայն ձգտում էր փրկել մարդկանց կյանքը: Անհրաժեշտ էր ընդամենը 5 միլիոն ֆունտ ստեռլինգ— երկու անգամ պակաս այն ժամանակվա մի ռազմանավի արժեքից: Բայց ինչպիսի՜ դժվարություններ... նա հարկադրված էր հաղթահարել նույնիսկ դիմադրությունը ռուսական ազդեցիկ էմիգրանտների, որոնք, սովետական կարգերի դեմ ատելությամբ լի, դաժան անտարբերություն էին հանդես բերում այդ գործում: Նանսենի հետ իրենց ձայնն են բարձրացնում Անատոլ Ֆրանսը, Հանրի Բարբյուսը, Ալբերտ Էյնշտեյնը, Բերհարդ Քելերմանը, Հենրիխ Մանը...

Պրոլետարիատի հանճարեղ գրողը՝ Մ. Գորկին, երախտագիտության ջերմ խոսքերով է բնութագրում Նանսենի անդուլ ջանքերը. «...այդ ազնվաբարո, մարդկային սիրով լի, գործուն ու հրաբորբոք սիրտը հումանիզմի ոգին է հաստատում Եվրոպայում»: Կոմունիստական կուսակցության օրգան «Պրավդան» նույնպես բարձր գնահատեց նրա ծառայությունները, իսկ Սովետների համառուսաստանյան IX համագումարը, Լենինի ջերմ հավանությամբ, 1921 թ. հոկտեմբերին, միլիոնավոր աշխատավորների կողմից Նանսենին հղում է իր շնորհակալական ողջերձը. Նանսենն ընտրվում է Մոսկվայի սովետի պատվավոր դեպուտատ: 1923 թ. ՍՍՀՄ Ժողկոմսովետը շնորհակալական ուղերձ է հղում սովետական երկրի մեծ բարեկամին, նրա օգնականներին, նրա կազմակերպության անդամներին:

1922 թ. դեկտեմբերին Ֆ. Նանսենն արժանացավ խաղաղության նոբելյան մրցանակի: Ռազմագերիներին ու գաղթականներին վերադարձնելու, Ռուսաստանի սովյալներին օգնելու և, ընդհանրապես, մարդկությանը մատուցած նրա վիթխարի ծառայությունների արժանի գնահատականն էր այդ— 122 հազար կրոն: Այդպիսի շռայլությունը հորս ցնցեց,— հիշում է նրա դուստրը՝ Լիվ Նանսենը. այդ մրցանակի գումարը նա տրամադրեց գաղթականներին ու այլ կարիքավորների:

Ռուսաստանի նկատմամբ Նանսենի աճող հարգանքի ու համակրանքի արտահայտությունն է նրա Ռուսաստանը և աշխարհը աշխատությունը, որը լույս տեսավ նաև ֆրանսերեն ու գերմաներեն: «Ռուսաստանը գտնվում է առողջացող հիվանդի վիճակում,— գրում է նա,— որի կյանքը դեռ նոր միայն վերականգնվում է: Հենց որ վնասված օրգանները բուժվեն և սկըսեն գործել, արյան արագ շրջանառությունը կվերականգնվի»:

Մեծ նորվեգացու մարգարեության իրականացման ականատեսներն ենք մենք:

«Առաջին հայկական առնչությունները». այսպես է կոչվում գրքի երկրորդ գլուխը: «Դժվար է հավատալ,—գրել է բոլոր ճնշված ժողովուրդների անկեղծ բարեկամը,— որ որևէ մեկը կարող է ծանոթանալ այդ նշանավոր ժողովրդի պատմությանը, առանց խորապես ցնցվելու նրա մեծ ողբերգությունից»: Նանսենը խորապես սիրել է հայ ժողովրդին: Սուլթան Աբդուլ Համիդ 2-րդին նա համարել է «արյունարբու հրեշ, որ հաճույք էր զգում հազարավոր հայերի ոչնչացմամբ»: Նանսենին անսահման զայրացնում է այն, որ օրը ցերեկով գետի նման հոսում է հայերի արյունը, բայց եվրոպական կառավարությունները մատը մատին չեն խփում, բացի սին խոստումներից, իսկ գերմանական Վիլհելմ 2-րդ կայսրը 1898-ին սեղմում էր Աբդուլ Համիդի արյունաթաթախ ձեռքը և բարեկամաբար ողջագուրվում:

Երիտթուրքերն ավելի հրեշավոր էին: Նրանք կոտորածները վարում էին խնամքով մշակված պլանով, սադիստական կատաղությամբ, հայերին իսպառ ոչնչացնելու վճռականությամբ:

Հայ ժողովրդի պաշտպանության համար,— գրում է Մ. Արզումանյանը,— Նանսենն օգտագործեց իր խոր գիտելիքներն ու անհողդողդ կամքը, միջազգային հեղինակությունն ու պաշտոնական դիրքը: Հայապաշտպան գործերով զբաղվելու ընթացքում նա բախվեց Ազգերի լիգայի՝ խոսքից գործի չանցնող քաղաքականությանը: Հեղինակն այս մասում հանգամանորեն ներկայացնում է այդ կազմակերպության հաշվենկատ վարքագիծը ավերի ու զուլումի մըրձավանջային մթնոլորտում, «կարեկցական», «ափոփանքի» բանաձևերով սահմանափակվելը: Նանսենը փաստերով մերկացնում է մեծ տերությունների դիվանագիտական խաղերը հայկական հարցի շուրջ, ցույց տալիս, թե ինչպես նրանք նպաստեցին ցեղասպանության՝ թուրքական ծրագրի իրագործմանը, իսկ, հետո թաղեցին հայկական հարցը, դույզն իսկ օգնություն ցույց չտալով գաղթականներին, որ զրկված հայրենի օջախից, ցիրուցան եղան աշխարհով մեկ...

Հեղինակն արդարև եզրակացնում է. «...հրով ու սրով, արյունալից պատերազմներով, կողոպուտով, ավերումով» է գրված կապիտալիզմի պատմությունը: Այդ ամենը սաստկանում է իմպերիալիզմի դարաշրջանում: Սովետական Ռուսաստանի օգնությամբ, սովետական կարգերի հաստատմամբ իսպառ բնաջնջումից փրկվեց հայ ժողովուրդը: Բայց երեք միլիոն գաղթականները ցանուցիր էին, Հայաստանում՝ ադուտներ, անջրդի հողեր, տնտեսական ծանր վիճակ... Իսկ Ժնևի ժողովներում հանդիսավոր բանաձևեր էին ընդունվում տարաբախտ հայերին հայրենիք տալու մասին: 50 հազար գաղթականների տեղափոխման հարցը լուծելու համար Նանսենը գալիս է Մոսկվա, հանդիպումներ ունենում ՍՍՀՄ արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Գ. Վ. Չիչերինի հետ. նանսենյան հանձնաժողովների պատվիրակները գալիս են Հայաստան, Երևան և համոզվում, որ նորաստեղծ, վերածնվող երկիրը սովետական կարգերի շնորհիվ միայն ու Ռուսաստանի օգնությամբ կարող էր խաղաղություն, անվտանգություն ապահովել հայ ժողովրդի, նրա տարագիրների համար. անհրաժեշտ է անհապաղ նյութապես օգնել Սովետական Հայաստանին:

Ֆրիտյոֆ Նանսենն ամբողջովին նվիրվում է հայ գաղթականության վիճակի թեթևացմանը: Հայաստան է գալիս Ռուսաստանում Նանսենի ներկայացուցիչ Ջոն Գորվինը: Այդ օրերին, երբ Սովետական Հայաստանի ղեկավարները՝ Ալ. Մյասնիկյանը, Ս. Լուկաշինը, ամեն ինչ անում էին հայ ժողովրդի, մասնավորապես, գաղթականության վիճակը թեթևացնելու, հայրենադարձության կազմակերպման, երկիրը ոտքի կանգնեցնելու համար, դաշնակցականները՝ հանձին Ռուբեն փաշայի, ամեն կերպ արգելակում էին հայ գաղթականների հայրենադարձությունը, խոստանում տասն օրում կործանել սովետական իշխանությունը Հայաստանում և ուրախանում, երբ մերժվում էր դրսի օգնությունը Հայաստանին միայն այն պատճառով, որ այն բոլշևիկյան էր:

Հեղինակն այստեղ, թեև սուղ էջերում, լավ է ներկայացրել դաշնակցականների հայրենադավ, պատմությունից ամենևին դաս չառնող գործելակերպը:

Ամփոփելով աշխատության երկրորդ գլուխը՝ հեղինակը գրում է. «Ֆ. Նանսենն իր հասարակական գործունեության սկզբից սատար եղավ հայ ժողովրդին և ձգտեց բոլոր հնարավոր ձևերով թեթևացնել նրա տարաբախտ վիճակը: Նա մերկացրեց թուրքական բռնակալների նենգամիտ դավերը հայ ժողովրդի նկատմամբ»:

«Նանսենի միսիան Հայաստանում» գլխում Մ. Արզումանյանը նշում է, որ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը լիովին պաշտպանում էին Նանսենի մարդասիրական գործունեությունը:

1924 թվականին Ազգերի լիգան որոշեց Նանսենի ղեկավարությամբ հանձնաժողով ուղարկել Հայաստան՝ տեղում իրավիճակն ուսումնասիրելու և իր եզրակացությունը ներկայացնելու: 64-ամյա հումանիստը Թ. Ջոնսոնին ուղղած իր նամակում գրում է. «...ես շատ կափսոսայի, եթե իմ որևէ մեղքով կամ անհոգությամբ որևէ չափով տուժեր հայկական հարցը»: 1925 թ. նանսենյան հանձնաժողովը գալիս է՝ իր աչքով տեսնելու հայոց եղեռնի հետքերը: Ստվար էջերում հեղինակը նկարագրել է այն ջերմ ընդունելությունը, որ ցույց են տալիս այդ նվիրական առաքելության հանձնակատարներին սովետական կառավարության, ապա՝ Սովետական Վրաստանի ու Հայաստանի կառավարությունների ներկայացուցիչները:

Երևանում տեղի ունեցան գործարար խորհրդակցություններ ՀՍՍՀ ժողկոմխորհին կից գաղթականական հանձնաժողովի (նախագահ՝ Ասք. Մռավյան) և նանսենյան հանձնաժողովի միջև: Այնուհետև սկսվեց շրջագայությունը Հայաստանում: Ամենուր նկատելի էր, թե հայ գյուղացին ինչպե՛ս է հիմնում կանաչ բնակավայրեր, շարունակում քարից հաց քամել:

Ահա ինչ է գրել այդ մասին Ֆ. Նանսենը՝ հիացած բազմաչարչար ժողովրդի նոր հայրենիքով. «Այսպիսին է հայ ժողովրդի պատմությունը: Այս լայն աշխարհում կա՞ ևս մի ժողովուրդ, որն անընդհատ ենթարկված լինի նման դաժան տառապանքների: Բայց կա՞ արդյոք մի այլ ժողովուրդ, որը պատմության մեջ ցուցաբերած լինի այսպիսի ամուր, կենսահաստատ ուժ՝ բախտի բոլոր դաժան փոփոխությունների մեջ»: Հեղինակն այնուհետև հանգամանորեն նկարագրում է հանձնաժողովների նիստերը, ապա՝ ջերմ ու գործարար մթնոլորտում կազմակերպված խնջույքը՝ համալսարանի այգում: Աշխարհահռչակ կենսաբանին ու օվկիանոսագետին շնորհվում է Երևանի պետական համալսարանի պատվավոր դոկտորի և գիտխորհրդի պատվավոր անդամի կոչում:

Ուշագրավ են Շիր-Կանալի բացմանը նվիրված էջերը: Կենսաբեր այդ ջրանցքի ջրերի մեջ, շատերի հետ մեկտեղ, իր լայնեզր գլխարկն է նետում և Նանսենը: Երջանիկ է հայ ժողովուրդը և սրտանց երախտագիտություն է հայտնում իր վերածննդով երջանկացած մարդուն:

Գրքի չորրորդ գլխում, որ վերնագրված է «Պայքար Ազգերի լիգայում», համակողմանի արտացոլված է Նանսենի դժվարին մաքառումը Սովետական Հայաստանից վերադառնալուց հետո: Ոգևորված մահվան երախից փրկված, ջրանցքներ ու էլեկտրակայաններ կառուցող, հազարամյա պատմություն ու մշակույթ ունեցող ժողովրդի վերածննդով, Նանսենը զեկուցագիր ներկայացրեց Ազգերի լիգային. ժնևում, ի լուր մեծ տերությունների, նա հայտարարեց. «Հայկական հանրապետությունը պետք է դիտել որպես գոյություն ունեցող միակ օջախը, ուր ցրված հայերը կարող են հաստատվել»: Այդ օջախն իր դռներն է բացել և կարող է ընդունել 14 հազար տարագիրների: Շա՜տ շատ են ցանկացողները, հնարավորություններն ու միջոցները՝ սուղ: Հայաստանի տառապյալ պատմությունը հոդվածում Նանսենը գրում է. «Եվրոպան, որ մեծ անիրավություններ գործեց այս ժողովրդի հանդեպ, մասամբ քաված կլինի իր մեղքերը, եթե այսօր օգնության ձեռք մեկնի Հայաստանին»: Դեմոկրատական առաջադեմ ուժերը նրա համախոհն էին:

Նանսենը ներկայացնում է Հայաստանի կառավարության հետ կազմած իր «տնտեսապես առողջ, ֆինանսապես գործնական և քաղաքականորեն ցանկալի» նախագիծը: Նա կոչ է անում խոսքից գործի անցնել, օգնել նախագծի իրականացմանը: Պահանջվում է մեկ միլիոն ֆունտ ստեռլինգ— յոթ անգամ պակաս մեկ մարտանավի ջրարկման արժեքից: Դրվատելով սովետները, նրանց ժողովրդանվեր քաղաքականությունը՝ Նանսենի մտքով իսկ չէր անցնում, որ այս անգամ ևս Հայաստանի սովետական լինելու հանգամանքն է դառնալու Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի կառավարությունների սրտի ու խղճի փականքը: Նանսենը վշտանում էր, զայրանում, բայց և չէր ընկճվում, հետևողականորեն շարունակում էր իր գործը: Այդ մասին է վկայում նրա և Ս. Փիրումյանի, Ս. Համբարձումյանի, Գ. Օրջոնիկիձեի, հայկական փոխառության հանձնաժողովի քարտուղար Է. Ֆելկինի, Գ. Չիչերինի, Մ. Լիտվինովի նամակագրությունը, որից քաղվածքներ է բերում հեղինակը:

Սովետական կառավարությունն ամեն ինչ անում է՝ օգնելու Նանսենի միսիայի իրականացմանը: Հայաստանին է տրամադրվում մեկ միլիոն 600 հազար ռուբլի, սեփական միջոցներով կազմակերպվում է հայրենադարձությունը... Ազգերի լիգայի խորհուրդը, սակայն, խոսքով համաձայնելով Նանսենյան պայմաններին, գործով ամեն ինչ անում է նրա ծրագրի վիժեցման համար: Իսկ հայ դաշնակցականները շարունակում էին մնալ հակասովետական բոլոր ուժերի մեղսակիցը: «Պատահական չէ,— գրում է Մ. Արզումանյանը,— որ Ալ. Խատիսյանը հորթի հըրճվանքով է արձանագրել Ազգերի լիգայի ֆինանսական հանձնաժողովի նախագահի զրույցն իր հետ, երբ նա ուղղակի ասել է. «Եթե Հայաստանի մեջ իշխանության գլուխ կեցած ըլլար ոչ խորհրդային իշխանությունը, պահանջված գումարը կհայթայթվեր մեկ օրվա մեջ...»:

Անվերջ խաբվածի ինչպիսի՜ անհատնում հավատ խաբողների նկատմամբ:

Անօգուտ, ձայն բարբառո հանապատի են հնչում Նանսենի մարդասիրական ելույթները, մեծ տերությունների ներկայացուցիչների հիղճն արթնացնելու, իրենց մեղքերը գեթ այս առիթով քավելու կոչերը:

1927 թ. Նանսենը պահանջում է Ազգերի լիգայից վերջ տալ ստեղծված քաշքշուկին և, քանի որ արևմտյան տերությունները չեն ուզում կատարել իրենց խոստումները, ուրեմն Ազգերի լիգան իրավունք չունի զբաղվելու այդ հարցով, իսկ ինքը հրաժարվում է գլխավոր կոմիսարի պաշտոնից: Նրա այդ հայտարարությունն ամպրոպ էր՝ ճայթած պարզ օրում, մի շառաչուն ապտակ եվրոպական տերություններին, որոնց նիրհած խիղճը երբեք էլ չարթնացավ: Նրանք ոչ մի ջանք չգործադրեցին փրկելու իրենց պատիվը, մատը մատին չխփեցին այս արնաքամ ժողովրդին օգնելու համար: Այդ ամենից հուսախաբ, Նանսենը հայտարարում է. «Երբեմն մարդ ամաչում է, որ եվրոպացի է»:

Նանսենյան ծրագիրը, որ սովետական կառավարության կողմից լայն աջակցություն էր գտնում, ձախողվեց արևմտյան տերությունների հանցանքով և միայն այն պատճառով, որ, ինչպես գրված էր «Թայմս»-ում, հայերը Երևանում գտնվում են բոլշևիկների ազդեցության տակ: Անգլիացի ինժեներ Ուիլյամ Մակինտոշը, որ նոր էր վերադարձել Հայաստանից և տեսել էր սովետական կառավարության ողջ սրտացավությունն այդ ժողովրդի նկատմամբ, դատապարտելով նման վարքագիծը, հայտարարում է. «Եթե հայերը կտրվեն Մոսկվայից, կջնջվեն իրենց հին թշնամու՝ թուրքերի կողմից: Ես ազնըվորեն հույս ունեմ, որ նրանք երբեք այդպես չեն վարվի»:

ՀՍՍՀ Ժողկոմխորհի նախագահի Ս. Համբարձումյանը մամուլի ներկայացուցիչների հետ ունեցած զրույցում ասաց, թե արևմտյան տերությունների հանցանքով ձախողվեց հայ գաղթականներին տրամադրվելիք փոխառությունը: «Հայ գաղթականների հարցի միակ լուծողը,— եզրակացնում է այս խնդիրը համակողմանի ուսումնասիրած հեղինակը,— սովետական պետությունն էր, որը հենց սկզբից հայրենադարձությունը բարձրացրեց կառավարական քաղաքականության աստիճանի, նյութապես աջակցեց ներգաղթողներին և ամեն ինչ արեց՝ նրանց դարձնելու լիիրավ քաղաքացիներ»:

Սփյուռքահայության հայրենասեր խավերը, բարեգործական ընկերությունները օգնության են հասնում նանսենյան մտահղացումների իրականացմանը: Եգիպտոսի հայկական բարեգործական ընդհանուր միությունը հանգանակությամբ ժողոված 350 հազար, ապա նաև 500 հազար դոլարը հատկացնում է գաղթականների համար մի մեծ գյուղի կառուցմանը:

Լատվիայի հռչակավոր գրող Յան Ռայնիսը, դեռևս 1926 թ. հանգամանորեն ծանոթանալով Ֆ. Նանսենի հայապաշտպան ողջ գործունեությանը, գրեց. «Բայց մեկ մարդը կարո՞ղ է ձեռք բերել ավելին, քան ամբողջ միացած ու անմիաբան քաղաքակիրթ աշխարհը, առնվազն Եվրոպայի դիվանագետները: Հուսանք, որովհետև այդ մեկ մարդը սիրտ ունի, իսկ այն բազմամարդ դիվանագիտությունը՝ միայն միտք»:

Չնվազող հետաքրքրությամբ կարդացվող այս գրքի հինգերորդ գլուխը նվիրված է Նանսենի՝ Հայաստանին ու հայերին վերաբերող գրական ժառանգությանը: Ութ հատոր է կազմում այդքան բազմազբաղ մարդու երկերի նորվեգերեն ժողովածուն, չորս հատոր՝ նամակները: Իսկ Օսլոյի համալսարանի գրադարանում պահպանվում է նրա ստվարածավալ արխիվը, ուր բազմաթիվ նյութեր կան՝ նվիրված հայերին ու Հայաստանին: Ժամանակին նա գրել էր, որ ավարտելուն մոտ մի գրքում հույս ունի ծանոթացնել հայերին ու համայն աշխարհին, թե ինչ է մտածում ինքը մեր ժողովրդի ու նրա ապագա հնարավորությունների վերաբերյալ: Հայ ժողովրդի պատմության գլխավոր դրվագների, մեր երկիրը կատարած ուղևորության նկարագրությունն է այդ՝ տրված նրա 1927 թ. լույս տեսած Հայաստանում 350 էջանոց գրքում: Գրքի գերմաներեն հրատարակության շապիկի վրա կարմիր տառերով գրված է. «Մեղադրանք Անտանտի և Ազգերի լիգայի դեմ»: Իսկ անգլիական «Թայմս» թերթն այդ առիթով նկատել է. «Այս գիրքը կարիճի պես իր պոչի մեջ խայթոց ունի, որը վիրավորում է հաճոյակատարությունը բոլոր նրանց, ովքեր խոստացան ավելին, քան ի վիճակի էին կատարելու»:

Նանսենն այստեղ զետեղել է իրենց իսկ՝ զավթիչների, ջարդարարների ներկայացուցիչների վկայությունները հայ ազգի տաղանդի ու շնորհքի մասին: Ահա թե ինչ է ասել համաշխարհային պատերազմի նախօրյակին Պոլսում, կոմիտասյան երգահանդեսներից մեկում թուրք մտավորականը. «Ճշմարտությունը պետք է խոստովանել, որ հայ ազգը դարերե ի վեր մեր մշակութային կյանքին մեջ իր հառաջապահի մասնավոր տեղը ունեցած է: Թուրքիո ո՛ր կողմն ալ երթանք, Անատոլուի ո՛ր անկյունն ալ ըլլանք, հայ միտքը, հայ ստեղծագործ ձեռքը «հոս եմ» կըսե»:

Աշխատության մեջ ցույց է տրված այն խոր ներշնչանքն ու սերը, որով գրել է Նանսենն իր Հայաստանում գիրքը, որը, իրոք, միայն մարդասիրական ազնիվ մղումների արգասիք է:

Մենագրության եզրափակիչ գլխում հեղինակն արտացոլել է այն խոր երախտագիտությունը, որ տածում են սովետական երկրի աշխատավորները մեծ հումանիստի, նրա պայծառ հիշատակի հանդեպ: Նրան են նվիրվել բազմաթիվ հոդվածներ, աշխատություններ, ստվարածավալ գրքեր... Ընթերցասեր հասարակությունը ջերմորեն է ընդունել նրա աշխատությունները:

Աշխարհի մեծ քաղաքացու, մարդկության այդ բարի հանճարի մահվան լուրը ցնցեց ամբողջ աշխարհը. թեև նրա հետազոտության բնագավառը սառցակույտերի ու սառնամանիքի վայրն էր՝ Հյուսիսային բևեռը, բայց նրա կրծքի տակ բաբախում էր մի բոցավառ սիրտ: Ժամանակակիցներից մեկը իրավամբ գրել է. «Եթե Նանսենին ծնեց Նորվեգիան, ապա նրան կորցըրեց ողջ աշխարհը»:

Հայ ժողովրդի՝ մեծ հումանիստի հանդեպ տածած խոր հարգանքի մասին է գրում Լիվ Նանսեն-Հոյերը իր Հորս մասին գրքում. «Դուք՝ հայերդ, եղել եք հորս «սրտի զավակները»: Ձեր հարգանքը նրա հիշատակի նկատմամբ անկեղծ է և հանդիսանում է վիթխարի հուշարձան նրան. ավելի լավ, քան ցանկացած քանդակը քարից, քան բոլոր պերճախոս բառերը, քանզի այն ապրում է ձեր սրտում: Լավագույն հուշարձանը հորս հայերի հավերժական շնորհակալությունն ու սերն է նրա նկատմամբ»:

...Նանսենը երազում էր կրկին տեսնել Հայաստանը... Որքա՜ն կուրախանար նա, տեսնելով Սովետական Հայաստանի նոր ու վիթխարի նվաճումները, սփյուռքահայության նորանոր քարավանների հանգրվանումը մայր հայրենիքում: Որքա՜ն կուրախանար, տեսնելով, որ բախտի արագիլն արդեն իր բույնն է հյուսել մեր երկնասլաց բարդիների կատարին և այլևս ոչ-ոք չի ավերում նրա բույնը, չի կոտորում նրա ձագերին, ինչպե՜ս կուրախացներ նրան հայերի ամենուր թևածող սրտաբուխ երգը.

*Ես ոչ անտուն եմ, ոչ էլ տարագիր,*
*Ունեմ Հանգրվան, ունեմ օթևան...*

Անկեղծ ներշնչանքով, հրապարակախոսական ջերմ պաթոսով գրված Նանսենը և Հայաստանը ուսումնասիրությամբ դոկտոր, պրոֆեսոր Մ. Արզումանյանը կատարել է շնորհակալ գործ, որը մեր ժողովրդի խոր հարգանքի ու երախտիքի արտահայտությունն է:

**ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ**

# «Լենինյան ուղիով» ամսագրի 1977 թ. համարներում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ







## ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ



## ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ



## ՄԱՐԴԻԿ ԵՎ ՏԱՐԻՆԵՐ, ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ



## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ, ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ, ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04135 Պատվեր 2546 Թղթի չափսը 70×108 1/16 Տիրաժ 14.700 Գինը՝ 20 կոպ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 14/XII-1977 թ.*
*ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

## СОДЕРЖАНИЕ

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՍՈՍԻՆՁՆԵՐ

*Լվովի «Ռեակտիվ» գործարանում ըստացվել են «Ցիակրին» նոր սոսինձները, որոնք ակնթարթորեն կպցնում են ամենատարբեր նյութեր— կերամիկա, ապակի, մետաղ, պլաստմասսա, բետոն, ռետին, փայտ, ստվարաթուղթ: Սոսնձակարը ջերմադիմացկուն է (—60-ից +100 աստիճան Ց): Սոսնձման համար բավական է օդի և սոսնձվող նյութի մակերեսի խոնավությունը: Այդ հատկությունը կարևոր է նավաշինարարության և լեռնահանքային արդյունաբերության համար:*

*Լույսի բեկման ցուցանիշով նուրբ սոսնձաթաղանթը մոտ է ապակուն, որը և հնարավորություն է ընձեռում օգտագործելու այն ճշգրիտ օպտիկայում, որպես կոնտակտորներ:*

*Այդ սոսինձները կիրառվում են նաև բժշկության մեջ: Դրանք մանրէասպան են. կարելի է օգտագործել ոսկրային և թոքային հյուսվածքների սոսնձման նպատակով, սրտամկանային և աչքի վիրաբուժության մեջ, երիկամները վիրահատելիս:*

## ՍԻՆԹԵՏԻԿ, ԲՈՒՐԱՎԵՏ ՆՅՈՒԹԵՐ

*Էստոնիայի գիտությունների ակադեմիայի քիմիայի ինստիտուտի նուրբ օրգանական սինթեզի լաբորատորիայում քիմիական գիտությունների դոկտոր Կ. Լեոսի գլխավորությամբ առաջին անգամ մեր երկրում մշակվեց նավթաքիմիական նյութերի ստացման նոր տեխնոլոգիա: Դաշտային ու մշակովի ծաղիկների բուրմունք ունեցող նյութերը շատ անհրաժեշտ են կոսմետիկական նյութերի, օճառների, շամպունների, լվացքի փոշիների արտադրության համար: Մինչ այդ դրանք ստացվում էին բույսերից: Իսկ այժմ դրա համար հումք է ծառայում ոչ թանկ ու մատչելի իզոպրենը՝ ածխաջրածինը, որից, ի դեպ, պատրաստվում է նաև սինթետիկ կաուչուկը: Մշակված է իզոպրենի սինթեզման անընդհատ, ավտոմատ պրոցես: Սինթետիկ բուրավետ նյութերը բնականից ավելի մաքուր են և էժան, իսկ բուրմունքը՝ տևական:*

## ՁԱՐԹՈՒՑԻՉ

*Հունգարացի մասնագետները մշակել են «Ռեակոն» սարքը, որն ամրացվում է ավտոմեքենայի վահանակին: Երկար, հարթ ճանապարհին, երբ վարորդի քունն սկսում է տանել, այն մերթ ընդ մերթ տալիս է զգուշացնող ազդանշան: Վարորդը կոճակի սեղմումով պետք է հայտնի, որ արթուն է: Հակառակ դեպքում սարքը միացնում է տագնապի շչակը: Եթե այդ էլ չի օգնում, «Ռեակոն»-ը միացնում է վթարային լուսաթարթիչը և կանգնեցնում ավտոմեքենան:*

## ՈՒՐԱՆ՝ ՄԻԿՐՈՕՐԳԱՆԻԶՄՆԵՐԻՑ

*Վերջերս չեխ մասնագետներն առաջարկել են ցած հոսող ջրերից միկրոօրգանիզմի օգնությամբ կորզել ուրան: Այդ նպատակով տիղմազտիչում ամբարված ցած հոսող ջրի մեջ ընկղմվում է բիոմասսա, որն առանձնացնում է ուրանը: 100 մլ$^3$ լուծույթում ծախսվում է 2,5 գրամ բիոմասսա, որից ուրանը կորզվում է սոդայի կամ ազոտաթթվի լուծույթով: Դրանից հետո միկրոօրգանիզմներն առանձնացվում են լուծույթից և վերականգնվում: Այս ճանապարհով կորզվում է ուրան՝ ֆերմենտների և պենիցիլինի արտադրության թափոններից ստացված միկրոօրգանիզմներից:*

## ԷՀՄ-Ը՝ ԱԽՏՈՐՈՇԻՉ

*Բժիշկների համար շատ կարևոր է իմանալ հիվանդի արյան հոսքի արագությունը, որի փոփոխմամբ կարելի է բացահայտել թրոմբի առաջացման պատճառները: Սովետական ինժեներների պատրաստած սարքը առանց ցավի որոշում է հիվանդի արյան հոսքի արագությունը, ապահովում դրա ավտոմատ, գերճշգրիտ չափումը: «Լեկոյ» կոչվող այդ սարքի միջոցով ուսումնասիրվել է տիեզերագնացների արյան շրջանառությունը թռիչքի ընթացքում:*

*Պատրաստվել են նաև մի շարք ախտորոշիչ նոր սարքեր: Դրանցից է, օրինակ, սրտանոթային համակարգի, շնչառական և այլ օրգանների գործողության ուսումնասիրման համար նախատեսված ախտորոշիչ ավտոմատների ընտանիքը:*